# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6 ՀՈՒՆԻՍ · 1966

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ - ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание







Վ. ԿՈՐԻՈՆՈՎ

# ՍՄԿԿ XXIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ*

*ԱՇԽԱՐՀՆ ապրում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարի գաղափարների ու փաստաթղթերի տպավորության տակ։ Արդեն այժմ ակնհայտ է, որ լենինյան կուսակցության այդ համագումարը աչքի ընկնող իրադարձություն է 60-ական թվականների աշխարհի քաղաքական կյանքում։*

*Սովետական Միությունում կոմունիզմի կառուցման, համայն մարդկության պայծառ գալիքի համար մեր կուսակցության պայքարի պատմության մեջ ՍՄԿԿ XXIII համագումարի տեղը որոշվում է նրանով, որ այն կայացավ մարդկային հասարակության զարգացման բացառիկ պատասխանատու մի ժամանակաշրջանում։*

*Մեր երկրի պատմության մեջ այդ ժամանակաշրջանը բնորոշ է նրանով, որ սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կառուցել է սոցիալիզմ, լայն ճակատով գործնականում իրականացնում է կոմունիզմի կառուցման ծրագիրը։ Համագումարի հավանությանն արժանացած հերթական հնգամյա պլանը նոր կարևոր քայլ է այդ ճանապարհին։ Մյուս սոցիալիստական երկրներում սոցիալիզմը ամուր մուտք է գործել կյանքի մեջ։ Նոր հասարակարգի հետագա կատարելագործում, պրակտիկայում սոցիալիզմի սկզբունքների ավելի ու ավելի լրիվ իրականացում՝ ահա թե ինչն է բնորոշ այսօր այդ երկրների կյանքի համար։*

*Գաղութային ստրկության լուծը թոթափած հարյուր միլիոնավոր մարդկանց համար արդի էտապը նշանավոր է պատմական զարգացման նոր ժամանակաշրջանի՝ նվաճված ազգային անկախության ամրապնդման ժամանակաշրջանի սկսմամբ։*

*Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի հեղափոխական շարժման համար այդ ժամանակաշրջանը բնորոշ է նրանով, որ, հաղթահարելով իմպերիալիստական բուրժուազիայի դիմադրությունը, բանվոր դասակարգը տիրապետում է իր վերջնական նպատակների համար պայքարելու նոր արդյունավետ ձևերի։*

*Ինչ վերաբերում է միջազգային կոմունիստական շարժմանը, ապա նրա համար վերջին տարիները հատկապես լուրջ փորձությունների ժամանակա-*

---

* *Տպագրվում է որոշ հապավումներով։*

շրջան եղավ։ Արդյոք կոմունիստական շարժումը ռեալ հնարավորություններ ունի հաղթահարելու իր շարքերում եղած դժվարությունները։ Պատմությունը այսպես է դրել այն հարցը, որին ՍՄԿԿ XXIII համագումարում հանդես եկած՝ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների բոլոր ներկայացուցիչները դրական պատասխան տվեցին։

ՍՄԿԿ XXIII համագումարը միջազգային շատ լայն արձագանք գտավ հենց նրա համար, որ տվեց համաշխարհային զարգացման նոր պրոցեսների ու երևույթների համակողմանի բնութագիրը։

Վերջին տարիների միջազգային բարդ իրադարձությունները կուսակցության և պետության քաղաքական գծի գործնական քննությունը եղան։ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը բոլոր հիմքերն ունի հպարտանալու, որ իր մշակած քաղաքական գիծը և դրա իրականացման պրակտիկ գործունեությունը լիովին բռնեցին այդ քննությունը։ Եթե մեր կուսակցությունը նորանոր հաջողություններ ունի իր ներքին և արտաքին քաղաքականության ասպարեզում, եթե նրա հեղինակությունը, մեր պետության միջազգային վարկն ու հեղինակությունը անընդհատ աճում են, եթե ՍՄԿԿ-ի մարքս-լենինյան քաղաքականությանը հավանություն է տալիս և այն պաշտպանում է եղբայրական կուսակցությունների մեծամասնությունը, ապա դա բացատրվում է նախ և առաջ նրանով, որ ՍՄԿԿ-ն անսահման նվիրված է Մարքսի—Էնգելսի Լենինի մեծ ուսմունքին, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, համաշխարհային կոմունիստական շարժման գլխավոր գծին։

Համաշխարհային կոմունիստական շարժման ծրագրային փաստաթղթերը՝ Մոսկվայի 1957 թվականի Դեկլարացիան և Մոսկվայի 1960 թվականի Հայտարարությունը հուսալի կողմնորոշիչ են մեր կուսակցության համար։ ՍՄԿԿ XXII համագումարը, մեր կուսակցության կոնկրետ խնդիրների ու պայմանների համեմատ ՍՄԿԿ ծրագրի մեջ հաստատելով եղբայրական կուսակցությունների Մոսկվայի խորհրդակցությունների փաստաթղթերի հիմնական դրույթները, մեզ հստակ կողմնորոշում տվեց։ XXIII համագումարը բոլոր հիմքերն ուներ արձանագրելու, որ տվյալ կողմնորոշումը ճիշտ էր, և մեկ անգամ էլ հաստատեց ՍՄԿԿ-ի անսասան հավատարմությունը այդ գծին։

ՍՄԿԿ XXIII համագումարը սահմանեց մեր երկրի զարգացման նոր հնգամյա պլանի իրականացման հուսալի ուղին։ Սովետական հնգամյակները երբեք չեն եղել սոսկ մեր ժողովրդի ներքին գործը։ Սովետների երկրի սահմաններից դուրս միլիոնավոր մարդիկ սեփական փորձով համոզվել են, որ ամբողջ աշխարհի խաղաղության և առաջադիմության գործը ուղղակիորեն կախված է նրանից, թե որքան հաջողությամբ է առաջ գնում այն երկիրը, որն առաջինն է կառուցել սոցիալիզմը և առաջինն է հարթում մարդկության վաղվա օրվա՝ կոմունիզմի ուղին։

Սովետական նոր հնգամյակի իրականացումը զգալիորեն կարագացնի մարդկության առաջընթաց զարգացումը։ Որքան ծանրակշիռ և զգալի են ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարության հաջողությունները, այնքան ավելի է բազմապատկվում սոցիալիզմի հզորությունն ու ձգողական ուժը բոլոր երկրների աշխատավորների համար։ Իրենց հետագա զարգացման համար հատկապես եռանդուն կերպով ուղիներ են որոնում օտարերկրյա գաղութային ճնշման լուծը թոթափած երկրների հարյուր միլիոնավոր մարդիկ։ Սակայն նոր հնգամյա պլանը ոգեշնչող մեծ օրինակ կծառայի նրանց համար։ Ուրուգվայի



կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Ռոդնեյ Արիս-
մենդին դիմելով ՍՄԿԿ XXIII համագումարի պատգամավորներին, լիակատար
հիմունքով ասաց. «Սովետական Միության վերցրած առաջընթացի տեմպերը
ամրապնդում են ամբողջ աշխարհի խաղաղությունը, ուժեղացնում նրա հզո-
րությունը, որը ազատագրված ժողովուրդների վահանն է, ավելի են տարածում
եղբայրական ձեռքը ազատագրության հերոսական սխրանքը կատարած ժո-
ղովուրդներին, ուժեղացնում են մեր գաղափարների թափանցումը մարդկու-
թյան մեծամասնության գիտակցության մեջ։ Ձեր ամեն մի թիվը մի հարված է
իմպերիալիզմի կրծքին, ոգեշնչող լույս է աշխարհի բանվոր դասակարգի և
բոլոր ճնշվողների համար, նա նպաստում է դեմոկրատիայի, ազգային ազա-
տագրության և սոցիալիզմի նոր հաջողություններին»։
Սովետական ժողովրդի նույնիսկ մոլի թշնամիները ստիպված են հար-
գանքով խոսել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970
թվականների պլանի մասին, նշել այդ պլանի հոյակապությունը և միաժամա-
նակ նրա խոր ռեալիզմը։ Կապիտալիզմի գլխավոր երկրի գործարար շրջաննե-
րի օրգան «Բիզնես Ուիկը», նախազգուշացնելով կապիտալիզմի հետ տնտե-
սական մրցության և պայքարի մեջ Սովետական Միության հնարավորություն-
ները թերագնահատելու վտանգից, բազմանշանակալիորեն հայտարարում է,
որ ՍՍՀՄ-ի նոր հնգամյա պլանը «Արևմուտքին ոչ մի հիմք չի տալիս ինք-
նահանգստացման։ Այդ պլանը նախատեսում է մինչև 1970 թվականը սովե-
տական արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալը մեծացնել մո-
տավորապես 50 տոկոսով, կամ տարեկան մոտավորապես 8,5 տոկոսով»։
«Դա,— ընդգծում է հանդեսը,— վիթխարի թիվ է, հաշվի առնելով ներկայիս
շատ ավելի լայն բազայի առկայությունը»։ Անգլիական «Թայմսը» իր հերթին
նշում է. «Արդյունաբերական զարգացման սովետական տեմպերը պատիվ
կբերեին ամեն մի բարձր ինդուստրիալ էկոնոմիկայի»։
Հասկանալի է, որ առաջադիմության թշնամիները գնալով ավելի շատ են
վախենում սովետական ժողովրդի ստեղծարար պլաններից։ Զգտելով թուլաց-
նել կոմունիզմի գաղափարների անշեղորեն աճող ձգողական ուժը, նրանք
ճգնում են հորինել ինչ որ «քաղաքական շանթարգելներ»։ Դրա ակնառու վկա-
յությունն է օվկիանոսից այն կողմ հռչակված «բարօրության մեծ հասարա-
կարգի» տխրահռչակ նախագիծը։ «Ամերիկյան ապրելակերպի» մունետիկները
ջգում են, որ սոցիալիզմի, կոմունիզմի կառուցողների ամեն մի նոր հաջողու-
թյուն խորտակում է նրանց պրոպագանդիստական հնարանքները։ Միլիո-
նավոր աշխատավորների ուշադրությունը շեղել կոմունիստական պայծառ
իդեալից՝ սա է իմպերիալիստական քաղաքագետների մեքենայությունների
նպատակը։ Բայց այդ ճիգերը կոմունիստական գաղափարների ճառագումը
մթագնել կարող են ոչ ավելի, քան արևը ափով փակելու փորձը։

## 1

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXII համագումարից մինչև XXIII համագումարն
ընկած ժամանակամիջոցում համաշխարհային իրադրության զար-
գացումը իր ամբողջ բազմազանությամբ և հակասականությամբ
հանդերձ լիովին և ամբողջովին հաստատեց 1960 թվականի Հայ-
տարարության արմատական հետևության ճշտությունը. «Արդի դարաշրջանում
մարդկային հասարակության պատմական զարգացման գլխավոր բովանդա-

կությունը, գլխավոր ուղղությունն ու գլխավոր առանձնահատկությունները որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, իմպերիալիզմի դեմ, հասարակության սոցիալիստական վերակառուցման համար պայքարող ուժերը»:

Իսկապես, այդ ժամանակաշրջանում միջազգային հիմնական իրադարձությունները տեղի են ունեցել մարդկության բախտի վրա համաշխարհային սոցիալիզմի, միջազգային բանվոր դասակարգի, ազգային ազատագրական շարժման նշանաբանով։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմը աճել և ամրապնդվել է, էլ ավելի են մեծացել նրա միջազգային հեղինակությունը և ազդեցությունը մարդկության բախտի վրա։ Կյանքը մեկ անգամ ևս հաստատեց, որ որքան ամուր է սոցիալիստական երկրների ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, որքան բարձր է նրանց ինտերնացիոնալ ոգին, այնքան նրանք ավելի լավ են ծառայում բոլոր երկրների հեղափոխականների ընդհանուր գործին։ Այդ հանգամանքը առաջնահերթ դեր խաղաց նրանում, որ արդիականության հեղափոխական ուժերը կարողացան հաջողությամբ դիմագրավել իմպերիալիստական ռեակցիայի գրոհը, վիժեցնել նրա դիտավորությունները՝ ետ շրջելու համաշխարհային հեղափոխական պրոցեսը։

Իմպերիալիզմի ագրեսիվության ուժեղացումը բնավ չի նշանակում, թե նա ավելի զորեղ է դարձել։ Ընդհակառակն, նրա ագրեսիվության ուժեղացման հիմնական պատճառը այն դժվարությունների ու հակասությունների սրվելն է, որոնց հանդիպում է համաշխարհային կապիտալիզմը։ Կապիտալիստական որոշ երկրներում առանձին տարիներում եղած տնտեսական աճը ոչ միայն չվերացրեց կապիտալիզմի արատները, այլև էլ ավելի սրեց նրա բոլոր հակասությունները։ Վերջին հաշվով այն բոլոր միջոցները, որոնց դիմում են կապիտալիստական երկրների կառավարող շրջանները՝ ձգտելով երկարաձգել պատմության կողմից կապիտալիզմի նկատմամբ կայացված դատավճռի կատարումը, շուռ են գալիս հենց նրա դեմ։ Կապիտալիստական հակասությունները հանդես են գալիս ավելի լայն հիմքի վրա, կանխորոշելով այն նոր սոցիալական կոնֆլիկտների հասունացումը, որոնք կապիտալիզմին տանում են դեպի կործանում։

Պատմությունը գործում է ընդդեմ իմպերիալիզմի։ Բայց վերջինս զենքը ցած չի դնում։ ՍՄԿԿ XXII և XXIII համագումարների միջև ընկած ժամանակաշրջանը հենց բնորոշ է նրանով, որ իմպերիալիզմը, փորձելով իրադարձությունների ընթացքը շուռ տալ իր օգտին, բազմիցս ստեղծեց միջազգային սուր, մարդկության համար վտանգավոր ճգնաժամեր, դրանով իսկ նորից ու նորից հաստատելով իր ագրեսիվ, ավազակային բնույթը։ Հաշվետու ժամանակաշրջանում համաշխարհային զարգացման՝ իր կարևորությամբ առաջնահերթ արդյունքը հենց այն է, որ հեղափոխական ուժերը, կաշկանդելով իմպերիալիզմի ուժերին, կարողացան թույլ չտալ ջերմամիջուկային պատերազմի սանձազերծում և միևնույն ժամանակ ապահովեցին համաշխարհային ասպարեզում հասարակական պրոցեսների զարգացումը այն գլխավոր ուղղությամբ, որը համապատասխանում է սոցիալիստական երկրների, ազգային ազատագրական շարժման, միջազգային բանվոր դասակարգի շահերին։

Առաջադիմության գործի օգտին համաշխարհային ասպարեզում ուժերի նոր հարաբերակցության ամրապնդման մեջ վճռական դեր խաղաց սոցիալիստական համագործակցության աճող հզորությունը։ Դա որոշիչ ազդեցություն



է գործում արդի աշխարհում դասակարգային պայքարի ընթացքի վրա։ Որքան ուժեղ է սոցիալիստական համագործակցությունը, այնքան ամուր է այն հիմքը, որի վրա խարսխվում է համաշխարհային հեղափոխական ազատագրական շարժումը, այնքան անհաղթահարելի է հակահեղափոխության արտահանման և նոր համաշխարհային պատերազմի սանձազերծման պլաններ նյութող ուժերի ճանապարհին կանգնեցված արգելապատնեշը։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը միջազգային բանվոր դասակարգի գլխավոր նվաճումն է։ Սակայն համաշխարհային պայքարի ընթացքի վրա բանվոր դասակարգի աճող ազդեցությունը դրանով չի սահմանափակվում։ Միջազգային բանվոր դասակարգի դիրքերի ընդհանուր ամրապնդում՝ ահա թե ինչն է բնորոշ աշխարհում տիրող ներկա դրության համար։ Վերջին տարիներս կապիտալի շատ երկրներում բանվորական շարժումը նոր պլացդարմներ նվաճեց։ Դրանով իսկ ընդլայնվեց իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի շատ կարևոր ճակատը հենց նրա միջնաբերդում։ Հենվելով սոցիալիզմի համաշխարհային սիստեմի վրա, ամրապնդելով իր դիրքերը կապիտալիստական երկըրներում, ընդլայնելով իր շարքերը Լատինական Ամերիկայի, Ասիայի և Աֆրիկայի երիտասարդ պրոլետարիատի հաշվին, միջազգային բանվոր դասակարգը ավելի ու ավելի ակտիվ դեր է խաղում արդիականության արմատական պրոբլեմների լուծման գործում, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության պայքարում։

Մեր դարաշրջանում համաշխարհային բանվոր դասակարգը ձեռք է բերել հզոր դաշնակից՝ ազգային ազատագրական շարժումը։ XXII համագումարից հետո անցած տարիներին ժողովուրդների հակաիմպերիալիստական մեծ հեղափոխությունը նոր հաղթանակներ տարավ։ Իմպերիալիզմի գաղութային սիստեմից անջատվեցին ևս 17 երկրներ գրեթե 60 միլիոն բնակչությամբ։ Այժմ Ասիայում և Աֆրիկայում կան արդեն 65 սուվերեն պետություններ, որոնք մոտ անցյալում գաղութներ և կիսագաղութներ էին։ Դա նշանակում է, որ ճնշված ազգերի ազատագրման լոզունգը, որը 20-րդ դարի սկզբներին առաջ քաշեցին Լենինը, կոմունիստները, այսօր հաղթանակում է համաշխարհային մասշտաբով։

## 2

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ասպարեզում սոցիալիզմի օգտին ուժերի հարաբերակցության փոփոխությունները, սոցիալիզմի, խաղաղության և առաջադիմության գործի հաջողությունները ինքնըստինքյան չեկան։ Դրանք ժողովուրդների ընդհանուր թշնամու՝ իմպերիալիզմի դեմ համաշխարհային ռևոլյուցիոն շարժման բոլոր ջոկատների համառ պայքարի արդյունքն են։

ՍՄԿԿ XXII և XXIII համագումարների միջև ընկած ժամանակաշրջանը միջազգային ասպարեզում երկու հակադիր գծերի լարված պայքարի ժամանակաշրջան էր։

Մի գիծը նպատակ ունի թուլացնել միջազգային լարվածությունը, վերացնել պատերազմի վտանգի՝ իմպերիալիզմի ստեղծած օջախները, ամրապնդել ժողովուրդների խաղաղությունն ու անվտանգությունը, կանխել համաշխարհային հրթիռամիջուկային պատերազմը, ստեղծել արտաքին քաղաքական այն-

պիսի պայմաններ, որոնց մեջ ամեն մի ժողովուրդ կարողանար ազատորեն զարգանալ ազգային և սոցիալական առաջադիմության ուղիով։ Դա է Սովետական Միության, սոցիալիստական երկրների, համաշխարհային կոմունիստական շարժման գիծը։ Մյուս գիծը նպատակ ունի սրել միջազգային իրադրությունը, ուժեղացնել սպառազինությունների մրցավազքը, հրահրել տեղական պատերազմներ, խեղդել ազատագրական շարժումները և նախապատրաստել համաշխարհային պատերազմ։ Այդ գիծը վարում են միջազգային իմպերիալիզմի, առաջին հերթին Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիզմի ագրեսիվ ուժերը։

Կոմունիզմի դեմ «խաչակրաց արշավանքի» տխրահռչակ գաղափարը կազմում է ԱՄՆ-ի կառավարող շրջանների քաղաքականության հիմքը։ Իսկ քանի որ դոլարի իմպերիալիզմի համաշխարհային տիրապետության հաստատելու ճանապարհին հիմնական խոչընդոտը եղել և մնում է Սովետական Միությունը, ապա իմպերիալիզմի պայքարի սուր ծայրը առաջվա պես անշեղորեն ուղղվում է ՍՍՀՄ-ի դեմ։

Իմպերիալիստական Ամերիկայի պարագլուխները ավելի ու ավելի հաճախ են իրենց ռազմական մեքենան օգտագործում ժողովուրդներին ճնշելու համար։ Վերջին տարիներս ո՛րտեղ էլ թափվել է կամ թափվում է հայրենասերների արյունը՝ Վիետնամում թե Լաոսում, Դոմինիկյան Հանրապետությունում թե Կոնգոյում, ամենուրեք այդ հանցագործությունների կազմակերպիչները անպայման եղել են և ե՛ն ԱՄՆ-ի ագրեսիվ ուժերը։

Անդրօվկիանոսյան գիշատիչների ագրեսիվ գործողությունները թելադրված են ոչ թե ինքնավստահությամբ, այլ աճող տագնապով։ ԱՄՆ-ի իմպերիալիստական պարագլուխները զգում են, որ համաշխարհային տիրապետություն հաստատելու իրենց հույսերը ավելի ու ավելի անհիմն են դառնում։ Նրանք տեսնում են, որ ազգային ազատագրական հեղափոխությունների մաքրող հողմը նրանց ու Ասիայի, Աֆրիկայի նրանց պարտնյորներին դուրս է շպրտում, որ սոցիալիզմի արշալույսը արդեն ճառագել է նաև նրանց լատինա-ամերիկյան թիկունքում։

Դոլարի իմպերիալիզմի կողմից ձեռնարկվող պատժիչ գործողությունների նպատակն է՝ ինչ գնով էլ լինի փոխել իրադարձությունների ընթացքը, վերադարձնել կորցված դիրքերը, ամեն գնով մնալ Հարավային Վիետնամում և Հարավային Կորեայում, միլիտարիստական պայտած կրնկով ասպատակել լատինա-ամերիկյան անկասելիորեն աճող հեղափոխության օջախները, նեոգաղութատիրության մեթոդներով իմպերիալիստական ճնշողներին վերադարձնել նրանց երբեմնի դիրքերը Աֆրիկայում։ Կյանքը նորից ու նորից հաստատում է կոմունիստների այն հետևության ճշտությունը, որ հենց Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիզմն է պատերազմի և ագրեսիայի գլխավոր ուժը, ամբողջ աշխարհի ժողովուրդների թշնամին, համաշխարհային ժանդարմը և համաշխարհային շահագործողը, կործանվող գաղութային ռեժիմների պատվարը։

Առաջատար իմպերիալիստական տերության պարագլուխների ռազմատենչ միլիտարիստական քաղաքականությունը խրախուսում է նաև մյուս ագրեսիվ ուժերին։ ՍՄԿԿ XXIII համագումարը խաղաղության բոլոր բարեկամների ամենալուրջ ուշադրությունը հրավիրեց այն վտանգի վրա, որը ներկայացնում է ռևանշիզմի և միլիտարիզմի աճը Արևմտյան Գերմանիայում։

Փաստ է, որ Բոննի կառավարությունը իր պետական քաղաքականության



դրոշների վրա գրել է ռևանշի, պետական սահմանների բռնի վերանայման, Գերմանիայի պատմության մեջ առաջին խաղաղասիրական բանվորա-գյուղացիական պետության՝ Գերմանիայի Դեմոկրատական Հանրապետության վերացման լոզունգները։ Եվ դրանք ոչ թե պարզապես լոզունգներ են, այլ պրակտիկ քաղաքականություն, որն իր արտահայտությունն է գտնում ֆաշիստական ուժերի ակտիվ վերածնման, արդեն այսօր կեսմիլիոնանոց բանակի ստեղծման, Եվրոպայի ժողովուրդների խաղաղության ու անվտանգության դեմ ուղղված ակցիաների մեթոդիկ նախապատրաստման և ամենից առաջ միջուկային զենք ձեռք գցելու ձգտման մեջ։

Երկու առավել միլիտարիստական և ագրեսիվ պետությունների՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների ու Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության ռազմա-քաղաքական բլոկի ստեղծումը լուրջ սպառնալիք է դարձել բոլոր խաղաղասեր ժողովուրդների և պետությունների, այդ թվում նաև Եվրոպայի կապիտալիստական երկրների համար։ Եվրոպայի անվտանգության ապահովման պրոբլեմը ընդհանուր խաղաղության համար ժողովուրդների պայքարում առաջին տեղերից մեկն է գրավում։

ՍՄԿԿ XXIII համագումարը իր ծանրակշիռ խոսքն ասաց նաև այդ կարևորագույն հարցում։ Նրա ձայնին ունկնդրում են բոլոր նրանք, ովքեր չեն ուզում թույլ տալ, որ Եվրոպայի, ուրեմն և ամբողջ աշխարհի հողերի վրայով նորից անցնի արյունալի ամայացուցիչ պատերազմի մրրիկը։ Թույլ չտալ Արևմտյան Գերմանիայի միջուկային սպառազինում. Եվրոպայի տերիտորիայում ստեղծել միջուկազերծ գոտիներ. ամրապնդել եվրոպական պետությունների գոյություն ունեցող հետպատերազմյան սահմանները. նորմալ հարաբերություններ հաստատել գերմանական երկու պետությունների միջև. կնքել գերմանական հաշտության պայմանագիր, որը վերջ կտար երկրորդ համաշխարհային պատերազմի մնացորդներին,— սրանք են այն առավել կարևոր և առաջնահերթ միջոցառումները, որոնք տանում են դեպի այդ ազնիվ նպատակի իրականացումը։

Բայց որպեսզի այդ ճանապարհին ռեալ քայլեր արվեն, անհրաժեշտ է վերջ տալ ամերիկյան իմպերիալիստների միջամտությանը Արևմտյան Եվրոպայի գործերին։ Եվրոպայի պրոբլեմների՝ ժողովուրդների կենսական շահերին համապատասխանող իրական լուծումը կարող է ձեռք բերվել եվրոպական բոլոր երկրների կոլեկտիվ մասնակցության և կոլեկտիվ պատասխանատվության միջոցով։ Բոլոր եվրոպական ժողովուրդների, այդ թվում նաև Արևմտյան Գերմանիայի բնակչության խաղաղության համար մղվող պայքարում համագործակցություն հաստատելու ճանապարհին սկզբունքային խոչընդոտներ գոյություն չունեն։ ՆԱՏՕ-ի պրոպագանդիստները մարդկանց գլուխը տարել են, պնդելով, թե հյուսիս-ատլանտյան բլոկը անհրաժեշտ է՝ «Արևելքից եկող սպառնալիքը» կասեցնելու համար։ Սակայն այսօր ոչ մի լուրջ քաղաքագետ չի համարձակվի պնդել, թե իբր ՍՍՀՄ-ը սպառնում է Եվրոպային կամ աշխարհի որևէ այլ շրջանի։ Եվրոպայի նկատմամբ սպառնալիք իրոք գոյություն ունի, բայց դա գալիս է նրանցից, ովքեր հրամանատարություն են անում ՆԱՏՕ-ում։ Ահա թե ինչու Եվրոպայի ժողովուրդները կենսականորեն շահագրգռված են որքան կարելի է շուտ վերջ տալու նման դրությանը։

## 3

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXIII համագումարի աշխատանքը շատ համոզիչ կերպով վկայում է, որ մեր կուսակցությունն այսուհետև ևս ամեն անհրաժեշտ բան կանի խափանելու իմպերիալիստական ագրեսիան, սերտորեն համախմբելու խաղաղության և ազատության գործը պաշտպանող երկրներին ու ժողովուրդներին, ապահովելու բոլոր սոցիալիստական երկրների, բոլոր խաղաղասեր ուժերի համատեղ գործողությունները գաղութատիրության և նեոգաղութատիրության դեմ պայքարող ժողովուրդներին օգնություն ցույց տալու ասպարեզում։

Սովետական Միությունը վարել է և կվարի տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականություն։ Այդ քաղաքականությունը ձևակերպել է Վ. Ի. Լենինը։ Մեր կուսակցությունը անշեղորեն հավատարիմ է Լենինի պատգամներին։ Խաղաղ գոյակցության քաղաքականությունը երկու համաշխարհային սիստեմների՝ սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների երկրների պետական փոխհարաբերությունների զարգացման՝ ժողովուրդների շահերին առավել համապատասխանող քաղաքականությունն է։ Հանդիսանալով տարբեր սոցիալական կառուցվածք ունեցող պետությունների փոխհարաբերությունների հիմքը, այդ քաղաքականությունը միևնույն ժամանակ սոցիալիզմի և առաջադիմության ուժերի համար հեշտացնում է իրենց օգտին ուժերի հետագա գերակշռության հասնելու հնարավորությունը։ Խաղաղ գոյակցության քաղաքականությունը կապիտալիզմի վրա սոցիալիզմի պատմական հարձակման ձևերից մեկն է։ Դա պատերազմի սպառնալիքի դեմ, իմպերիալիզմի դեմ, նրա դիրքերի խարխլման համար մղվող ակտիվ, գործուն պայքարի քաղաքականությունն է, որը տանում է դեպի իմպերիալիզմի դեմ պայքարող ուժերի մեծացումը։

Հնարավոր է այսպիսի հարց՝ իսկ հարկ չկա՞ արդյոք հրաժարվել խաղաղ գոյակցության քաղաքականությունից, նկատի առնելով, որ իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունները խիստ սրել են միջազգային լարվածությունը։ Ո՛չ, հարկ չկա, պատասխանում են մարքսիստ լենինյանները։ Հարցն այն է՝ արդյոք ամբողջ աշխարհի խաղաղությունը պաշտպանող ուժերը կարո՞ղ են ետ մղել իմպերիալիստական ագրեսիայի բարձրացող ալիքը և ստիպել, որ նահանջեն պատերազմի հրձիգները։ Արդեն միայն այն փաստը, որ խաղաղության ու սոցիալիզմի ուժերը ոչ միայն կարող են հարցն այդպես դնել, այլև խաղաղության թշնամիների հետ տեղի ունեցող մենամարտում հաջողություններ հասնել, վկայում է համաշխարհային ասպարեզում ուժերի որակապես նոր հարաբերակցության մասին, մարդկությանը հուզող պրոբլեմների լուծման աճող հնարավորությունների մասին։

Անվիճելի է, որ վերջին տարիներս միջազգային կյանքի զարգացմանը հատուկ է լարվածության ուժեղացման և մեղմացման շրջանների փոխհաջորդում։ Բայց դա ամենևին չի փոխում այն փաստը, որ խաղաղ գոյակցության սկզբունքները, հակառակ իմպերիալիստների հարուցած խոչընդոտների, իրենց համար ճանապարհ են հարթում, նվաճում միջազգային հարաճուն ճանաչում։ Վերջին տարիներս կնքված մի շարք միջազգային համաձայնագրերն իրոք դժվարացնում են ագրեսիվ իմպերիալիստական ուժերի գործունեությունը. խաղաղության պայքարում ամրապնդվում է երիտասարդ առաջադեմ ազգային



պետությունների և սոցիալիստական երկրների համերաշխությունը. ԱՄՆ-ի իմպերիալիստների կողմից ագրեսիվ ռազմական խմբավորումների ցանցերի մեջ ներքաշված մի շարք կապիտալիստական երկրների քաղաքականության շրջադարձը դեպի ինքնուրույն ազգային քաղաքականություն վարելը. այս և մյուս փաստերը վկայում են, որ ՍՍՀՄ-ի, սոցիալիստական երկրների հետևողական խաղաղասիրական քաղաքականությունը դառնում է միջազգային քաղաքական կլիմայի առողջացման ավելի ու ավելի զորեղ և ակտիվ գործոնը։

Միջազգային կոմունիստական շարժման այն հետևությունը, որ իմպերիալիստական ագրեսորներին կարելի է սանձահարել, որ նոր համաշխարհային պատերազմը կարելի է կանխել, պահպանում է իր ամբողջ ուժը նաև մեր օրերին։ Բայց դրա առաջնահերթ պայմաններից մեկը խաղաղասեր ուժերի հզորության և ակտիվության մշտական մեծացումն է։ Չի կարելի անգործության վիճակի մատնվել, ապավինելով այն բանին, թե պատերազմը անխուսափելի չէ։ Հարկավոր է ագրեսիայի և պատերազմի դեմ պայքարել գործուն և ակտիվ կերպով, իմպերիալիզմի ագրեսիվ շրջաններին թույլ չտալով խախտելու ընդհանուր խաղաղությունը։

Մեր կուսակցության սկզբունքը անփոփոխ է. խաղաղության գործին հավատարմությունը պահանջում է ամենաուշադիր, ամենահոգատար վերաբերմունքը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության նկատմամբ։ Դրա շնորհիվ մենք ունենք ռազմական այնպիսի հզորություն, որը կարող է սառեցնել նույնիսկ ամենամոլի ավանտյուրիստների ռազմատենչ կիրքը։ Եվ մեր հայրենիքը իր ամբողջ հզորությունը, իր ամբողջ ազդեցությունը նվիրում է ագրեսորների սանձահարման, խաղաղության պահպանման պայքարին։ Սոցիալիզմի միջազգային քաղաքականության ուժը հենց այն է, որ նա կոչ է անում ակտիվ, հարձակողական պայքար մղել պատերազմի և ագրեսիայի դեմ, ամենավճռական ձևով օգնում է սանձահարելու իմպերիալիզմը, նրան թույլ չի տալիս խախտել ընդհանուր խաղաղությունը։

Իմպերիալիզմի դեմ, ազգային ազատության և անկախության համար պայքարող ժողովուրդներին ակտիվ օգնություն ցույց տալու գործում մեր կուսակցության, սովետական պետության հսկայական ավանդը միահամուռ ընդգծեցին ՍՄԿԿ XXIII համագումարի աշխատանքին մասնակցած եղբայրական կուսակցությունների բոլոր պատվիրակությունները։ Վիետնամի աշխատավորների կուսակցության կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Լե Զուանը, հիշեցնելով ՍՄԿԿ-ի և սովետական ժողովրդի փառապանծ հեղափոխական տրադիցիաների և պրոլետարական բարձր ինտերնացիոնալիզմի մասին, հայտնեց «խորին շնորհակալություն կոմունիստական կուսակցությանը, կառավարությանը և սովետական մեծ ժողովրդին՝ մեր վիետնամական ժողովրդի պայքարին ցույց տրվող հսկայական և բազմակողմանի օգնության համար»։ Սովետական ժողովրդին խորին երախտագիտություն ու շնորհակալություն հայտնեց նաև Հարավային Վիետնամի ազատագրության ազգային ճակատի պատվիրակության ղեկավար Նգուեն Թի Բինը։ Այդ հայտարարությունները սկզբունքային նշանակություն ունեն։

Պակաս կարևոր չէ նաև այն, որ Սովետական Միության, մյուս սոցիալիստական երկրների կողմից Վիետնամի մարտնչող ժողովրդին ցույց տրվող օգնությունը պետք է բազմապատկվի սոցիալիստական բոլոր պետությունների, բոլոր կոմունիստական կուսակցությունների միասնական, համատեղ

ելույթների և գործողությունների միջոցով։ Եվ հենց դրան էլ հաստատակամորեն կոչ արեց ՍՄԿԿ XXIII համագումարը։

ՍՄԿԿ XXIII համագումարի փաստաթղթերը խաղաղության և առաջադիմության բոլոր մարտիկների սևեռուն ուշադրությունը գրավեցին հենց այն պատճառով, որ դրանցում ամբողջ ուժով ցույց է տրված, թե մեր ժամանակներում որքան կարևոր են սոցիալիստական երկրների, ամբողջ աշխարհի կոմունիստների միասնական, համատեղ գործողությունները իմպերիալիստական ագրեսիայի սանձահարման գործում։ ՍՄԿԿ XXIII համագումարի կողմից ընդգծված այն թեզը, որ միջազգային իրադրությունը հրամայաբար պահանջում է բոլոր հակապատերազմական, հակաիմպերիալիստական ուժերի, առաջին հերթին սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների, միջազգային բանվորական և ազգային-ազատագրական շարժման բոլոր ջոկատների, խաղաղասեր ժողովուրդների և պետությունների, խաղաղության բոլոր կողմնակիցների համախմբում՝ անկախ նրանց քաղաքական հայացքներից ու աշխարհայացքից, շատ բուռն ու հզոր արձագանք գտավ ամբողջ աշխարհում։ Չէ՛ որ իմպերիալիզմի դեմ միլիոնավոր մարտնչողներ իրենց լրիվ հաշիվ են տալիս, որ այդ կոչը արտահայտում է պատմական բովանդակությունը մեր դարաշրջանի հեղափոխության, որը սոցիալիզմը անխզելի թելերով կապում է ժողովրդական ամենալայն մասսաների ազգային ազատագրական պայքարի հետ։

Այդպիսի համախմբման կորիզը կոմունիստական կուսակցություններն են։ Որքան ամուր լինի կոմունիստական շարժման բոլոր ջոկատների համերաշխությունը, այնքան ուժեղ կլինի միջազգային հակաիմպերիալիստական ճակատը, այնքան հաջող կզարգանա համաշխարհային հեղափոխական պրոցեսը։

Ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության դեմ մղվող պայքարում կոմունիստական ու բանվորական կուսակցությունների և սոցիալիստական երկրների համատեղ գործողությունների համար պայմաններ ստեղծելը առաջնահերթ խնդիր է։ Ահա թե ինչու մարքսիստ լենինյանները անթույլատրելի են համարում բոլոր այն քայլերը, որոնք կխոչընդոտեն այդ խնդրի լուծմանը։

Հենց այդպես վարվեց XXIII համագումարը, կոչ անելով զարգացնել եղբայրական հարաբերությունները բոլոր կուսակցությունների միջև՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա։ Մեկ անգամ ևս հիշեցնելով, որ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը դեմ է կոմունիստական շարժման մեջ հեգեմոնիզմին, համագումարը հայտարարեց, որ ՍՄԿԿ-ն այսուհետև ևս անշեղորեն կձգտի կոմունիստական շարքերի գաղափարական-քաղաքական համախմբմանը։ Այդպիսի համախմբման ամենաանհրաժեշտ նախադրյալը անհաշտ պայքարն է աջ և «ձախ» ռևիզիոնիզմի դեմ։ «Մարքս-լենինյան գծից ինչպես դեպի «ձախ», այնպես էլ դեպի աջ կատարվող խոտորումները,—ասված է Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ համագումարի ընդունած բանաձևում,— հատկապես վտանգավոր են, երբ դրանք կապված են նացիոնալիզմի ու հեգեմոնիզմի դրսևորման հետ»։

Լենինյան կուսակցության այսպիսի դիրքավորումը բարձր են գնահատում աշխարհի բոլոր կոմունիստները։ «Այժմ իմպերիալիզմի դեմ համաշխարհային մասշտաբով ծավալվող սուր պայքարում Սովետական Միության հետևողական ինտերնացիոնալիզմը և հատկապես այն մեծահոգի օգնությունը, որ ՍՍՀՄ-ը ցույց է տալիս Վիետնամի հերոսական ժողովրդին,— ասված է Մեքսիկայի կո-



մունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի՝ ՍՄԿԿ XXIII համագումարին ուղարկած ողջույնի մեջ,—մերկացնում են նրանց կեղծիքն ու ինտրիգները, ովքեր ձգտում են պառակտել համաշխարհային հեղափոխության
շարժումը»։

Արտասահմանյան երկրների կոմունիստները լիակատար հիմունքով նշում
են, որ նրանք, ովքեր այսօր գրոհում են Սովետական Միության վրա, իրականում թուլացնում են սոցիալական առաջադիմության և ազգային ազատագրության համար պայքարող բոլոր ժողովուրդներին։ Արտասահմանյան կոմունիստները լիակատար հիմունքով նշում են. ստեղծվել է այնպիսի դրություն,
երբ Սովետական Միությանը ցույց տրվելիք վերաբերմունքի հարցը ջրբաժան
գիծ է ոչ միայն գլխավոր թշնամու՝ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում,
այլև միջազգային բանվորական շարժման մեջ աղանդավորական, դոգմատիկ
կամ աջ ուղղությունների հետ տեղի ունեցող դիսկուսիայի մեջ։

XXIII համագումարը վերածվեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի
հուզիչ ցույցի։ Անցյալում ՍՄԿԿ-ի համագումարները երբեք չէին ունեցել եղբայրական կուսակցությունների այդպիսի մեծաթիվ պատվիրակություններ։
Առաջին անգամ ՍՄԿԿ-ի համագումարին ներկա էր նաև երիտասարդ ազգային
պետությունների հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների պատվիրակությունների մի մեծ խումբ։ XXIII համագումարի արտասահմանյան
հյուրերի ելույթները ցուցադրեցին կոմունիստների, հեղափոխական դեմոկրատների ձգտումը՝ ամրապնդելու համաշխարհային հեղափոխական ճակատի
միասնությունը։ ՍՄԿԿ XXIII համագումարի միջազգային մեծ նշանակությունը
հենց այն է, որ նոր հարված հասցվեց այն հույսերին, թե հակաիմպերիալիստական ուժերը կթուլանան ու կցլատվեն։

Բոլոր երկրների կոմունիստները, իմպերիալիզմի դեմ մարտնչողները,
հավանություն են տալիս ՍՄԿԿ XXIII համագումարի գծին և պաշտպանում են
այն, որովհետև համագումարը իր ամբողջ աշխատանքով, իր ամբողջ բովանդակությամբ բացահայտեց նոր հեռանկարները լուծելու առաջնահերթ կարևորություն ունեցող խնդիրը՝ կոմունիզմի և առաջադիմության բոլոր ուժերի
մարտական համախմբումը իմպերիալիստական ագրեսորների դեմ վճռական
համատեղ պայքարի պլատֆորմի վրա։

Իմպերիալիզմի դեմ, բանվոր դասակարգի ընդհանուր նպատակների համար մղվող պայքարում բոլոր եղբայրական կուսակցությունների գործողությունների միասնության գիծը մեր կուսակցությունը համարում է միակ ճիշտ
գիծը։ Եղած տարաձայնությունները չպետք է խոչընդոտ լինեն այդպիսի գործողությունների համար։ Համագումարը Կենտրոնական կոմիտեին հանձնարարեց
այսուհետև ևս զարգացնել ու ամրապնդել գաղափարական-քաղաքական կապերը սոցիալիզմի բոլոր երկրների կոմունիստական կուսակցությունների հետ՝
մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա, ըստ ամենայնի նպաստել սոցիալիստական համագործակցության երկրների համախմբմանը, նրանց հզորության և ազդեցության ամրապնդմանը, սովետական մարդկանց դաստիարակել եղբայրական երկրների ժողովուրդների հետ բարեկամության և ինտերնացիոնալ համերաշխության ոգով։ Համագումարը կոչ արեց ընդլայնել և ամրապնդել սովետական ժողովրդի, սովետական կոմունիստների և բոլոր երկրների
բանվոր դասակարգի ու աշխատավոր մասսաների ընկերության ու եղբայրու-

թյան կապերը, ամրապնդել բոլոր մայրցամաքների ժողովուրդների հակաիմ-
պերիալիստական համերաշխությունը:

Ավելի սերտորեն համախմբել շարքերը ընդհանուր թշնամու դեմ պայքա-
րելու համար՝ այս է լենինյան կուսակցության XXIII համագումարի կոչը:
ՍՄԿԿ-ն, հավատարիմ լինելով իր ինտերնացիոնալ հեղափոխական պարտքին,
անխոնջ կերպով կպայքարի բոլոր եղբայրական կուսակցությունների ինտեր-
նացիոնալ միասնության ամրապնդման համար: Գործելով այդ կերպ, Սովե-
տական Միության կոմունիստական կուսակցությունը նոր ավանդ կմուծի աշ-
խարհի կոմունիստների միջազգային համերաշխության ամրապնդման գոր-
ծում:

ՍՄԿԿ XXIII համագումարը հսկայական նշանակություն ունեցող իրա-
դարձություն եղավ նաև այն պատճառով, որ նա պարզ, աներկմիտ պատաս-
խան տվեց մեր օրերում միլիոնավոր մարդկանց առանձնապես հուզող հար-
ցին՝ արդյոք խաղաղասեր ուժերը ռեալ հնարավորություն ունե՞ն խանգարելու
իմպերիալիստներին՝ աշխարհը շուռ տալու պատերազմական կոնֆլիկտների
ուղին: Այո, այդպիսի հնարավորություն կա՛: Սոցիալիզմի, խաղաղության և
առաջադիմության ուժերի գերազանցության բազմապատկումը. սոցիալիստա-
կան պետությունների տնտեսական և ռազմական հզորության անշեղ մեծա-
ցումը. համախմբվելու և իմպերիալիստական ագրեսորներին սանձահարելու՝
բոլոր խաղաղասեր ուժերի հարաճուն ձգտումը՝ ահա թե ինչն է ամենից առաջ
կազմում այդ վստահության հիմքը:

Միջազգային ասպարեզում տեղի ունենալիք հետագա իրադարձություննե-
րը ամենայն լիակատարությամբ ցույց կտան, թե ինչ նշանակություն ունեցավ
ՍՄԿԿ XXIII համագումարը համաշխարհային սոցիալիզմի, ամբողջ կոմու-
նիստական, ազատագրական շարժման բախտի համար: Բայց արդեն այսօր
անվիճելի է մի բան. մեր համագումարին 86 կոմունիստական, հեղափոխա-
կան-դեմոկրատական և ձախ սոցիալիստական կուսակցությունների ներկա-
յությունը, ՍՄԿԿ-ի գծին նրանց միահամուռ հավանությունը, ցույց տվեցին, թե
լենինյան կուսակցությունը ինչպիսի տեղ է գրավում աշխարհի հեղափոխա-
կանների շարքում:

Դժվարին մարտերում կոփված Սովետական Միության կոմունիստական
կուսակցության կողմից ղեկավարվող սովետական մարդիկ վստահորեն են
նայում գալիքին, գիտենալով, որ նա մեզ նոր հաջողություններ կբերի կոմու-
նիզմի, կայուն խաղաղության, բոլոր ժողովուրդների պայծառ ապագայի հա-
մար մղվող պայքարում:

«Коммунист» № 6, 1966 г.

---

Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

# ՍՍՀՄ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ԷՏԱՊԸ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXIII համագումարը զուգադիպեց ժողովրդական
տնտեսության զարգացման յոթնամյա (1959—1965 թթ.) պլանի
ավարտմանը: Կուսակցության Կենտրոնական կոմիտեն, զեկուցե-
լով համագումարին, ընդգծեց, որ այդ ժամանակաշրջանում զգա-
լիորեն զարգացել է էկոնոմիկան, կան անվիճելի նվաճումներ: Դրա հետ միա-
սին բացահայտվեցին թերությունները. մեր կուսակցությունը սովոր չէ կոծկել
թերությունները, հաշտվել դրանց հետ:

ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունում, ինչպես նաև նոր հնգամյակին
նվիրված հատուկ զեկուցման մեջ և պատգամավորների ելույթներում յոթն-
ամյակի արդյունքների վերլուծությունից բացի տրված է ներկա հնգամյակում
ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական առաջադրանքների բնու-
թագրությունը: ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում սահմանված են
1966—1970 թվականներին ՍՍՀՄ-ում սոցիալիստական ընդլայնված վերար-
տադրության կառուցվածքը, մասշտաբներն ու տեմպերը:

## ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐՆԵՐԸ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ կուսակցության ղեկավարությամբ սովետական
ժողովուրդն անցած յոթնամյակում նոր հաջողություններ է ձեռք բե-
րել կոմունիստական շինարարության բնագավառում: Յոթնամյա
պլանի կենսագործմամբ խոշորագույն առաջընթաց քայլ է կատար-
վել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, աճել են
ՍՍՀՄ տնտեսական հզորությունը և պաշտպանունակությունը, բարձրացել է
սովետական մարդկանց կենսամակարդակը:

Յոթնամյակում ՍՍՀՄ հիմնական արտադրական ֆոնդերն աճեցին 1,9
անգամ, ընդ որում արդյունաբերության մեջ՝ 2 անգամ: Այդպիսի կրկնապատկ-
ման համար ԱՄՆ-ում պահանջվեց ավելի քան 30 տարի: Յոթ տարիների ըն-
թացքում կառուցվել և գործարկվել են 5,5 հազար խոշոր արդյունաբերական

ձեռնարկություններ։ Կառուցվել են աշխարհում ամենախոշոր դոմնաներ, կոքսային մարտկոցներ, գլանվածքային հաստոցներ, մեքենաշինական ու քիմիական գործարաններ, թեթև ու սննդի արդյունաբերության ձեռնարկություններ, ստեղծվել են տասնյակ հազարավոր նոր տիպի մեքենաներ։ Միաժամանակ, զգալիորեն բարեփոխվել են գործող հիմնական ֆոնդերը։ Այդ ամենը զուգորդվել է որակական առաջադիմությամբ, սովետական արդյունաբերությունը հագեցվել է ավելի կատարելագործված տեխնիկայով։

Ներկայումս Սովետական Միությունն ունի աշխարհում իր հզորությամբ երկրորդ արտադրական ապարատը։ Եթե 1929 թվականին արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերը կազմում էին ԱՄՆ-ի արդյունաբերության հիմնական կապիտալի 7, ապա 1965 թվականին կազմեցին 70 տոկոսը։

Արդյունաբերական արտադրանքի աճը 7 տարվա ընթացքում հասավ 84 տոկոսի (պլանով նախատեսված 80 տոկոսի դիմաց)։ 1965 թվականին արդյունաբերական արտադրանքի ամբողջ ծավալի մեջ առավել բարձր տեսակարար կշիռ (25,8 տոկոսը) ունեն մեքենաշինությունն ու մետաղամշակությունը։ Յոթնամյակի ընթացքում դրանք ավելացան 2,4 անգամ, այսինքն՝ ավելի, քան յոթնամյակին նախորդող հարյուրամյակի ընթացքում։ Քիմիական արդյունաբերության արտադրանքն ավելացավ 2,5 անգամ։ Հայրենական նավթային արդյունաբերության ամբողջ (ավելի քան հարյուրամյա) պատմության ընթացքում, մինչև յոթնամյակի սկիզբը, նավթի հանույթը կազմել է 113 միլիոն տոննա, իսկ միայն վերջին 7 տարում՝ 129 միլիոն տոննա։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965) պլենումի որոշմանը համապատասխան միջոցառումներ են կենսագործվում գյուղատնտեսության վերելքի ուղղությամբ։ 1965 թ. գյուղատնտեսական արտադրության ընդհանուր ծավալը գերազանցեց նախորդ տարիների արտադրության ամենաբարձր մակարդակը։

Սոցիալիստական արտադրության զարգացումը հանդիսացավ աշխատավորության նյութական բարեկեցության հիմքը։ Բարձրացան աշխատավարձի նվազագույն չափերը, ինչպես նաև ցածր ու միջին վարձատրություն ստացող աշխատողների տարիֆային դրույքներն ու կոպարները։ Բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը 1958 թվականի 78 ռուբլուց, 1965 թվականին բարձրացավ 95 ռուբլու։ Սպառման հասարակական ֆոնդերից տրվող վճարումներն ու արտոնությունները, հաշվի առնելով այդ աճը, 104 ռուբլուց բարձրացավ 128 ռուբլու։ Վերացվել կամ նվազեցվել են բանվորների ու ծառայողների զգալի մասի աշխատավարձից պահվող հարկերը։ 1965 թվականից սահմանված է կոլտնտեսականների պետական կենսաթոշակային ապահովություն։ Մեր երկրում կենսաթոշակ են ստանում 32 միլիոն մարդ (յոթնամյակի սկզբում եղած 20 միլիոնի դիմաց)։ Ավելացան մի շարք կենսաթոշակների նվազագույն չափերը։ Բանվորների ու ծառայողների թիվը յոթ տարիների ընթացքում ավելացավ 21 միլիոնով և 1965 թվականին հասավ 77 միլիոնի։ Մտցվեց յոթժամյա (իսկ աշխատողների որոշ կատեգորիաների համար վեցժամյա) աշխատանքային օր։

Առանձնապես մեծ են նվաճումները բնակարանային շինարարության ասպարեզում։ Յոթ տարվա ընթացքում շահագործման են հանձնվել 556 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ նոր բնակելի տներ, այսինքն՝ համարյա այնքան, որքան կառուցվել են սովետական իշխանության բոլոր տարիներին՝ մինչև 1958 թվականը։ 1956—1965 թվականներին ամբողջ բնակչու-



թյան մոտավորապես կեսը նոր բնակարաններ է ստացել կամ բարելավել է իր բնակարանային պայմանները։

Այսպիսին է յոթնամյակի ընթացքում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունների ընդհանուր, բայց ոչ ամենևին լրիվ պատկերը։ Այդ հաջողությունները արդյունք են ՍՍՀՄ բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի ժրաջան աշխատանքի։

Երկրի ժողովրդական տնտեսության հաջողությունները,— ասված է ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում,— կարող էին ավելի նշանակալի լինել, եթե առավել չափերով օգտագործվեին մեր հասարակարգի հիմքում ընկած օբյեկտիվ հնարավորությունները։

Յոթնամյակի պլանի կատարման ընթացքում լուրջ թերություններ հայտաբերվեցին էկոնոմիկայի առանձին ճյուղերի զարգացման գործում։ Գյուղատնտեսական արտադրանքի արտադրության գծով յոթնամյակի առաջադրանքները չկատարվեցին, այդ չէր կարող չանդրադառնալ երկրի տնտեսական զարգացման վրա։ Չկատարվեց ծանր արդյունաբերության մի քանի ճյուղերի արտադրության պլանը։ Դանդաղ էին յուրացվում նոր կարողությունները, մի շարք ձեռնարկություններում վատ է օգտագործվել սարքավորումը, դեռևս մեծ են աշխատաժամանակի կորուստները։ Բավարար չեն աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը։ Շատ ձեռնարկություններ թողարկում են տեխնիկապես հետամնաց և ցածրորակ արտադրանքներ։ Ժողովրդական տնտեսությունում դանդաղ են արմատավորվում գիտության ու տեխնիկայի նվաճումները։

Ժողովրդական տնտեսության արտադրական ֆոնդերի աճի բարձր և կայուն տեմպերը չեն ամրապնդվել դրանց արդյունավետության բարձրացումով։ Ազգային եկամտի (սպառման և կուտակման համար օգտագործված) ամենամյա աճի տեմպերը 1956—1960 թթ. 8,2 տոկոսից 1961—1965 թվականներին իջան մինչև 6 տոկոսի։ Հիմնական և շրջանառու արտադրական ֆոնդերի արժեքի նկատմամբ ազգային եկամտի հարաբերությունը 1959 թվականին (մեկ ռուբլու նկատմամբ) 59 կոպեկից իջավ 52 կոպեկի՝ 1964 թվականին։ Հիմնական արտադրական ֆոնդերի (առանց շրջանառու ֆոնդերի) նկատմամբ ազգային եկամտի հարաբերությունը 1958 թվականի 91 կոպեկից իջավ մինչև 76 կոպեկի՝ 1964 թվականին։

Այդ թերությունների պատճառն այն զգալի անհամապատասխանությունն է, որ վերջին տարիներին առաջացել է արտադրության աճած ծավալի և տնտեսության ղեկավարման (պլանավորման, կառավարման և նյութական խթանման)՝ մինչև վերջին ժամանակներս գործող մեթոդների միջև։ Ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության սահմանափակությունը, տնտեսական լծակների թույլ կիրառումը, տնտհաշվարկային հարաբերություններում ֆորմալիզմի տարրերի առկայությունը, սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջների թերագնահատումը, սուբյեկտիվիզմի դրսևորումը և մի շարք պրոբլեմների տնտեսական թույլ հիմնավորումը բացասաբար են անդրադարձել էկոնոմիկայի զարգացման վրա, իջեցրել են նրա արդյունավետությունը։

Միջազգային իրադրության բարդացման, իմպերիալիստների, հատկապես ԱՄՆ-ի ագրեսիվ գործողությունների պատճառով վերջին տարիներս հարկ եղավ ավելացնելու երկրի պաշտպանության վրա կատարվող ծախսերը։ ՍՍՀՄ





պաշտպանունակությունն ապահովելու համար հատկացված լրացուցիչ միջոցներն ազդեցին յոթնամյակի առանձին պլանային առաջադրանքների կատարման վրա։

## ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍՇՏԱԲՆԵՐՆ ՈՒ ՏԵՄՊԵՐԸ 1966—1970 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվներում ընդգծվում է, որ ընթացիկ հնգամյակի գլխավոր տնտեսական խնդիրն է՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների ըստ ամենայնի օգտագործման, ամբողջ հասարակական արտադրության ինդուստրիալ զարգացման, արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ապահովել արդյունաբերության հետագա նշանակալի աճ, գյուղատնտեսության զարգացման բարձր կայուն տեմպեր և դրա շնորհիվ հասնել ժողովրդի կենսամակարդակի էական վերելքի, սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների ավելի լիակատար բավարարման։

Նախատեսվում են տնտեսության զարգացման ավելի խոշոր մասշտաբներ ու բարձր տեմպեր, քան նախորդ հնգամյակում։ Հանրային արդյունքի և ազգային եկամտի ամբողջական ծավալը կավելանա 1,4 անգամ։ Այդ աճը կապահովվի գլխավորապես աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Աշխատանքի արտադրողականության աճման՝ մեկ աշխատողին ընկնող միջին տեմպերը կկազմեն արդյունաբերության մեջ՝ 6 տոկոս, 1961—1965 թթ. 4,6-ի փոխարեն, շինարարությունում՝ 6,6, 5,3 տոկոսի և գյուղատնտեսության հանրային սեկտորում՝ 7, 3,7 տոկոսի փոխարեն։

Աշխատանքի արտադրողականության այդպիսի աճն ենթադրում է զգալիորեն բարձրացնել աշխատանքի տեխնիկական և էներգետիկ զինվածությունը, արագորեն զարգացնել գիտությունն ու տեխնիկան, լայնորեն կիրառել դրանց նվաճումները։ Ժողովրդական տնտեսության տեխնիկական արագ վերազինումը նոր հնգամյակի առանձնահատկություններից մեկն է։ Առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի բազայի վրա, հասարակական արտադրության բոլոր ճյուղերի ինդուստրիալ զարգացման միջոցով պետք է հնացած արտադրանքը ժամանակին փոխարինել նոր, ավելի կատարելագործված, ժամանակակից բարձրորակ արտադրանքով։ Միաժամանակ կաճեն ընդլայնված վերարտադրության մասշտաբներն ինչպես արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության մեջ։ Արդյունաբերական արտադրանքը հնգամյակում կավելանա 1,5 անգամ։ Գյուղատնտեսական արտադրանքի արտադրության միջին տարեկան ծավալը 1966—1970 թթ. 25 տոկոսով ավելի կլինի անցյալ հնգամյակի միջին տարեկան ծավալից։

Ընդլայնված վերարտադրությունը զուգորդվելու է արտադրության ճյուղերի համամասնությունների փոփոխումով։ Տնտեսության ժամանակակից վիթխարի ծավալի և նրա կառուցվածքի բարդության պայմաններում շատ կարևոր է դառնում համամասնության հարցը։ Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումն անիմաստ է առանց արտադրության ճյուղերի ճիշտ համամասնությունների։ Կարևորն այստեղ, կապիտալիստական



էկոնոմիկայի համեմատությամբ, սոցիալիստական պլանային էկոնոմիկայի առավելությունների օգտագործումն է և, առաջին հերթին, արտադրողական կարողությունների միջև մշտական համամասնության պահպանումը։ Հասարակական արտադրությունը կրելու է ավելի հարմոնիկ և համապարփակ բնույթ։

Նոր հնգամյակի կարևորագույն առանձնահատկությունը ժողովրդական տնտեսության կառուցվածքի պրոգրեսիվ փոփոխությունն է, որը մեծ նշանակություն ունի արտադրության արդյունավետության բարձրացման գործում։

Հնգամյակի ընթացքում զգալիորեն կբարելավվեն (կկատարելագործվեն) համամասնությունները ժողովրդական տնտեսության երկու հիմնական ճյուղերի՝ արդյունաբերության և գյուղատնտեսության միջև։ Ներկայումս այդ համամասնությունները դեռևս կատարյալ չեն։ Մինչ ՍՍՀՄ արդյունաբերության մեկ աշխատողին ընկնում են մոտ 5 հազար ռուբլու հիմնական արտադրական ֆոնդեր, գյուղատնտեսության մեջ աշխատողի ֆոնդազինվածությունը 2 հազ. ռուբլուց էլ պակաս է։ Խնդիրը ոչ միայն ժողովրդական տնտեսության երկու հիմնական ճյուղերի ֆոնդազինվածության մակարդակի հավասարեցումն է, այլև գյուղատնտեսության մեջ որոշ չափով ավելի բարձր մակարդակի հասնելը, քանի որ գյուղատնտեսության տեխնոլոգիական առանձնահատկությունների պատճառով մի շարք գործիքներ ամբողջ տարին անընդմեջ չեն օգտագործվում։ Մեկ հնգամյակում այդ հարցը լուծել հնարավոր չէ։ Բայց այդ ուղղությամբ պետական կապիտալ ներդրումները 2 անգամ ավելացնելու շնորհիվ, խոշոր առաջընթաց քայլ կկատարվի գյուղատնտեսության մեջ. այս հանգամանքը դրանց տեսակարար կշիռը կապիտալ ներդրումների ամբողջ զանգվածում կբարձրացնի 17,4 տոկոսով (1959—1965 թթ. 11,3 տոկոսի փոխարեն)։ Արտադրական շինարարության և տեխնիկա ձեռք բերելու համար գյուղատնտեսության մեջ պետական կենտրոնացված կապիտալ ներդրումների ծավալը 1966—1970 թվականներին կկազմի 41 միլիարդ ռուբլի, իսկ կոլտնտեսությունների (այդ նպատակներով կատարվելիք ծախսերը հաշվի առնելով)՝ 71 միլիարդ ռուբլի։ Թեև գյուղատնտեսության մեջ կապիտալ բացարձակ ներդրումները ավելի քիչ են, քան արդյունաբերության մեջ, սակայն նրա աճի տեմպերը գերազանցում են արդյունաբերության կապիտալ ներդրումների տեմպերը։ Եթե աշխատանքի էլեկտրազինվածությունն արդյունաբերության մեջ կաճի 1,5 անգամ, ապա գյուղատնտեսության մեջ՝ 3 անգամ։ Գյուղատնտեսության աճի տեմպերի զգալի բարձրացման շնորհիվ դրանք կմոտենան արդյունաբերության տեմպերին։ Այդ բոլոր միջոցառումները՝ սոցիալ-կուլտուրական շինարարության ասպարեզում գյուղում տարվող խոշոր աշխատանքի հետ զուգորդելով, զգալիորեն կնվազեցնի քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունները։

Հատուկ ուշադրության է արժանի համամասնությունների բարելավումը նաև բուն արդյունաբերության մեջ։ Արտադրողական ուժերի զարգացման ձեռք բերված մակարդակը թույլ է տալիս վերաբաշխելու միջոցները հօգուտ սպառման առարկաների արտադրության՝ արտադրության միջոցների արտադրության առաջանցիկ զարգացումը պահպանելու պայմանով։ Եթե նախորդ հնգամյակում (1961—1965 թթ.) «Ա» խմբի արտադրանքի աճը կազմել է 58 տոկոս, իսկ «Բ» խմբինը՝ ընդամենը 36 տոկոս, ապա նոր հնգամյակում դրանց տեմպերը կմոտենան. «Ա» խմբում աճը կկազմի 49,52, իսկ «Բ» խմբում՝ 43,46 տոկոս։

Անհրաժեշտ է նշել, որ ընդհանրապես արտադրության միջոցների աճի մեծ գերազանցումը բնորոշ է երկրի արագացված ինդուստրացման և տնտեսության տեխնիկական վերակառուցման ժամանակաշրջաններին, որովհետև այդ ժամանակաշրջաններում ավելի արագ է աճում պահանջն ծանր արդյունաբերության կողմից մատակարարվող աշխատանքի գործիքների նկատմամբ։ Ծանր ինդուստրիայի առանձնապես արագացված զարգացում է պահանջվում նաև միջազգային բարդությունների պայմաններում, որովհետև ծանր արդյունաբերությունը երկրի պաշտպանական հզորության հիմքն է։

Բայց կան և այնպիսի պայմաններ, որոնք հնարավորություն են ընձեռում սպառման առարկաների արտադրության աճի տեմպերը մոտեցնելու արտադրության միջոցների արտադրությանը։ Այդպիսի պայմաններ են՝ ունեցած տեխնիկայի և մյուս հիմնական ֆոնդերի լավագույն օգտագործումը, հումքի, նյութի, վառելիքի և էներգիայի տնտեսումը, կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացումը, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության աճն արտադրության ռացիոնալացման և բնական բարենպաստ պայմանների հաշվին։ Արտադրության աճի այդ բոլոր աղբյուրները թույլ են տալիս կառավարել համեմատաբար պակաս արտադրության միջոցներով և դրա հաշվին արագացնել թեթև ու սննդի արդյունաբերության, բնակարանային, կոմունալ և կուլտուր-կենցաղային շինարարության վերելքը։ Հենց այդ աղբյուրների օգտագործման շնորհիվ է մեր երկրում ներկայումս ձեռք բերվել սպառման միջոցների արտադրության աճ, որն իր տեմպերով մոտ է արտադրության միջոցների արտադրության աճի տեմպերին։

Լուսաբանման համար բերենք միայն մեկ օրինակ։ Հենց միայն 1970 թվականին սև մետաղների գլանվածքի տնտեսումը կկազմի ավելի քան 8 միլիոն տոննա, այսինքն՝ այնքան, որքան մեկ տարում թողարկում է Մագնիտագորսկի մետալուրգիական կոմբինատը։ Դրա շնորհիվ վերանում է Մագնիտագորսկի գիգանտի կարողությունների հավասար լրացուցիչ կարողություններ ստեղծելու անհրաժեշտությունը։ Այդ տնտեսումը կարող է օգտագործվել՝ ինչպես արտադրության միջոցների, այնպես էլ սպառման առարկաների արտադրության ավելացման համար։ Հետևապես, որքան լավ է օգտագործվում «Ա» խմբի ճյուղերի արտադրանքը, նրա այնքան ավելի փոքր աճով կարելի է ապահովել ամբողջ արտադրության աճի բարձր տեմպեր։

«Ա» խմբի և «Բ» խմբի ճյուղերի աճման տեմպերի միջև ճեղքվածքը չի մեծանում, այլ կրճատվում է։ Բայց ծանր ինդուստրիան շարունակում է պահպանել իր առաջատար դերը ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման մեջ և գերազանցությունը՝ աճման մասշտաբների ու տեմպերի տեսակետից։ Դա, հատկապես, վերաբերում է այնպիսի ճյուղերի, որոնք անմիջականորեն ազդում են տեխնիկական առաջադիմության վրա՝ ժողովրդական տնտեսությունում։ Ամբողջ արդյունաբերական արտադրանքի 1,5 անգամ աճի համեմատ մեքենաշինության ու մետաղամշակության արտադրանքը կաճի 60—70, էլեկտրաէներգետիկայինը՝ 64—67 տոկոսով, իսկ քիմիական արդյունաբերությունը՝ 2 անգամ։

Ծանր արդյունաբերության անշեղ ու արագ զարգացման շնորհիվ կարելի է լուծել հնգամյակի այնպիսի մի կարևոր խնդիր, ինչպիսին գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործումն է ամբողջ հասարակական արտադրության ինդուստրիալ զարգացման բնագավառում։ Ինդուստրիալ զարգացումը հասարակական արտադրության այնպիսի մի զարգացում է, որի համար բնորոշ է բարձր արտադրողական մեքենաների ու առաջադիմական տեխնոլոգիայի սիստեմի համատարած լայն կիրառումը, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի յուրացումը, արտադրության ու աշխատանքի կազմակերպումը գիտական հիմունքներով, ձեռնարկությունների մասնագիտացման բարելավումը և արտադրության համակենտրոնացման մակարդակի բարձրացումը։



Ծանր արդյունաբերության զարգացման բազայի վրա զգալիորեն կկատարելագործվի ամբողջ արդյունաբերության և ներճյուղային համամասնությունների ճյուղային կառուցվածքը։ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում ընդգծվում է կառուցվածքային տեղաշարժումների անհրաժեշտությունը։ Դիրեկտիվներում ասված է. նախատեսել էլեկտրաէներգետիկայի, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության, մետալուրգիայի նախապատիվ զարգացում, ներճյուղային համամասնությունների բարելավում, արտադրության տնտեսապես առավել շահավետ տեսակների բաժնի մեծացում, որոնք հասարակության պահանջներն ապահովում են ավելի պակաս ծախսերով։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965) պլենումի որոշմանը համապատասխան ապահովել գյուղատնտեսության տեխնիկական բազայի զարգացումը։ Զգալիորեն ավելացնել մեքենայացման միջոցների, պարարտանյութերի և բույսերի՝ պաշտպանության քիմիական միջոցների մատակարարումները գյուղատնտեսությանը։

Արագացնել թեթև և սննդի արդյունաբերության զարգացումը, ինչպես նաև զգալիորեն ընդլայնել բնակչության համար թողարկվող ապրանքների արտադրությունը ծանր արդյունաբերության ձեռնարկություններում։

Հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար, ճյուղային կառուցվածքի կատարելագործման հետ մեկտեղ, հսկայական նշանակություն ունի տնտեսական մեթոդների լայն կիրառումը տնտեսության կառավարման ամբողջ սիստեմում։ Նոր հնգամյակի աչքի ընկնող առանձնահատկությունը ղեկավարման տնտեսագիտական մեթոդների կիրառումն է (ի հակադրություն մերկ վարչարարության), այդ մեթոդների դերի ու նշանակության ուժեղացումը արտադրության արդյունավետության բարձրացման գործում։ Հնգամյակի առաջին երեք տարիներին արդյունաբերական բոլոր ձեռնարկությունները պետք է անցնեն ղեկավարման, պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմի։ Դրված է լիակատար տնտհաշվարկի անցնելու խնդիրը։ Ի տարբերություն մինչև այժմ գործող տնտհաշվարկի սիստեմի, լիակատար տնտհաշվարկն ենթադրում է՝ լայնորեն օգտագործել տնտեսական լծակները հանուն սոցիալիստական արտադրության զարգացման և կիրառել տնտհաշվարկային հարաբերություններ արտադրության բոլոր օղակների գործունեության մեջ՝ ձեռնարկության ներսում (արտադրամասերում, տեղամասերում, բրիգադաներում ու ծառայություններում), ձեռնարկություններում, տրեստներում, կոմբինատներում, ֆիրմաներում, միավորումներում։

Լիակատար տնտհաշվարկի առանձնահատկություններն են՝ կենտրոնացած պետական պլանավորման առավել ճիշտ զուգակցում ձեռնարկությունների լայն տնտեսական նախաձեռնության հետ (տնտեսական միավորների լայն ինքնուրույնության՝ պետական կենտրոնացված պլանային ղեկավարության պահպանում միայն ամենաարմատական հարցերում) ձեռնարկությունների տնտեսական խթանում, տնտեսական լծակների՝ գնի, շահույթի, պարգևատրումների,

վարկերի և այլնի լայն օգտագործում, աշխատավորների նյութական խրախուսում՝ աշխատավարձի, պարգևատրումների, խրախուսական ֆոնդերի զանազան ձևերի ու սիստեմների պատշաճ կիրառում՝ տնտեսական կազմակերպությունների նյութական պատասխանատվության՝ պայմանագրային պարտավորությունները չկատարելու դեպքում. ձեռնարկությունների գործունեության արդյունքների գնահատում՝ ըստ աշխատանքի վերջնական ցուցանիշների (արտադրանքի իրացման ծավալը, շահույթները, շահավետությունը և արտադրանքների կարևոր տեսակների մատակարարումները). արտադրության անվնասաբերության ու շահավետության ապահովում, շահութաբերության մակարդակի որոշում։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

ՆՈՐ հնգամյակում սոցիալիստական տնտեսության ընդլայնված վերարտադրությունը զուգորդվելու է ժողովրդի բարեկեցության էական բարձրացմամբ։

Նախ, պետք է նշել, որ կարևոր միջոցառումներ են նախատեսվում ամբողջ աշխատունակ բնակչության զբաղվածությունը (գործազրկության բացառում) ապահովելու ուղղությամբ։ Հայտնի է, որ բնակչության աճի համեմատ ավելանում են նաև աշխատունակ մարդկանց թիվը, որոնց պետք է ապահովել աշխատանքով։ Հասարակական արտադրության աճը, գիտության զարգացումը և ժողովրդի սպասարկման ոլորտի ընդլայնումը թույլ են տալիս ժողովրդական տնտեսության մեջ բանվորների ու ծառայողների թիվը 1965 թվականի 77 միլիոնից, 1970 թվականին հասցնելու 91—92 միլիոնի։

Դա սոցիալական բարդ պրոբլեմ է։ Նոր բանվորական ուժի կիրառման նյութական ու ոչ-նյութական ոլորտների քանակական մեծացումը միայն բավական չէ։ Հարկ է լինում լուծել նաև այլ կարևոր խնդիրներ։ Դրանք են՝ հիմնական արտադրական ֆոնդերի հերթափոխության գործակցի աճի ապահովումը. Հեռավոր Արևելքի, Սիբիրի և եվրոպական հյուսիսի շրջաններում տեղադրված ձեռնարկություններում ու կազմակերպություններում աշխատողների աշխատավարձի գործակիցների սահմանումը (որպիսիք ներկայումս չկան). արտոնությունների ընդլայնումը ծայրագույն հյուսիսում և դրան հավասարեցված վայրերում աշխատողների համար. ազգային հանրապետությունների առանձնահատկությունները հաշվի առնելը և այլն։

Բնակչության լրիվ զբաղվածությունը հավասարազոր է յուրաքանչյուր ընտանիքի համար կայուն և բարձր ապահովության, որովհետև ընտանիքի աշխատունակ անդամները վարձատրվում են ծախսված աշխատանքի քանակին ու որակին համապատասխան։ Ինչ վերաբերում է ընտանիքի մեծահասակ անաշխատունակ անդամներին, ապա նրանք ստանում են կենսաթոշակ, որի չափերն ավելացվում են։

ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում նախատեսված կարևոր միջոցառում է՝ հնգամյակում բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացումը միջին հաշվով առնվազն 20 տոկոսով, իսկ հանրային տնտեսությունից կոլտնտեսականների դրամական ու մթերային եկամուտների ավելացումը՝ միջին հաշվով 35—40 տոկոսով։



Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը և, մասնավորապես, երկրի համատարած էլեկտրիֆիկացման բազայի վրա արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը զուգորդվում է աշխատանքում որակավորման և մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացմամբ։ Դրա հետ միասին գյուղատնտեսական աշխատանքն աստիճանաբար դառնում է ինդուստրիալ աշխատանքի մի այլատեսակը։ Վերանում է արդյունաբերական և գյուղատնտեսական աշխատանքի միջև եղած էական տարբերությունը։

Ձեռքի աշխատանքը մեքենայացանով փոխարինելու պրոցեսը միաժամանակ ցածր վարձատրվող ցածր որակավորման աշխատանքը բարձր վարձատրվող բարձր որակավորման աշխատանքով փոխարինելու մի պրոցես է։ Այդ կնպաստի նվազեցնելու այն տարբերությունը, որ գոյություն ունի նվազագույն և առավելագույն աշխատավարձի, ինչպես նաև քաղաքի ու գյուղի աշխատողների եկամուտների միջև։ Նոր հնգամյակը կարևոր էտապ է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, մի խոշոր առաջընթաց քայլ աշխատանքի բնույթը նրա տեխնիկական զինվածության հիման վրա փոփոխելու ուղղությամբ։ Իսկ դա էլ հիմք կհանդիսանա աշխատանքի վարձատրության փոփոխությունների համար։

Կուսակցության XXIII համագումարի կարևոր միջոցառումներից է՝ նոր հնգամյակում կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա երաշխավորված վարձատրություն մտցնելն ըստ համապատասխան տեսակի աշխատանքների ու արտադրանքի նորմաների՝ սովխոզների բանվորներին տրվող աշխատավարձի մակարդակին համեմատ։ Համագումարի դիրեկտիվների այդ դրույթի կենսագործմամբ կբարձրանա կոլտնտեսականների նյութական ապահովությունը, սեփականության կոլտնտեսային ձևի աշխատանքի վարձատրության մակարդակը կմոտենա համաժողովրդական սեփականության մեջ գոյություն ունեցող աշխատանքի վարձատրության մակարդակին, զգալի չափով կբարձրանա կոլտնտեսականների շահագրգռվածությունը կոլտնտեսությունների հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործում։

ՍՍՀՄ աշխատավորների բարեկեցությունը բարձրանում է ոչ միայն ի հաշիվ նրանց անհատական եկամուտների։ Դրա հետ միասին մեծ նշանակություն ունեն այն ծախսերը, որ կատարում են պետությունը և արհմիությունները կուլտուր-կենցաղային սպասարկման նպատակով՝ անվճար ուսուցում և բժշկական սպասարկում, մանկական հիմնարկներ (մանկամսուրներ, մանկապարտեզներ), նյութական օգնություն, բազմազավակ մայրերին կենսաթոշակներ, նպաստներ և այլն։ Ներկայումս բանվորի բյուջեում սպառման հասարակական ֆոնդերից կատարվող ծախսերը կազմում են նրա անհատական եկամուտների մոտ մեկ քառորդը։ Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացմանը համեմատ այդ բաժինն ավելի է աճելու։ 1970 թվականին այն հասնելու է 60 միլիարդ ռուբլու։ Այդ ժամանակ բանվորների ու ծառայողների միջին ամսական աշխատավարձը կհասնի 115, իսկ հասարակական ֆոնդերի ավելացումը հաշվի առնելով՝ 155 ռուբլու։ Զգալիորեն կբարելավվի կենսաթոշակային ապահովությունը. թոշակավորման հարցում միատեսակ կարգեր են սահմանվելու պետական և կոոպերատիվ-կոլտնտեսային ձեռնարկությունների աշխատողների համար, կավելանան կենսաթոշակների նվազագույն չափերը և այլն։

Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման կարևորագույն ցուցանիշնե-

րից մեկը մանրածախ շրջանառության աճն է, նրա կառուցվածքի կատարե-
լագործումը և առևտրի կազմակերպման բարելավումը քաղաքում ու գյուղում։
Հնգամյակի ընթացքում մեծ աշխատանք է տարվելու բնակչության առևտրա-
կան սպասարկումը մի նոր աստիճանի բարձրացնելու ուղղությամբ։ Պետա-
կան և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը կավե-
լանա 45 մլրդ ռուբլով, այսինքն՝ մոտավորապես 43,5 տոկոսով։ Զգալիորեն
կբարելավվի ժողովրդական սպառման (մթերային և արդյունաբերական) ապ-
րանքների վաճառքը։ Հասարակական սննդի ձեռնարկությունների շրջանառու-
թյունը կմեծանա մոտավորապես 45 տոկոսով։ Նշանակալի չափով կբարե-
լավվի դրանց արտադրանքը և բնակչության սպասարկումը։
Ապրանքաշրջանառության և հասարակական սննդի զարգացմանը նպաս-
տող առաջադրանքների կատարումը ապահովվում է սննդի ու թեթև արդյու-
նաբերության, գյուղատնտեսության աճի, ինչպես նաև քիմիական արդյունա-
բերության աճի բարձր տեմպերով։ Դրանք կոչված են ինքնարժեքի **իջեցման**
ճանապարհով հսկայական դեր խաղալու թեթև **արդյունաբերության հումքա-
յին** բազայի ընդլայնման, լայն սպառման առարկաների որակի բարելավման
և արդյունաբերական ապրանքների ասորտիմենտի մեծացման գործում։
Ժողովրդի բարեկեցության վերելքում մեծ դեր է խաղալու ժողովրդական
սպառման ապրանքների գների իջեցումը։ Նախատեսված է առանձին տեսակի՝
առաջին հերթին բնակչությանը վաճառվող մանկական ասորտիմենտի ապ-
րանքների պետական մանրածախ գների իջեցում։ Մի կողմից, արտադրության
ու շրջանառության ծախքերի իջեցման, մյուս կողմից՝ ժողովրդական սպառ-
ման ապրանքների և անհրաժեշտ միջոցների (ապրանքային և ֆինանսական)
կուտակումների աճի համեմատ կիջեցվեն ապրանքների մանրածախ գները։
Ժողովրդի կենսամակարդակը բնութագրելու համար հսկայական նշանա-
կություն ունի բնակարանային շինարարության զարգացումը։ Հնգամյակի ըն-
թացքում քաղաքներում, բանվորական ավաններում և սովխոզներում կառուց-
վելու են ավելի քան 480 մլն, իսկ գյուղական վայրերում (սովխոզների ու
բնակչության ուժերով)՝ 2—2,5 մլն քառակուսի մետր ընդհանուր տարածու-
թյուն ունեցող բնակելի տներ։ 1966—1970 թվականներին նոր բնակարաններ
կփոխադրվեն մոտ 65 մլն մարդ (նախորդ հնգամյակի 54 մլն-ի փոխարեն)։
Միաժամանակ կբարելավվի բնակչության կոմունալ սպասարկումը։
Արտադրողական ուժերի աճի և նյութական արտադրության ընթացքում
տեղի ունեցող արմատական փոփոխությունների հետ միասին փոխվում է
ինքը՝ մարդը, ձևավորվում է նրա կոմունիստական աշխարհայացքը։ Դա ինք-
նահոսով չի կատարվում, այլ կոմունիստական կուսակցության և սոցիալիս-
տական պետության ակտիվ ներգործությամբ։ Կուսակցությունը մշտական հո-
գատարություն է ցուցաբերում ժողովրդական կրթությունը զարգացնելու և կա-
տարելագործելու, ժամանակակից գիտության հիմունքներին մարդկանց հա-
ղորդակից դարձնելու, նյութական արժեքներ ստեղծող **աշխատանքի** նկատ-
մամբ նրանց մեջ ունակություններ դաստիարակելու **միջոցով և այդ հիման**
վրա նրանց դարձնելով որպես գիտակից, կոմունիստական շինարարությանը
նվիրված սովետական հասարակության անդամներ։
Արդեն ութերորդ տարին է, որ ՍՍՀՄ-ում գոյություն ունի ընդհանուր
պարտադիր ուսուցում ութամյակի ծավալով։
1966—1970 թթ. մի նոր խոշոր քայլ է կատարվում այդ ուղղությամբ։



Հիմնականում ավարտվելու է անցումը լրիվ (տասնամյակի ծավալով) միջնա-
կարգ կրթության։ Միջնակարգ կրթություն կստանան 4 անգամ ավելի սովո-
րողներ, քան եղել է նախորդ հնգամյակում։ Հետևաբար, նոր հնգամյակից հե-
տո աճող նոր սերունդը աշխատանքի կգա միջնակարգ կրթությամբ։
Զգալիորեն ընդարձակվում է տեխնիկումների և պրոֆեսիոնալ-տեխնիկա-
կան կրթության ուսումնական հաստատությունների ցանցը։ Նոր հնգամյակի
վերջում սովորողների թիվը տեխնիկումներում կավելանա մոտավորապես 1,5
անգամ և կհասնի 1.600 հազարի, իսկ բարձրագույն ուսումնական հաստատու-
թյուններում՝ մինչև 5 միլիոնի (1965/66 ուսումնական տարվա 3830 հազարի
փոխարեն)։ Դրան պետք է ավելացնել քաղաքի ու գյուղի արտադրության աշ-
խատողների ուսուցման լայն ծրագիր, միլիոնավոր բանվորների, ծառայողների
և կոլտնտեսականների որակավորման բարձրացումը։
Բնակչության կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ
տարվող աշխատանքի այդպիսի վիթխարի մասշտաբը լուրջ գործոն կդառնա
աշխատանքի արտադրողականության աճի համար և մի առաջընթաց քայլ կլի-
նի մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների վերաց-
ման ճանապարհին։
Այսպիսին է էկոնոմիկայի և սովետական ժողովրդի նյութական-կուլտու-
րական մակարդակի բարձրացման ընդհանուր, բայց ոչ լրիվ պատկերը նոր
հնգամյակում։
Սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարու-
թյամբ մարդկության պատմության մեջ առաջինը ստեղծեց սոցիալիզմ և ներ-
կայումս առաջինն է ուղի հարթում դեպի կոմունիզմ։ Նոր (ութերորդ) հնգամ-
յակը կարևոր էտապ է, խոշոր առաջընթաց քայլ այդ ճանապարհին։ Այժմ մեր
ժողովուրդն իրեն հատուկ խանդավառությամբ, ակտիվությամբ և նախաձեռ-
նությամբ վիթխարի աշխատանք է ծավալել նոր հնգամյակի հոյակապ առա-
ջադրանքները կատարելու համար։
Սոցիալիստական շինարարության տարիներին Սովետական Միությունը
դարձել է բարձր զարգացած, առաջավոր ինդուստրիալ մի հզոր տերություն,
որն ընդունակ է լուծելու տեխնիկական ու տնտեսական նոր բարդ խնդիրներ։
Ներկայումս ՍՍՀՄ-ը անում է ամեն ինչ արագ ստեղծելու կոմունիզմի նյու-
թատեխնիկական բազան։ Մենք հնարավորություն ունենք կապիտալ ներդրում-
ների համար առանձնացնելու այնպիսի վիթխարի միջոցներ, որոնք անհրա-
ժեշտ են արագացնելու կոմունիզմի նյութական հիմքերի շինարարության տեմ-
պերը։ Ունենք բարձր զարգացած սոցիալիստական ինդուստրիա, որն ընդու-
նակ է լուծելու տեխնիկական և տնտեսական բարդ խնդիրներ, ունենք անսահ-
մանափակ բնական հարստություններ։ ՍՍՀՄ-ում աճել են գիտնականների,
բարձր որակավորում ունեցող բանվորների և մասնագետների կադրեր, որոնք
ընդունակ են անշեղորեն զարգացնելու և կատարելագործելու կոմունիզմի
նյութատեխնիկական բազան։ Կոմունիստական կուսակցության նախատեսած՝
կոմունիստական շինարարության առաջիկա հինգ տարիների ծրագրի կա-
տարման համար մեր հնարավորությունների օգտագործումը համաժողովրդ-
դական գործ է, համապետական խնդիր։

Ս. ՊԱՊՅԱՆ

# ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՉ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՈՒՂՈՒ ՄԱՍԻՆ

— *ՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ:*
— *ՊԱՏՄԱԿԱՆ ՓՈՐՁԸ: ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԻ ՕԳՆՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ:*
— *ՏԱՐԲԵՐ ԵՐԿՐՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ:*
— *ԱԶԳԱՅԻՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԲՆՈՒՅԹԸ:*



ԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ժամանակաշրջանում Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ավելի քան 60 երկրներ ձեռք են բերել քաղաքական անկախություն: Եթե երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին գաղութարարների անմիջական տիրապետության տակ գտնվում էր ավելի քան մեկ և կես միլիարդ մարդ, ապա ներկայումս նրանց թիվը կազմում է 40—45 միլիոն: Ազատագրված ժողովուրդների առջև այժմ ամբողջ լրջությամբ դրված է նաև տնտեսական անկախության հասնելու խնդիրը, որը պահանջում է սոցիալական խոր և բազմակողմանի վերափոխումներ և, որ ամենակարևորն է, ընտրել զարգացման ուղի: Նշված խնդրի լուծման համար Աֆրիկայի և Ասիայի մի շարք երկրներում ռեալ հնարավորություններ կան ընտրելու զարգացման ոչ կապիտալիստական, սոցիալիստական ուղի: Ինչպես ընդգծվեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման առթիվ կուսակցության XXIII համագումարում ընդունված բանաձևում, ներկայումս «ժողովուրդները ազգային-ազատագրական հեղափոխության լիակատար հաղթանակի, դարավոր հետամնացությունը վերացնելու և կենսապայմանները բարելավելու հեռանկարները ավելի ու ավելի վճռականորեն են կապում զարգացման ոչ կապիտալիստական ուղու հետ»:

Հետամնաց երկրների ոչ կապիտալիստական զարգացման ուղու հարցը կարևոր տեղ է գրավում սոցիալիստական հեղափոխության մարքս-լենինյան տեսության, ազգային-գաղութային հարցի վերաբերյալ լենինյան ուսմունքի մեջ: Հետամնաց երկրների՝ կապիտալիստական զարգացման փուլը շրջանցելու, սոցիալիզմին անցնելու հնարավորության վերաբերյալ գաղափարն ընդհանուր տեսական ձևով արտահայտել է Կարլ Մարքսը Բրիտանական տիրապետության ապագա արդյունքները Հնդկաստանում (1853 թ.) աշխատության մեջ: Մարքսը գիտականորեն ապացուցել է, որ մարդկությունն իր զարգացման ընթացքում անցնում է որոշակի բնապատմական փուլերով: Դրա հետ մեկտեղ նա նշել է, որ եթե հասարակությունն ընտրի զարգացման ճիշտ ուղի, ապա համապատասխան բարենպաստ պայմաններում, «նա կարող է կրճատել ու մեղմացնել երկունքի ցավերը» (Կ. Մարքս. Կապիտալ, հ. 1, էջ 8): Չխախտելով հասարակական-պատմական առաջադիմության բնական հետևողականությունը, այս կամ այն ժողովուրդները կարող են իրենց յուրօրինակ առանձնահատկությունները մտցնել նրա ձևերի ու տեմպերի մեջ:

Երկրորդ ինտերնացիոնալի լիդերները՝ «արտադրողական ուժերի տեսության» տխրահռչակ կողմնակիցները մերժում էին հետամնաց երկրների՝ կապիտալիզմը շրջանցելով սոցիալիզմին անցնելու հնարավորությունը: Նրանք պնդում էին, թե սոցիալիզմին կարելի է անցնել միայն այն ժամանակ, երբ երկրի արտադրողական ուժերը լայն զարգացում կստանան, այսինքն այն դեպքում, երբ հետամնաց երկրները կհասնեն առաջավորների մակարդակին: Նրանք ամենևին չէին ընդունում այն միտքը, թե աշխատավորների կողմից քաղաքական իշխանությունը նվաճելուց հետո, սոցիալիզմի կառուցման ընթացքում, կարելի է ուղղել կապիտալիզմի «թերակատարությունները», վերացնել նախկին գաղութների տնտեսական հետամնացությունը:

Թույլ զարգացած երկրների՝ սոցիալիզմին անցման ժամանակաշրջանի առանձնահատկությունները Լենինը լուսաբանել է Կոմինտերնի II կոնգրեսին տված իր զեկուցման մեջ, Պարենային հարկի մասին հոդվածում, Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի և Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին նամակում, Արևելքի ժողովուրդների կոմունիստական կազմակերպությունների համագումարում արտասանած ճառում և այլ աշխատություններում ու ելույթներում: Զարգացնելով մարքսիզմը պատմական նոր պայմաններում, Վ. Ի. Լենինը համակողմանիորեն մշակեց սոցիալիստական հեղափոխության տեսությունը, ստրատեգիան և տակտիկան իմպերիալիզմի դարաշրջանում, ներառյալ նաև տնտեսապես հետամնաց երկրներում սոցիալիզմի հաղթանակի ու շինարարության պրակտիկ ծրագիրը: Կոմինտերնի երկրորդ կոնգրեսում Լենինը նշում է. «Արդյոք մենք կարո՞ղ ենք ճիշտ համարել այն պնդումը, թե ժողովրդական տնտեսության կապիտալիստական զարգացման ստադիան անխուսափելի է այն հետամնաց ժողովուրդների համար, որոնք այժմ ազատագրվում են և որոնց մոտ այժմ, պատերազմից հետո, շարժում է նկատվում առաջադիմության ուղիով: Մենք այդ հարցին բացասաբար ենք պատասխանել»: Լենինն ընդգծում էր, որ «առաջավոր երկրների պրոլետարիատի օգնությամբ հետամնաց երկրները կարող են անցնել... կոմունիզմին, խուսափելով զարգացման կապիտալիստական ստադիայից» (Երկեր, հ. 31, էջ 294—295):

Վ. Ի. Լենինը գիտականորեն հիմնավորեց աշխատավորների կողմից իշխանությունը նվաճելու հնարավորությունը նաև նախքան տվյալ երկրում արտադրողական ուժերի լայն զարգացումը: «Եթե սոցիալիզմի ստեղծման համար պահանջվում է կուլտուրայի որոշ մակարդակ (թեև ոչ ոք չի կարող ասել,

թե որն է այդ որոշ «կուլտուրայի մակարդակը», որովհետև այն տարբեր է արևմտաեվրոպական պետություններից յուրաքանչյուրի մեջ) հապա ինչո՞ւ մենք չենք կարող սկսել, նախ, հեղափոխության ուղիով, այդ որոշ մակարդակի համար նախադրյալներ նվաճելուց, իսկ հետո արդեն, բանվորա-գյուղացիական իշխանության և սովետական հասարակարգի հիման վրա, առաջ շարժվել մյուս ժողովուրդներին հասնելու համար» (Երկեր, հ. 33, էջ 569):

Լենինը խստորեն քննադատում էր նրանց, ովքեր տեսնում էին միայն երկու տիպի հեղափոխություն՝ բուրժուական և սոցիալիստական, ովքեր մարքսիզմը «այնպիսի խղճուկ-լիբերալական աղավաղման են վերածել, որ նրանց համար, բացի բուրժուական ու պրոլետարական հեղափոխության հակադրումից, ուրիշ ոչինչ գոյություն չունի, բայց հենց այդ հակադրումն էլ նրանք չափազանց մեռցրած են ըմբռնում» (Երկեր, հ. 25, էջ 537): Նա վճռականորեն հանդես էր գալիս բուրժուական և սոցիալիստական հեղափոխությունների միջև անհաղթահարելի պատնեշ ստեղծելու դեմ: Ոչ կապիտալիստական զարգացման առանձնահատկությունն այն է, որ այդ զարգացման ընթացքում լուծվում են ոչ միայն ընդհանուր դեմոկրատական, այլև սոցիալիստական հեղափոխության որոշ խնդիրներ, ոչ միայն վերացվում են ֆեոդալական հարաբերությունների մնացուկները, այլև օտարերկրյա կապիտալի ազգայնացման և մասնավոր ազգային կապիտալի գործունեությունը սահմանափակելու միջոցով անշեղորեն նեղացվում է կապիտալիստական էկոնոմիկայի բազան:

Ոչ կապիտալիստական զարգացման ուղին մերժում է կապիտալիզմը որպես պատմական հեռանկար, որպես հասարակության սոցիալական կյանքի կազմակերպման ձև: Բայց այն միանգամից չի ապահովում անցումը սոցիալիզմին: Նա պայմաններ է ստեղծում երկրի քաղաքական, սոցիալ-տնտեսական զարգացման համար, որը հետագայում տանում է դեպի սոցիալիզմ: Այդ ուղին իր նշանակությամբ հեղափոխական պրոցես է, որն արտացոլում է ժամանակակից պայմաններում, այսինքն համաշխարհային սոցիալիզմի ազդեցության տակ՝ ֆորմացիաների (ֆեոդալիզմ-կապիտալիզմ-սոցիալիզմ) փոփոխման հետևողականությունը խախտելու և սոցիալիզմին անցնելու հնարավորությունը՝ կամ ամբողջովին շրջանցելով կապիտալիզմի փուլը, կամ շրջանցելով հասուն կապիտալիզմի փուլը:

Կուսակցության XXIII համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշվեց, որ «Վերջին տարիների կարևոր իրադարձությունը մի շարք ազատագրված նորաստեղծ երկրների դուրս գալն էր սոցիալական առաջադիմության զարգացման ուղին: Դրանով իսկ պրակտիկայում հաստատվեց կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի 1960 թվականի խորհրդակցության հետևությունը, խորհրդակցություն, որն իր հայտարարության մեջ արձանագրեց հետևյալը. ժողովրդական մասսաները «համոզվում են, որ դարավոր հետամնացության վերացման և իրենց կյանքի պայմանների բարելավման լավագույն ուղին ոչ-կապիտալիստական ուղին է: Ժողովուրդները միայն այդ ուղիով կարող են ազատվել շահագործումից, աղքատությունից ու սովից»:

Նախահեղափոխական Ռուսաստանի ազգային ծայրամասերի ժողովուրդների՝ սոցիալիզմին անցման իրագործումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմական մեծ ծառայությունն է: Ժամանակակից պայմաններում այդ փորձի ուսումնասիրությունը կարևոր նշանակություն ունի



նախկին գաղութների այն ժողովուրդների համար, որոնք կանգնել են ինքնուրույն զարգացման ուղու վրա: Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության առանձնահատկություններից մեկն այն էր, որ ազգային ծայրամասերում ազատագրական շարժումն անմիջաբար ձուլվեց երկրի կենտրոնական շրջաններում սոցիալիստական հեղափոխության հետ: Ծայրամասերի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը զարգանում էր որպես համառուսաստանյան հեղափոխական շարժման բաղկացուցիչ մաս: Այդ առանձնահատկությունն զգալիորեն դյուրացրեց նախկինում հետամնաց ժողովուրդների՝ կապիտալիզմի փուլը շրջանցելով սոցիալիզմի ուղին բռնելու գործը:

Մինչկապիտալիստական հարաբերություններից սոցիալիզմին անցնելու կարևոր սկզբունքը, որն առանձնապես նշել է Վ. Ի. Լենինը, միջոցառումների պրակտիկ իրագործման ժամանակ աստիճանականություն, հետևողականություն և համբերատարություն դրսևորելն է: Խոսելով Կովկասի ժողովուրդների նկատմամբ կուսակցության քաղաքականության մասին, Լենինը նշում էր. «Ավելի դանդաղ, ավելի զգույշ, ավելի սիստեմատիկ անցում դեպի սոցիալիզմ—ահա թե ինչն է հնարավոր և անհրաժեշտ Կովկասի հանրապետությունների համար՝ ի տարբերություն ՌՍՖՍՀ-ի» (Երկեր, հ. 32, էջ 404):

Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության պատմական փորձը ցույց է տալիս, թե ինչպես մի երկրում, որտեղ տիրում էին մինչկապիտալիստական հարաբերություններ և փաստորեն չկար բանվոր դասակարգ, իրագործվեցին սոցիալ-տնտեսական այնպիսի վերափոխումներ, որոնք լիովին վերացրին ֆեոդալ-ճորտատիրական հարաբերությունները և ժողովուրդը ամուր կերպով կանգնեց սոցիալիզմի կառուցման ուղու վրա: Մոնղոլական ժողովրդական հեղափոխությունն իր բնույթով հակաիմպերիալիստական և հակաֆեոդալական էր: Այդ հեղափոխությունը միաժամանակ ուներ իր յուրօրինակ առանձնահատկությունները, քանի որ այն տեղի էր ունեցել մի երկրում, որտեղ լիովին տիրում էին մինչկապիտալիստական հարաբերություններ, որտեղ չկային ազգային բուրժուազիա և ազգային բանվոր դասակարգ: Մոնղոլական հեղափոխության շարժիչ ուժը հեղափոխական արատությունն էր (գյուղացիությունը), որին գլխավորում էր ժողովրդա-հեղափոխական կուսակցությունը և որը հենվում էր սովետական հանրապետությունների հաղթանակած պրոլետարիատի հետ դաշինքի և նրա եղբայրական օգնության վրա: Նրա գլխավոր նպատակն էր՝ ֆեոդալիզմի ոչնչացումը, երկրի հասարակական-քաղաքական կյանքի դեմոկրատացումը, դեպի սոցիալիզմ ոչ կապիտալիստական զարգացման ուղու ապահովումը: ՄԺՀ-ում հակաֆեոդալական հեղափոխության նախապատրաստումը տևեց երկար տարիներ, իսկ ֆեոդալական հարաբերությունների վերացումն իրագործվեց աստիճանաբար, փուլ առ փուլ:

Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության էկոնոմիկայի զարգացման համար մեծ նշանակություն է ունեցել և այժմ էլ ունի Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների օգնությունը: Սովետական Միությունը 1948—1959 թվականներին արդյունաբերական և գյուղատնտեսական շինարարության կարիքների համար ՄԺՀ-ին տրամադրել է 531 միլիոն ռուբլի ընդհանուր գումարով վարկեր (չհաշված անվարձահատույց օգնությունը): 1960 թվականի սեպտեմբերին և 1961 թվականի ապրիլին ստորագրվել են տնտեսական նոր համաձայնագրեր, որոնց հիման վրա մեր երկիրը 1961—1965 թվականներին ՄԺՀ-ին տրամադրել է 260,3 միլիոն ռուբլու վարկ:

Բացառիկ դեր խաղացին համաշխարհային սոցիալիզմի օրինակն ու ազդեցությունը, նրա համակողմանի օգնությունը։ Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների կողմից Եգիպտոսին ցույց տրված վճռական աջակցությունը ինչպես զինված ագրեսիայի օրերին, այնպես էլ տնտեսական բլոկադայի ժամանակաշրջանում, Ալժիրի ժողովրդին ցույց տրված օգնությունը՝ գաղութարարների դեմ ուղղված պատերազմում, իմպերիալիստական շանտաժին դիմակայող Գվինեական Հանրապետությանը ցույց տրված օգնությունը և ազգային-ազատագրական պայքարը պաշտպանելու մյուս բազմաթիվ փաստերը մեծ չափով բարձրացրին համաշխարհային սոցիալիզմի հեղինակությունը։

Արաբական Միացյալ Հանրապետության և Սովետական Միության միջև բարեկամական կապերի հետագա ամրապնդման վառ ապացույց հանդիսացավ ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինի գլխավորած սովետական կառավարական պատվիրակության պաշտոնական այցը ԱՄՀ, որը տեղի ունեցավ 1966 թվականի մայիսի 10-ից մինչև 18-ը։ Այցի ժամանակ Գ. Ա. Նասերի և Ա. Ն. Կոսիգինի միջև տեղի ունեցան բանակցություններ, որոնք տոգորված էին բարեկամության և փոխադարձ վստահության տրադիցիոն ոգով։ Նշվեց, որ Սովետական Միության անշահախնդիր օգնությունը նպաստում է ԱՄՀ-ի՝ ոչ կապիտալիստական ուղիով զարգացմանը, նրա միջազգային դիրքերի հետագա ամրապնդմանը։

Վճռականորեն բռնեց ոչ կապիտալիստական զարգացման ուղին նաև Սիրիայի նոր կառավարությունը։ Սովետական ժողովուրդը չի կարող չողջունել Սիրիայի հայրենասիրական ուժերի համախմբումը երկրի առաջադիմական ծրագրի շուրջը։ Դա միանգամայն հասկանալի է։ Չէ՞ որ Սիրիայի տնտեսական հետամնացությունը փաստորեն նպաստում էր իմպերիալիստական երկրներից նրա շարունակվող կախմանը։ Արևմտյան տերությունների նենգավոր մեքենայությունները միշտ էլ ուղղված են եղել երիտասարդ պետությունների անկախության և սուվերենության դեմ։ Այդ տեսակետից Սիրիան բոլորովին էլ բացառություն չի կազմել։ Վաշինգտոնի և Լոնդոնի կառավարող շրջանների ոգեշնչմամբ Սիրիայում հաճախակի կատարվող պետական հեղաշրջումները նպատակ ունեին հլու-հնազանդ պահելու այդ հարուստ երկիրը իմպերիալիստական մոնոպոլիաների ցանցերում։ Սակայն այդ բոլորին վերջ դրվեց 1966 թ. փետրվարին, երբ երկիրն անցավ ոչ կապիտալիստական զարգացման ուղուն։ Այժմ Սիրիան համարձակորեն իրականացնում է տնտեսական բազմաթիվ վերափոխումներ, որոնք կասկած չեն թողնում այն բանում, որ նա իսկապես մտադիր է անցնել դեպի սոցիալիզմ, գնալով ոչ կապիտալիստական զարգացման ուղիով։ Երկրի քաղաքական կյանքում վաղուց արդեն կարևոր դեր է խաղում թվով ոչ մեծ, սակայն բավականաչափ լավ կազմակերպված բանվոր դասակարգը, որի առաջավոր ջոկատը՝ Սիրիայի կոմունիստական կուսակցությունը միջազգային բանվորական շարժման փորձված ջոկատներից մեկն է։

Մեծ օժանդակություն և անշահախնդիր օգնություն են ցույց տալիս Սիրիային սոցիալիստական երկրները և առաջին հերթին՝ Սովետական Միությունը, որի վառ ապացույցը հանդիսացավ 1966 թ. ապրիլի 25-ին ստորագրված Սովետա-սիրիական համատեղ կոմյունիկեն։

Միջազգային իմպերիալիզմն ամեն կերպ ձգտում է թուլացնել սոցիալիս-



տական սիստեմի վիթխարի ազդեցությունը ազգային-ազատագրական շարժումների վրա, գաղութային լծից ազատագրված ժողովուրդներին հեռու պահել զարգացման սոցիալիստական ուղուց։ Այդ նպատակով նա դիմում է գործարքի ազգային բուրժուազիայի աջ թևի հետ, օգտագործում կաշառման զանազան ձևեր, տնտեսական «օգնությունը» և ուղղակի զինված միջամտությունը՝ Արևելքի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը ճնշելու նպատակով։ Սակայն քաղաքական ազատություն և անկախություն նվաճած ժողովուրդները սեփական փորձով ավելի ու ավելի են համոզվում, որ իրենց կյանքի քաղաքական և տնտեսական վերակառուցման համար հարկավոր են արմատական վերափոխումներ, որ զարգացման ոչ կապիտալիստական ուղին միակ ճիշտն է և որ միայն դա կարող է առաջադիմության հասցնել իրենց երկրները։ Նրանց գիտակցության վրա ավելի ու ավելի մեծ ազդեցություն են գործում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հաջողությունները և գիտական կոմունիզմի անմահ գաղափարները։

ԱԽԿԻՆ գաղութների գերակշռող մասում ազգային-ազատագրական, դեմոկրատական հեղափոխությունը դեռևս չի ավարտվել։ Նրա հետագա ծավալումը ենթադրում է այնպիսի կարևոր խնդիրների իրագործում, ինչպիսիք են՝ քաղաքական անկախության ամրապնդում և իմպերիալիստական շահագործման վերացում, ագրարային հարցի արմատական լուծում, կալվածատերերի պորտաբուծական դասակարգի վերացում, պետության ուղղակի մասնակցությամբ և նրա վերահսկողությամբ արդյունաբերական զարգացման ուժեղացում, օտարերկրյա և տեղական խոշոր կապիտալիստների սեփականության նկատմամբ պետական խիստ վերահսկողության սահմանում, հասարակական-քաղաքական կյանքի լայն դեմոկրատացում։ Օտարերկրյա մոնոպոլիաների դիրքերի վրա հարձակումը, նրանց գույքի ազգայնացումը և նրանց վտարումը երկրից ազգային-ազատագրական հեղափոխության ծավալման գործուն ձև է, որը տնտեսական նախադրյալներ է ստեղծում ոչ կապիտալիստական ուղիով զարգանալու համար։

Այնտեղ, որտեղ իշխանությունն իրագործում են հեղափոխական-դեմոկրատական կառավարությունները, ինչպես այդ ցույց է տալիս Ալժիրի, Բիրմայի, Արաբական Միացյալ Հանրապետության, Մալիի և մի շարք այլ երկրների փորձը, օտարերկրյա մոնոպոլիաների դիրքերի վերացումը հարվածում է նաև տեղական բուրժուազիային, առաջին հերթին՝ մոնոպոլիաների հետ կապված նրա վերնախավին, իսկ այնուհետև՝ նաև մյուս կապիտալիստներին։ Սակայն հեղափոխական-դեմոկրատական ղեկավարությունը չի կպչում մանր բուրժուազիայի և կառավարության նկատմամբ չեզոք դիրք բռնած միջին բուրժուազիայի ներկայացուցիչների շահերին։ Այդ երկրներում ազգայնացվում են տնտեսության ոչ միայն այն ճյուղերը կամ առանձին ձեռնարկությունները, որոնք մասնավոր կապիտալի տեսակետից քիչ շահութաբեր են, այլև բուրժուազիայի համար կապիտալի ներդրման այնպիսի առավել շահութաբեր ոլորտները, ինչպիսիք են բանկային և ապահովագրական գործը, արտաքին և մեծածախ առևտուրը և այլն։

Ասիայի և Աֆրիկայի երիտասարդ սուվերեն պետությունների զարգացման պատկերը շատ բազմազան է, բարդ և հակասական։ Կան երկրներ, որտեղ կապիտալիստական կացութաձևը ներկայացված է որպես օտարերկրյա կապի-

տալ: Որոշ երկրներում ստեղծվել է ազգային բուրժուազիա: Առանձին դեպքերում, երկրի քաղաքական կյանքում մեծ ազդեցություն ունի ազգային բուրժուազիայի ռեակցիոն թևը, որոշ դեպքերում էլ՝ ձախ թևը: Թույլ զարգացած երկրների իդեոլոգիական կյանքին բնորոշ են գաղափարական տարբեր ուղղությունների պայքարը և դրանց միահյուսումը: Լայնորեն տարածված են սոցիալիզմի վերաբերյալ մանր բուրժուական տարբեր պատրանքներ: Առաջ են քաշվում «աֆրիկյան», «հնդկական», «արաբական» սոցիալիզմի ստեղծման պլաններ:

Արաբական Միացյալ Հանրապետության կառավարության ձեռքում, օրինակ, գտնվում է արտադրության բոլոր միջոցների ավելի քան 80 տոկոսը, ազգայնացված են խոշոր և միջին արդյունաբերությունը, բոլոր բանկերը, ապահովագրական ընկերությունները, արտաքին առևտուրը, երկաթուղային, ծովային և ավիացիոն տրանսպորտը: Պետության ձեռքն են անցել նաև ամբողջ մեծածախ առևտուրը և ներքին մանրածախ առևտրի մոտ 35 տոկոսը: Լիովին ազգայնացված է օտարերկրյա մոնոպոլիաների սեփականությունը: Երկրում թողարկվող արդյունաբերական արտադրանքի ծավալը 1952—1963 թվականներին ավելի քան եռապատկվել է: Պաշտոնական տվյալների համաձայն, միայն 1963 թվականին այդ աճը կազմել է 15 տոկոս: Գվինեայում պետությունն իր ձեռքն է վերցրել արտաքին առևտուրը և ներքին առևտրի մի մասը, ֆինանսները, ապահովագրական գործը, էներգետիկան, ալմաստի և ոսկու արդյունահանումը, ջրամատակարարումը, տրանսպորտը, կապը և այլն:

Գյուղում անց են կացվում ագրարային ռեֆորմներ, ստեղծվում են պետական ու կոոպերատիվ տնտեսություններ: 1964 թվականին, Գանայում կային մոտ հազար առևտրական կոոպերատիվ և հարյուր պետական տնտեսություն, Գվինեայում՝ ավելի քան 5 հարյուր կոոպերատիվ և պետական տնտեսություն, Մալիում՝ 1965 թվականի կեսերին՝ ավելի քան 5,5 հազար կոոպերատիվ: Արաբական Միացյալ Հանրապետությունում որոշվել է պետական տնտեսություններ ստեղծելու համար օգտագործել այն ամբողջ հողատարածությունը, որ երկիրը կստանա Ասուանի ամբարտակի գործարկման շնորհիվ. այդ հողատարածությունը կկազմի օգտագործվող բոլոր հողերի մեկ երրորդը: Այդտեղ մտցվում է սոցիալական և աշխատանքային պրոգրեսիվ օրենսդրություն: Ամրապնդվում են աշխատավորների քաղաքական ազդեցության ուժեղացման, հասարակական կյանքին նրանց ակտիվ մասնակցության նախադրյալները:

Ինչպիսի՞ք են այն գործոնները, որոնք պայմանավորում են այդ երկրների անցումը դեպի սոցիալական առաջադիմության ուղին: Դա, առաջին հերթին, բուրժուազիայի անընդունակությունն է վճռականորեն գլխավորելու ազգային հակաիմպերիալիստական հեղափոխությունը: Գվինեայում, Մալիում և Գանայում բուրժուազիան այնքան թույլ էր, որ չկարողացավ իր ձեռքը վերցնել գաղութային ռեժիմների դեմ ուղղված պայքարի ղեկը և գլխավորել ազգային պետություններում ստեղծված իշխանությունը: Ի տարբերություն Ասիայի և Աֆրիկայի այլ երկրների, որտեղ պայքարը գլխավորում էին պրոլետարիատը կամ բուրժուազիան, այդտեղ պայքարը ղեկավարում էին հեղափոխական դեմոկրատները: Ալժիրում և առանձնապես Եգիպտոսում բուրժուազիան, թեև զգալիորեն ավելի ուժեղ էր, սակայն չկարողացավ ձեռք բերել նույնիսկ իսկական քաղաքական անկախություն, էլ չենք խոսում տնտեսական ինքնուրույնության մասին: Բիրմայում բուրժուական ղեկավարությունը ապահովեց ազգային սուվերենությունը, սակայն ի վիճակի չեղավ արմատախիլ անելու օտարերկրյա մոնոպոլիաների տնտեսական տիրապետությունը, վերացնելու հասարակության գաղութային հին կառուցվածքը:

Այնուհետև, լուրջ նշանակություն ուներ իմպերիալիզմի արտաքին ճնշումը չեզոքացնելը, որը մեծ ազդեցություն է ունենում հակաիմպերիալիստական պայքարի ամբողջ տրամաբանության վրա: Այսպես, օրինակ, Ալժիրում հեղափոխական ժողովուրդն ստիպված եղավ բռնի վտարելու ֆրանսիական գաղութարարներին, իսկ այնուհետև վիժեցնելու՝ երկրի կյանքը կազմալուծելու նրանց փորձերը: Իմպերիալիզմը ձգտում էր Եգիպտոսի անկախ կառավարությանը ծնկի բերել ինչպես ռազմա-քաղաքական մեթոդներով (սուեզյան ագրեսիան), այնպես էլ տնտեսական մեթոդներով (Ասուանի ամբարտակի շինարարության ֆինանսավորումից հրաժարվելը, 1956—57 թվականների բլոկադան): Բիրմայում օտարերկրյա մոնոպոլիաները, օգտագործելով կոմպրադորական գործակալությունը, ձգտում էին վիժեցնել երկրի ինքնուրույն տնտեսական զարգացումը: Իմպերիալիստները Գվինեայի նկատմամբ կիրառեցին տնտեսական ու քաղաքական ճնշման կոպիտ մեթոդներ, որպեսզի նրան «պատժեն» ֆրանսիական համագործակցությանը մասնակցելուց հրաժարվելու համար: Իմպերիալիզմի այդ բոլոր գործողությունների պատասխանը եղավ քաղաքական ղեկավարության հետագա զարգացումը դեպի ձախ:

Միջազգային ռեակցիան ձգտում է օգտագործել նաև ոչ կապիտալիստական զարգացման ուղին բռնած առանձին երկրների ներքին դրությունը, տարբեր ուժերի միջև պայքարը, նյութական լուրջ դժվարությունները, ինչպես նաև պետական կառավարման փորձի պակասը ազատագրված ժողովուրդների մոտ:

●



ՅՆ երկրներում, որոնց ժողովուրդները ձեռնամուխ են եղել ինքնուրույն պատմական ստեղծագործության, անտարակույս, չեն կարող չառաջանալ կենսականորեն կարևոր խնդիրների լուծման բազմազան ձևեր ու մեթոդներ: Հաշվի առնելով այդ բազմազանությունը, մարքսիստական տեսական միտքն առաջ է քաշել ազգի բոլոր առողջ ուժերի միավորման նոր ձև՝ ազգային դեմոկրատիայի պետություն: Դա անշուշտ մասսաներին կհամոզի, որ սոցիալական իրավահավասարության հիմունքով ընդհանուր դեմոկրատական պահանջների և հասարակության վերակառուցման միջև ոչ միայն անանցանելի սահման չկա, այլ, ընդհակառակը, անմիջական կապ գոյություն ունի:

Ազգային դեմոկրատիայի պետությունն իր ծագումով և հիմնական բնույթով հանդես է գալիս որպես ընդհանուր համազգային ճակատի օրգան, իսկ իր նշանակությամբ՝ որպես ընդհանուր դեմոկրատական խնդիրների լուծման, ազգային-դեմոկրատական հեղափոխության ավարտման, երկիրը զարգացման սոցիալիստական ուղու վրա աստիճանաբար փոխադրելու համար պայմանների ստեղծման գործիք: Արդի դարաշրջանում ազգային դեմոկրատիայի պետության ստեղծումը ազգային-ազատագրական հեղափոխության տրամաբանական հետևանքն է: Լինելով խոր և մասսայական հեղափոխություն, այն արդեն չի կարող սահմանափակվել ազգային ազատագրական և բուրժուա-դեմոկրատական հեղափոխության խնդիրների լուծմամբ: Ազգային ինքնորոշումն ինքնին դեռևս չի կարող ապահովել ագրարային հարցի արմատական ու դեմոկրատական

լուծումը, տնտեսական ու սոցիալական խոր հետամնացության վերացումը։ Ի դեպ, արդի ազգային-ազատագրական հեղափոխությունների հիմնական խնդիրներից մեկն էլ հենց այդ նպատակների իրագործումն է և ոչ թե միայն օտարերկրյա քաղաքական ճնշման վերացումը։

Ազգային ազատագրական հեղափոխությունների առջև ծառացած հարցերը կարող են հաջողությամբ լուծվել, եթե իշխանությունը հետևողականորեն իրենց ձեռքը վերցնեն հակաիմպերիալիստական ուժերը, ժողովրդական լայն մասսաների ներկայացուցիչները։ Հետևաբար, ազգային դեմոկրատիայի պետության ստեղծումը ենթադրում է դասակարգային ուժերի քաղաքական վերախմբավորում։ Հայրենասիրական ուժերի միասնական ճակատը, որի մեջ մտնում է նաև ազգային բուրժուազիայի հակաիմպերիալիստական մասը, գլխավորում են բանվոր դասակարգը, գյուղացիությունը և դեմոկրատական ինտելիգենցիան։

Մի շարք երկրների՝ ոչ կապիտալիստական զարգացման ուղուն անցնելը հաստատվել է սոցիալիզմին անցնելու ձևերի բազմազանության վերաբերյալ դրույթով, որն առաջ է քաշվել ՍՄԿԿ XX համագումարում, կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1957 և 1960 թվականների միջազգային խորհրդակցություններում։ Առանձնապես կարևոր է այն, որ երիտասարդ պետությունների կոմունիստական և ազգային-դեմոկրատական կուսակցություններն ընդունել են այդ դրույթը և մտցրել սոցիալիզմի համար պայքարի իրենց ծրագրերի մեջ։

Անցումը դեպի ոչ կապիտալիստական զարգացումը տարբեր երկրներում տեղի է ունենում տարբեր ձևով։ Այն զուրկ չէ քաղաքական ու կազմակերպական դժվարություններից և թուլություններից։ Այդ հանգամանքը ձգտում են օգտագործել ոչ կապիտալիստական զարգացման գաղափարի հակառակորդները։ Նրանք գիտակցաբար անտեսում են այն հանրածանոթ փաստը, որ հասարակության կազմակերպման նոր ձևին անցնելը, բնականաբար, կուղեկցվի տնտեսական կյանքում ժամանակավոր բարդություններով։ Տվյալ ժամանակաշրջանում առավել մեծ դժվարություններ է հարուցում նոր պետություն ստեղծելու, նրա սոցիալ-դասակարգային կառուցվածքը ձևավորելու, պետական ապարատի գործունեությունը հնարավորին չափ ոչ կապիտալիստական զարգացման նպատակներին համապատասխանեցնելու, ժողովրդական մասսաների հետ նրա կապերն ամրապնդելու, պետական կառավարման ապարատի աշխատանքին ժողովրդական մասսաների մասնակցությունն ապահովելու պրոբլեմը։ Սոցիալիստական նպատակներ հռչակած մի շարք երկրների պետությունների սոցիալական բնույթը, պետական ապարատի դասակարգային կառուցվածքը երբեմն զգալիորեն տարբերվում են նրանց հռչակած դրույթներից։ Տվյալ հարցում դեռևս մեծ տարբերություն կա խոսքի ու գործի միջև։

Մի շարք երկրներում ազգային դեմոկրատները հանդես են գալիս որպես հասարակական ու պետական կառուցվածքի դեմոկրատական ձևերի կողմնակիցներ։ Վերլուծելով նրանց ստեղծած պետական ապարատի կառուցվածքը, կարելի է հանգել այն համոզման, որ այդ ապարատը հաճախ ռազմական կամ կիսառազմական բնույթ ունի՝ հատկապես ազգային-դեմոկրատական պետությունների զարգացման առաջին ժամանակաշրջանում։ Նշված ժամանակամիջոցում ազգային-դեմոկրատական ռեժիմները հաճախ իրենց վրա զգում են անձնական իշխանության ազդեցությունը։ Բազմաթիվ իրադարձություններ



ցույց են տալիս, որ ազգային-դեմոկրատական ռեժիմների ոչ միայն վարչական, այլև բանակային ապարատի մեջ խցկված են լինում այնպիսի մարդիկ, որոնց քաղաքական դեմքը առնվազն կասկածելի է, երբեմն նրանք պարզապես թշնամական դիրք են բռնում ազգային-դեմոկրատական նպատակների հանդեպ։ Նման գործիչները, սովորաբար, մեծ վտանգ են ներկայացնում ազգային-դեմոկրատական հեղափոխությունների, նրա հակաիմպերիալիստական, դեմոկրատական և սոցիալական նպատակների ու վերափոխումների համար։ Նրանք վտանգ են ներկայացնում նաև հեղափոխության ղեկավարության, նրա լիդերների համար, պետական կարգի կայունության համար։ Այդ կապակցությամբ առաջանում է ազգային-դեմոկրատական ռեժիմի ժառանգություն մնացած պետական մեքենան փոխելու կամ վճռականորեն վերակառուցելու հարցը։

Շատ երկրների փորձը ցույց է տալիս, որ դեպի սոցիալիզմ ոչ կապիտալիստական ուղիով երկրի հետագա զարգացումը, սոցիալիզմի ծավալուն կառուցումը կարելի է հաջողությամբ իրագործել միայն պետության դասակարգային բնույթի վճռական փոփոխման, նրա աշխատանքի մեթոդների կատարելագործման և այն աշխատավորների պետություն դարձնելու միջոցով։

Մի շարք երկրներում արդեն իրագործված սոցիալական վերափոխումներն ապահովել են ոչ կապիտալիստական զարգացման սկզբնական հաջողությունը, բայց և հանդիպել են ռեակցիայի լուրջ դիմադրությանը։ Ներքին ու արտաքին ռեակցիայի դիմադրությունը հաղթահարելու անհրաժեշտությունը պահանջում է հետագա նոր քայլեր կատարել պետության դեմոկրատականացման, աշխատավոր մասսաներին մոբիլիզացնելու ուղղությամբ։ Դա առաջին հերթին պահանջում է ամրապնդել, իսկ մի շարք երկրներում ստեղծել ավանգարդային ժողովրդական քաղաքական այնպիսի կուսակցություններ, որոնք կարողանան ավելի ու ավելի խոր կերպով հաղորդակցվել գիտական սոցիալիզմի տեսությանն ու պրակտիկային և այդ հիման վրա ղեկավարել պետությունը, հենվելով աշխատավոր լայն մասսաների վրա։ Այդպիսի կուսակցությունների ստեղծման կամ մինչ այդ գոյություն ունեցող մասսայական ազգային-դեմոկրատական կուսակցությունների վերափոխման համար ներկայումս ջանքեր են գործադրվում Բիրմայում, Արաբական Միացյալ Հանրապետությունում, Գվինեայում և այլ երկրներում։

Զարգացման ոչ կապիտալիստական ուղին դեպի սոցիալիզմ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների զարգացման ուղին է։ Ներկայումս սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզոր աջակցության շնորհիվ, բանվոր դասակարգի, ժողովրդական մասսաների վճռական պայքարի, համադեմոկրատական շարժման վերելքի պայմաններում զարգացման ոչ կապիտալիստական ուղին միանգամայն հնարավոր է։ Բազմաթիվ երկրներում այժմ իրականացվում են ագրարային ռեֆորմներ, ազգայնացվում և պետական սեփականություն են դառնում օտարերկրյա մոնոպոլիաների ու ազգային խոշոր բուրժուազիայի ձեռնարկությունները, գնալով ավելի ու ավելի է ամրապնդվում պետական սեկտորը արդյունաբերության մեջ և կոոպերատիվ սեկտորը՝ գյուղատնտեսության մեջ։

Միջազգային ասպարեզում երիտասարդ ազգային պետությունները հակաիմպերիալիստական դիրք են գրավում, ակտիվորեն պայքարում են գաղութակալությունն իսպառ վերացնելու, ընդհանուր խաղաղության և զինաթափման համար։



Ի. ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ



ՄԿԿ ծրագրում գիտականորեն հիմնավորված են սոցիալիստական գյուղատնտեսության առաջընթացի և գյուղում կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացման հեռանկարային խնդիրները։ Գյուղի հասարակական հարաբերությունները սոցիալիստական հասարակական հարաբերությունների անբաժանելի մասն են։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և հասարակական արտադրության զարգացմանը զուգընթաց կատարելագործվում են նաև կոմունիստական հասարակական հարաբերությունները։ Գյուղում հասարակական հարաբերությունների զարգացման գործում մեծ դեր ունեն տեղական սովետները և առանձնապես՝ գյուղսովետները։

Սովետները լինելով պետական իշխանության օրգաններ, միաժամանակ ժողովրդի ամենամասսայական հասարակական կազմակերպություններն են։

Տեղական սովետների գործունեության հաջողությունը պայմանավորված է նրանց աշխատանքին ժողովրդական լայն մասսաների մասնակցությամբ։ Ներկայումս աշխատավորների դեպուտատների սովետներում կան ժողովրդի ավելի քան երկու միլիոն ընտրյալ, որոնք իրենց գործունեության ընթացքում հենվում են ավելի քան 23 միլիոն ակտիվիստներ միավորող հասարակական ինքնագործունեության օրգանների և բնակչության ամենալայն խավերի վրա։

Տեղական սովետներում հասարակական հիմունքների արմատավորումը լավագույն միջոց ու մեթոդ է ժողովրդական մասսաներին կոմունիզմի կառուցման ակտիվ մասնակիցը դարձնելու գործում։

Գյուղատնտեսությունը եղել ու մնում է բնակչության սննդամթերքի և արդյունաբերության հումքի արտադրության աղբյուր։ Ուստի, կոմունիզմի կառուցման պրոբլեմներն անբաժանելի են ժողովրդական տնտեսության այդ կարևոր բնագավառի վերելքի խնդիրներից։ Գյուղատնտեսության հետագա առաջընթացի համար վճռական նշանակություն ունի տեխնիկական հզոր բազայի ստեղծումը, որը և որոշիչ դեր է խաղում գյուղում հասարակական հարաբերությունների զարգացման ու կատարելագործման ասպարեզում։ Սակայն, միայն նյութատեխնիկական բազան դեռևս բավարար չէ վերոհիշյալ խնդրի



լուծման համար։ Կուսակցության XXII, XXIII համագումարներն ընդգծեցին, որ գյուղում հասարակական հարաբերությունների զարգացման համար, տեխնիկական բազայի հետ մեկտեղ, անհրաժեշտ է է՛լ ավելի բարձրացնել տեղական կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների աշխատանքի մակարդակը, պետական ու հասարակական ակտիվ գործունեության ներգրավել ժողովրդական լայն մասսաներին։

Դեռևս սովետական իշխանության արշալույսին, Վ. Ի. Լենինն ասում էր. «Ընկեր աշխատավորներ, հիշեցե՛ք, որ այժմ Դուք ինքներդ եք կառավարում պետությունը։ Ոչ ոք ձեզ չի օգնի, եթե դուք ինքներդ չմիանաք և պետության բոլոր գործերը ձեր ձեռքը չվերցնեք։ Ձեր սովետներն այսուհետև պետական իշխանության օրգաններ են, լիազոր, վճռող օրգաններ» (Երկեր, հ. 26, էջ 359—360)։

Ժողովրդական ամենալայն մասսաներին կոմունիզմի շինարարության ակտիվ մասնակից դարձնելու նպատակով, կոմունիստական կուսակցությունն մշտապես կատարելագործում է կուսակցական ու սովետական օրգանների ղեկավարման ձևերն ու մեթոդները։ Ելնելով կուսակցության XXII համագումարի որոշումներից և ՍՄԿԿ ծրագրի պահանջներից, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1964 թ.) պլենումը վճռական միջոցներ ձեռնարկեց՝ ՍՍՀՄ էկոնոմիկայի բուռն զարգացման և կոմունիստական շինարարության արագացման համար։ Պլենումն արմատական փոփոխություններ մտցրեց կուսակցական ու սովետական օրգանների աշխատանքի կազմակերպման ձևերի մեջ։ ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թ.) և հաջորդ պլենումների որոշումներով ո՛չ միայն վերջ տրվեց ղեկավարման գործում եղած աղաղակող թերություններին, այլև բարենպաստ պայմաններ ստեղծվեցին տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում աշխատավորների դեպուտատների տեղական սովետների դերի բարձրացման և պետական կառավարմանը՝ աշխատավորների ավելի լայն մասսաներ ներգրավելու ուղղությամբ։ Սովետները լայն հնարավորություններ ստացան ժամանակին լուծելու ինչպես տնտեսական, այնպես էլ աշխատավորներին հուզող կուլտուր-կենցաղային հարցեր։

Աշխատավորների դեպուտատների գյուղական սովետներն ամենալայն ներկայացուցչական կազմակերպություններն են գյուղում, որոնք պատասխանատու են՝ սովետական օրինականության անշեղ կենսագործման, գյուղատնտեսության զարգացման, մարդկանց աշխատանքի տեղավորման, ժողովրդական կրթության, առողջապահության, կուլտուր-լուսավորական, առևտրի, կենցաղային օբյեկտների, բնակավայրերի բարեկարգման, շինարարության և տրանսպորտի աշխատանքների, հասարակական կարգի պահպանման, հասարակական հարաբերությունների զարգացման, գյուղերի պլանավորման ու վերակառուցման և շատ ու շատ այլ հարցերի լուծման համար։ Վերոհիշյալ բազմաթիվ ու բազմապիսի խնդիրների կենսագործման համար թվում էր, թե պահանջվում է հաստիքային աշխատողների մեծ կոլեկտիվ։ Մինչդեռ, ՍՄԿԿ ծրագրում ասված է, որ «Հասարակական կազմակերպությունների ինքնագործունեությունը զարգացնելու նպատակով կուսակցությունը անհրաժեշտ է համարում է՛լ ավելի կրճատել... վճարովի ապարատը վարից վեր» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 130)։

Գյուղատնտեսության ղեկավարումը վերակառուցելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներից հետո վերակառուցվեցին նաև գյուղական սովետների աշ-

խատանքները։ Գյուղական սովետների անցած տարիների աշխատանքի փորձը
ցույց տվեց, որ այստեղ ևս հնարավոր է շատ բան անել առանց հաստիքային
աշխատողներ զբաղեցնելու։ Այդ տեսակետից ուսանելի է Վորոնեժի մարզի
Ռոսսոշանսկի շրջանի Մարաևսկի գյուղական սովետի փորձը, որի տերիտո-
րիայում մի քանի տարի առաջ կային 14 բնակավայր և 6 կոլտնտեսություն։
Հետագայում դրանք միավորվեցին Մարաևսկի ու Իլյիչի կոչով խոշորացված
երկու կոլտնտեսությունում։ Եվ ահա, երկու խոշոր կոլտնտեսություն, ընդար-
ձակ տերիտորիա, մեծ թվով բնակչություն ունեցող Մարաևսկի գյուղական սո-
վետը, սկսած 1962 թվականից, գործում է հասարակական հիմունքներով։

Մարաևսկի գյուղական սովետի գործկոմի հաստիքային նախագահ Նա-
տալիա Բաբուրկինան, որը մասնագիտությամբ գյուղատնտես է, 1962 թվա-
կանի փետրվարին դիմեց գյուղական սովետի սեսիային, խնդրելով իրեն ազա-
տել նախագահի պարտականություններից, կոլտնտեսությունում մասնագիտու-
թյամբ աշխատելու համար։ Նրա դիմումը հարգվեց։ Հենց այդտեղ էլ որոշում
ընդունվեց ընտրել հասարակական կարգով աշխատող գյուղական սովետի
գործկոմի նախագահ երկու տեղակալներով։ Այդպես էլ եղավ։ Գյուղական սո-
վետի սեսիան միաժամանակ ընդլայնեց գործկոմի կազմը, այն հասցնելով 9
դեպուտատի։ Ընդլայնվեց նաև մշտական հանձնաժողովների կազմը։

Հասարակական հիմունքներով գործող այս գյուղսովետում կա միայն
երկու հաստիքային աշխատող (քարտուղար և հաշվետար-գանձապահ)։ Այս-
տեղ գյուղսովետի գործկոմի հասարակական հիմունքներով նախագահ է
ընտրվել միջնակարգ դպրոցի ուսումնական մասի վարիչ, կոմունիստ՝ Սեմյոն
Պավլովիչ Պրոսյանիկը։

Գյուղսովետի մշտական հանձնաժողովների օրինակելի գործունեությունը
ցույց տալու համար բերենք միայն մեկ օրինակ։ Շինարարական հանձնաժո-
ղովը սիստեմատիկաբար հսկում և օգնում է գյուղերի պլանավորման, ջրատար
առուների անցկացման, բնակելի շենքերի կառուցման, փողոցների ձևավոր-
ման, հասարակական բաղնիքների, կուլտուր-կենցաղային օբյեկտների շինա-
րարության, ռադիոֆիկացման և էլեկտրիֆիկացման ցանցի ընդլայնման և շատ
այլ աշխատանքների ժամանակին կատարմանը։ Այդպես են գործում նաև մյուս
հանձնաժողովները։ Գյուղական սովետի մշտական հանձնաժողովներից բացի,
գործում են նաև ժողովրդական վերահսկողության հանձնաժողով, ընկերական
դատարան, միլիցիային օժանդակող արտահաստիքային լիազոր, ժողովրդա-
կան դրուժիննիկների խումբ։ Սրանք բոլորն էլ ընտրվել են գյուղի հասարակու-
թյան ընդհանուր ժողովում։ Այնպես է ստացվել, որ փաստորեն բոլոր գյուղա-
ցիներն էլ հասարակական կարգով մասնակցում են այդ աշխատանքներին։ Դա
կոմունիստական կուսակցության՝ հասարակական ծառայությունների ընդլայն-
ման վերաբերյալ պահանջի պրակտիկ կենսագործման լավագույն օրինակ է։

Մեր հանրապետությունում ևս մի շարք գյուղական սովետներ ու կոլտըն-
տեսություններ միավորվել և խոշորացվել են։ Սա, անշուշտ, լավ է։ Բայց ղե-
կավարման գործում որոշ դժվարություններ են առաջացել, որոնց հաղթահար-
ման ամենալավ միջոցը հասարակական ծառայությունների ընդլայնումն է։
Բոլոր գյուղերում կան ուսուցիչներ, գյուղատնտեսության մասնագետներ,
բժիշկներ, արտադրության առաջավորներ, պահեստի հրամանատարներ, կեն-
սաթոշակառուներ և ուրիշներ, որոնցից շատերը կամավոր կերպով հասարա-
կական հիմունքներով կաշխատեն որպես գյուղական սովետների գործկոմների



նախագահներ։ Մի քանի գյուղեր սպասարկող գյուղական սովետներին ենթա-
կա բնակավայրերում հնարավոր է և պետք է ստեղծել հասարակական հիմունք-
ներով աշխատող գյուղական (ավանային) սովետներ։

Կուսակցության XXII համագումարից հետո զգալիորեն ընդլայնվել են նաև
շրջանային, գյուղական ու ավանային սովետների իրավունքները։ ՍՄԿԿ
Կենտկոմի նոյեմբերյան (1964 թ.) պլենումի որոշմամբ, կուսակցական օր-
գանների հետ, տերիտորիալ-շրջանային սկզբունքով վերակառուցվեցին
նաև սովետական օրգանները։ Այդ կարևոր որոշման կենսագործման շնորհիվ
Հայաստանի վարչա-տերիտորիալ կազմում տեղի ունեցան զգալի փոփոխու-
թյուններ։ Վերակառուցումը կարճ ժամանակամիջոցում տվեց դրական ար-
դյունք։ Սովետների աշխատանքներում առաջին պլանի վրա դրվեց հասարա-
կական հիմունքներով լայն ակտիվի օգտագործումը։

Հայաստանի կոմունիստական կուսակցության XXIII և XXIV համագու-
մարները և ՀԿԿ Կենտկոմի 1964 թվականի նոյեմբերյան պլենումը մեծ ուշա-
դրություն նվիրեցին պետական ապարատի, աշխատավորների դեպուտատների
տեղական սովետների գործունեության հետագա բարելավմանը։

Սովետների աշխատանքի հաջողությունը պայմանավորված է կադրերով։
Կոմունիստական կուսակցությունը մշտապես հոգ է տանում, որ հասարակա-
կան կազմակերպություններում ու ղեկավար պաշտոններում սիստեմատիկա-
բար առաջադրվեն նոր, երիտասարդ, թարմ ու կարող ուժեր։ Յուրաքանչյուր
ընտրության ժամանակ սովետների կազմը աստիճանաբար թարմացվում է,
հասարակության նորանոր խմբեր են ներգրավվում սովետներում։ 1965 թվա-
կանի ընտրություններին Հայաստանում տեղական սովետների դեպուտատների
57,3 տոկոսը (այսինքն՝ 14258 հոգի) ընտրվեց առաջին անգամ։ Ընդարձակվեց
նաև սովետների կազմը։ Քաղաքային, ավանային, շրջանային ու գյուղական
սովետներում ընտրվեցին 24891 դեպուտատ, որոնցից 13094-ը (52,6 տոկոսը)
անկուսակցականներ են։

Սովետների ընտրությունների միջոցով, կոմունիստական կուսակցությունը
լայն հնարավորություններ է ստեղծել, որպեսզի պետության կառավարման
դպրոցն անցնեն միլիոնավոր նոր քաղաքացիներ։ Դրանով իսկ բացառվել է
պետական կառավարման մեջ առանձին աշխատողների կողմից իշխանության
չարաշահման հնարավորությունը։ «...Անհրաժեշտ է գործն այնպես տանել,—
ասված է կուսակցության ծրագրում,— որ պետական վճարովի ապարատը
կրճատվի, որ կառավարման հմտություններին տիրապետեն ավելի ու ավելի
լայն մասսաներ, և այդ ապարատում աշխատանքը հետագայում դադարի հա-
տուկ պրոֆեսիա լինելուց (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 125—126)։

Սովետների աշխատանքում մեծ դեր են կատարում կանայք։ ՍՍՀՄ Գերա-
գույն սովետի 1443 դեպուտատների 27 տոկոսը կանայք են։ Հայաստանի տե-
ղական սովետներում կան 10033 կին դեպուտատներ։

Զուգակցելով պետական և հասարակական կազմակերպության գծերը,
սովետներն ավելի ու ավելի մեծ չափով են հանդես գալիս որպես հասարա-
կական կազմակերպություններ՝ նրանց գործունեությանը մասսաների լայն ու
անմիջական մասնակցությամբ։

Զարգացման ներկա էտապում սովետների առջև ծառացած են բազմաթիվ
ու բարդ խնդիրներ։ Աշխատանքները վերակառուցելով նոր պահանջների ոգով,
հանրապետության շատ գյուղական սովետներ ու նրանց գործադիր կոմի-

տեններ ավելի մոտիկից ու սիստեմատիկաբար են զբաղվում բնակչության կուլտուր-կենցաղային ու բնակարանային սպասարկման, առողջապահության, բնակավայրերի բարեկարգման և բազմաթիվ այլ հարցերով։

Գյուղական սովետների ուշադրության կենտրոնում են՝ սոցիալիստական համակեցության կանոնների պահպանումը, քաղաքացիների դիմում-բողոքներին ընթացք տալը, հակահասարակական երևույթների դեմ պայքարի կազմակերպումը։ Գյուղական մեծ թվով սովետներ ու նրանց համապատասխան հանձնաժողովներ խրախուսելի աշխատանք են կատարում կոմունիստական կենցաղի արմատավորման և սովետական մարդկանց կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի ոգով դաստիարակելու ուղղությամբ։

Վերոհիշյալ խնդիրների լուծման գործում դրական փորձ են կուտակել հատկապես Իջևանի և Նոյեմբերյանի շրջանների մի շարք գյուղական սովետներ։ Ուսանելի է Նոյեմբերյանի շրջանի Կողբի գյուղական սովետի գործունեությունը, ուր լայնորեն են արմատավորված հասարակական հիմունքները։

Կողբի կոլտնտեսության բազայի վրա 1964 թվականի գարնանը կազմակերպվեց սովխոզ։ Գյուղական սովետն ու նրա գործադիր կոմիտեն հնարավոր ամեն ինչ արեցին սովխոզի բանվոր-ծառայողների աշխատանքն ու հանգիստը խելացի կազմակերպելու, կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու համար։ Գյուղական սովետի նախաձեռնությամբ և գյուղի ազգաբնակչության ակտիվ մասնակցությամբ դպրոցի շենքի համար կառուցվել են օժանդակ հարմարություններ, բացվել են նոր փողոցներ, կառուցվում են մանկապարտեզի, բաղնիքի ու ճաշարանի շենքեր և կենցաղ սպասարկման տաղավար։ Գյուղում կանոնավոր գործում է չորս գրադարան, որոնցից մեկը՝ հասարական հիմունքներով։ Լավ են աշխատում ակումբի դասախոսական խմբի անդամները, ինքնագործ խմբակներն ու կուլտուրայի համալսարանը։

Գյուղական սովետի դեպուտատներից շատերը ո՛չ միայն արտադրության առաջավորներ են, այլև հասարակական ակտիվիստներ ու կազմակերպիչներ։ Սրանք ակտիվ գործունեության են ներգրավում լայն մասսաներին, սիստեմատիկաբար զբաղվում երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերով։

Հանրապետության գյուղական և ավանային սովետների միջև 1965 թվականին ծավալված սոցիալիստական մրցության մեջ հաղթանակ տարած Այգեձորի միացյալ գյուղական սովետը նվաճեց Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և Հայաստանի արհեստակցական միությունների խորհրդի փոխանցիկ կարմիր դրոշը և առաջին կարգի մրցանակը՝ 700 ռուբլի։ Դա գյուղական սովետի, նրա հանձնաժողովների և բոլոր դեպուտատների լավ աշխատանքի արժանի գնահատումն է։

Մրցության մեջ երկրորդ տեղը գրաված՝ Նոյեմբերյանի շրջանի Ծավարշավանի, Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատի, Էջմիածնի շրջանի Շահումյանի և Բասարգեչարի շրջանի Բասարգեչարի գյուղական սովետներին տրվեց Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի երկրորդ կարգի մրցանակները՝ յուրաքանչյուրին 500 ռուբլի դրամական պարգև։ Երրորդ կարգի մրցանակները՝ յուրաքանչյուրին 300 ռուբլի դրամական պարգևով, տրվեցին Հոռոմի (Արթիկի շրջան), Շվանիձորի (Մեղրու շրջան), Մովսեսի (Շամշադինի շրջան), Մադինայի (Մարտունու շրջան) գյուղական և Կալինինոյի ու Թումանյանի



ավանային սովետներին։ Միաժամանակ նշվել է նաև մի շարք այլ գյուղական սովետների դրական աշխատանքը։

Վերը նշված սովետների մի խումբ դեպուտատներ պարգևատրվել են Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի պատվոգրերով։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության 8-րդ հնգամյա պլանի կենսագործման
առաջին տարվա գարնանը նոր նախաձեռնությամբ հանդես եկավ Հրազդանի
քաղաքային սովետը։ Ջեռնամուխ լինելով ՍՄԿԿ XXIII համագումարի որո-
շումների կենսագործմանը և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափո-
խության 50-ամյակն արժանավայել դիմավորելու, Հրազդանի աշխատավորնե-
րը և քաղաքային սովետը կոնկրետ պարտավորություններ վերցրեցին և կոչ
արեցին բոլորին հետևելու իրենց օրինակին։ Հրազդանցիները, շատ այլ պար-
տավորությունների հետ միաժամանակ, խոստացել են՝ հակահասարակական
երևույթներին խպառ վերջ տալու համար ակտիվ աշխատանքի ներգրավել բո-
լոր թաղային կոմիտեներին, ընկերական դատարաններին և ամբողջ բնակչու-
թյանը։ Հրազդանցիները պարտավորվել են քաղաքը դարձնել ավելի բարեկարգ,
կանաչապատ ու գեղեցիկ, ապահովել սոցիալիստական համակեցության կա-
նոնների պահպանումը, առանձնահատուկ ուշադրություն նվիրել աշխատավո-
րության կոմունիստական դաստիարակությանը, ժամանակին ու բարձր որա-
կով շահագործման հանձնել նորակառույց բնակելի շենքերը, դպրոցները, ա-
ռողջապահության ու կուլտուրայի օջախները։
Հասարակական հիմունքները լայնորեն արմատավորվում են նաև աշխա-
տավորների դեպուտատների շրջանային սովետներում։ Հանրապետության շատ
շրջսովետներում ստեղծվել են հասարակական հիմունքներով ենթաբաժիններ։
Այժմ Հայաստանի քաղաքային և շրջանային սովետներում գործում են 288
արտահաստիքային բաժին և 5430 հասարակական տեսուչ-հրահանգիչներ։
Այս կապակցությամբ չի կարելի չնշել մի շարք լուրջ թերություններ։
Անիմաստ է, օրինակ, հաստիքային բաժիններին կրկնող հասարակական հի-
մունքներով նույնանման բաժինների ստեղծումը՝ առանձին շրջանային սո-
վետներում։ Դրանք ո՛չ միայն կրկնում են հաստիքային բաժիններին, այլ, ըստ
էության, դառնում են վերջիններիս կցորդը։
Շրջսովետների գործկոմների մեծ մասը ճիշտ չի վարվում, երբ արտա-
հաստիքային հրահանգիչներ ու տեսուչներ է հաստատում հիմնականում շրջ-
կենտրոնի բնակիչներից։ Ներկայումս մեր բոլոր գյուղերում կան կուսակցա-
կան-սովետական աշխատանքի փորձ ունեցող այնպիսի ընկերներ, որոնք հա-
ջողությամբ կարող են կատարել շրջանային սովետների լիազորների ու հրա-
հանգիչների պարտականությունները։ Նման ընտրությունը մեծ չափով կօգնի
գյուղի աշխատավորներին, որպեսզի նրանք գործից չկտրվեն և ամեն մի հա-
սարակ հարցով վերադաս կազմակերպություններին դիմելու համար շրջկենտ-
րոն չգնան։
Ժողովրդական մասսաների հետ սովետների կապն ամրապնդելու, նրանց
հասարակական ակտիվ աշխատանքի ներգրավելու գործում մեծ դեր են խա-
ղում աշխատավորների դեպուտատների սովետների մշտական հանձնաժո-
ղովները։ Կոմունիստական կուսակցության ծրագրում նշված է. «Հետզհետե տե-
ղական սովետների մշտական հանձնաժողովների լուծմանը պետք է տրվեն գոր-
ծադիր օրգանների վարչությունների և բաժինների իրավասության ենթակա
ավելի ու ավելի մեծ թվով հարցեր» (ՍՄԿԿ Ծրագիրը, էջ 124)։ Հայաստանի

տեններ ավելի մոտիկից ու սիստեմատիկաբար են զբաղվում բնակչության կուլտուր-կենցաղային ու բնակարանային սպասարկման, առողջապահության, բնակավայրերի բարեկարգման և բազմաթիվ այլ հարցերով։

Գյուղական սովետների ուշադրության կենտրոնում են՝ սոցիալիստական համակեցության կանոնների պահպանումը, քաղաքացիների դիմում-բողոքներին ընթացք տալը, հակահասարակական երևույթների դեմ պայքարի կազմակերպումը։ Գյուղական մեծ թվով սովետներ ու նրանց համապատասխան հանձնաժողովներ խրախուսելի աշխատանք են կատարում կոմունիստական կենցաղի արմատավորման և սովետական մարդկանց կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի ոգով դաստիարակելու ուղղությամբ։

Վերոհիշյալ խնդիրների լուծման գործում դրական փորձ են կուտակել հատկապես Իջևանի և Նոյեմբերյանի շրջանների մի շարք գյուղական սովետներ։ Ուսանելի է Նոյեմբերյանի շրջանի Կողբի գյուղական սովետի գործունեությունը, ուր լայնորեն են արմատավորված հասարակական հիմունքները։

Կողբի կոլտնտեսության բազայի վրա 1964 թվականի գարնանը կազմակերպվեց սովխոզ։ Գյուղական սովետն ու նրա գործադիր կոմիտեն հնարավոր ամեն ինչ արեցին սովխոզի բանվոր-ծառայողների աշխատանքն ու հանգիստը խելացի կազմակերպելու, կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու համար։ Գյուղական սովետի նախաձեռնությամբ և գյուղի ազգաբնակչության ակտիվ մասնակցությամբ դպրոցի շենքի համար կառուցվել են օժանդակ հարմարություններ, բացվել են նոր փողոցներ, կառուցվում են մանկապարտեզի, բաղնիքի ու ճաշարանի շենքեր և կենցաղ սպասարկման տաղավար։ Գյուղում կանոնավոր գործում է չորս գրադարան, որոնցից մեկը՝ հասարակական հիմունքներով։ Լավ են աշխատում ակումբի դասախոսական խմբի անդամները, ինքնագործ խմբակներն ու կուլտուրայի համալսարանը։

Գյուղական սովետի դեպուտատներից շատերը ո՛չ միայն արտադրության առաջավորներ են, այլև հասարակական ակտիվիստներ ու կազմակերպիչներ։ Սրանք ակտիվ գործունեության են ներգրավում լայն մասսաներին, սիստեմատիկաբար զբաղվում երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերով։

Հանրապետության գյուղական և ավանային սովետների միջև 1965 թվականին ծավալված սոցիալիստական մրցության մեջ հաղթանակ տարած Այգեձորի միացյալ գյուղական սովետը նվաճեց Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և Հայաստանի արհեստակցական միությունների խորհրդի փոխանցիկ կարմիր դրոշը և առաջին կարգի մրցանակը՝ 700 ռուբլի։ Դա գյուղական սովետի, նրա հանձնաժողովների և բոլոր դեպուտատների լավ աշխատանքի արժանի գնահատումն է։

Մրցության մեջ երկրորդ տեղը գրաված՝ Նոյեմբերյանի շրջանի Ծավարշավանի, Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատի, Էջմիածնի շրջանի Շահումյանի և Բասարգեչարի շրջանի Բասարգեչարի գյուղական սովետներին տրվեց Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի երկրորդ կարգի մրցանակները՝ յուրաքանչյուրին 500 ռուբլի դրամական պարգև։ Երրորդ կարգի մրցանակները՝ յուրաքանչյուրին 300 ռուբլի դրամական պարգևով, տրվեցին Հոռոմի (Արթիկի շրջան), Շվանիձորի (Մեղրու շրջան), Մովսեսի (Շամշադինի շրջան), Մադինայի (Մարտունու շրջան) գյուղական և Կալինինոյի ու Թումանյանի



ավանային սովետներին։ Միաժամանակ նշվել է նաև մի շարք այլ գյուղական սովետների դրական աշխատանքը։

Վերը նշված սովետների մի խումբ դեպուտատներ պարգևատրվել են Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի պատվոգրերով։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության 8-րդ հնգամյա պլանի կենսագործման առաջին տարվա գարնանը նոր նախաձեռնությամբ հանդես եկավ Հրազդանի քաղաքային սովետը։ Ձեռնամուխ լինելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործմանը և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակն արժանավայել դիմավորելու, Հրազդանի աշխատավորները և քաղաքային սովետը կոնկրետ պարտավորություններ վերցրեցին և կոչ արեցին բոլորին հետևելու իրենց օրինակին։ Հրազդանցիները, շատ այլ պարտավորությունների հետ միաժամանակ, խոստացել են՝ հակահասարակական երևույթներին խպառ վերջ տալու համար ակտիվ աշխատանքի ներգրավել բոլոր թաղային կոմիտեներին, ընկերական դատարաններին և ամբողջ բնակչությանը։ Հրազդանցիները պարտավորվել են քաղաքը դարձնել ավելի բարեկարգ, կանաչապատ ու գեղեցիկ, ապահովել սոցիալիստական համակեցության կանոնների պահպանումը, առանձնահատուկ ուշադրություն նվիրել աշխատավորության կոմունիստական դաստիարակությանը, ժամանակին ու բարձր որակով շահագործման հանձնել նորակառույց բնակելի շենքերը, դպրոցները, առողջապահության ու կուլտուրայի օջախները։

Հասարակական հիմունքները լայնորեն արմատավորվում են նաև աշխատավորների դեպուտատների շրջանային սովետներում։ Հանրապետության շատ շրջսովետներում ստեղծվել են հասարակական հիմունքներով ենթաբաժիններ։ Այժմ Հայաստանի քաղաքային և շրջանային սովետներում գործում են 288 արտահաստիքային բաժին և 5430 հասարակական տեսուչ-հրահանգիչներ։

Այս կապակցությամբ չի կարելի չնշել մի շարք լուրջ թերություններ։ Անիմաստ է, օրինակ, հաստիքային բաժիններին կրկնող հասարակական հիմունքներով նույնանման բաժինների ստեղծումն՝ առանձին շրջանային սովետներում։ Դրանք ո՛չ միայն կրկնում են հաստիքային բաժիններին, այլ, ըստ էության, դառնում են վերջիններիս կցորդը։

Շրջսովետների գործկոմների մեծ մասը ճիշտ չի վարվում, երբ արտահաստիքային հրահանգիչներ ու տեսուչներ է հաստատում հիմնականում շրջկենտրոնի բնակիչներից։ Ներկայումս մեր բոլոր գյուղերում կան կուսակցական-սովետական աշխատանքի փորձ ունեցող այնպիսի ընկերներ, որոնք հաջողությամբ կարող են կատարել շրջանային սովետների լիազորների ու հրահանգիչների պարտականությունները։ Նման ընտրությունը մեծ չափով կօգնի գյուղի աշխատավորներին, որպեսզի նրանք գործից չկտրվեն և ամեն մի հասարակ հարցով վերադաս կազմակերպություններին դիմելու համար շրջկենտրոն չգնան։

Ժողովրդական մասսաների հետ սովետների կապն ամրապնդելու, նրանց հասարակական ակտիվ աշխատանքի ներգրավելու գործում մեծ դեր են խաղում աշխատավորների դեպուտատների սովետների մշտական հանձնաժողովները։ Կոմունիստական կուսակցության ծրագրում նշված է. «Հետզհետե տեղական սովետների մշտական հանձնաժողովների լուծմանը պետք է տրվեն գործադիր օրգանների վարչությունների և բաժինների իրավասության ենթակա ավելի ու ավելի մեծ թվով հարցեր» (ՍՄԿԿ Ծրագիրը, էջ 124)։ Հայաստանի

գյուղական սովետներում գործում են երկու հազարից ավելի մշտական հանձնաժողովներ, որոնց մեջ ընդգրկված են գյուղական սովետների դեպուտատների մոտ երեք քառորդը։ Գյուղական սովետներում հսկայական աշխատանք են կատարում հատկապես գյուղատնտեսական հանձնաժողովները, ուր ընդգրկված են գյուղատնտեսության մասնագետներն ու կոլտնտեսային ակտիվը։

Սովետների մշտական հանձնաժողովները մասսաների հետ կապի հիմնական օղակն են, նրանց ուժերի օգտագործման կարևոր միջոցը։ Ժողովրդական լայն մասսաներին մասնակից դարձնելով պետության կառավարմանը, սովետները լուծում են բազմապիսի հարցեր, օգնում ավելի էժանացնելու, պարզեցնելու ու գործնական դարձնելու կառավարման ապարատը։ Սովետները բազմաթիվ հարցեր լուծում են լայն մասսաների անմիջական օգնությամբ և աստիճանաբար վեր են ածվում հասարակական ինքնավարության օրգանների։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը անդուլ հոգատարություն է ցուցաբերում սովետների դերն ավելի բարձրացնելու, նրանց առջև կանգնած տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները հաջողությամբ լուծելու համար։ Կուսակցությունը գտնում է, որ զարգացման ներկա էտապում պետք է ավելի ընդլայնել տեղական սովետների իրավունքները, բարձրացնել նրանց դերը։ Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը նշում էր, որ սովետները պետք է վերածվեն երկրի ողջ արտադրությունը կարգավորող օրգանների։ Մինչդեռ, տակավին պարզություն չի մտցված աշխատավորների դեպուտատների շրջանային սովետների և գյուղատնտեսական արտադրական վարչության փոխհարաբերությունների միջև։ Կարծեք, անորոշ է մնում գյուղատնտեսության ղեկավարման գործում շրջսովետի պատասխանատվության հարցը։ Այնինչ, իշխանության տեղական օրգանները պետք է պատասխանատվություն կրեն իրենց սպասարկած տերիտորիայում գտնվող բոլոր հիմնարկների գործունեության համար։

ՍՄԿԿ XXIII համագումարը պահանջեց ակտիվացնել սովետների գործունեությունը՝ դրանց հետագա դեմոկրատացման հիման վրա, բարձրացնել աշխատավորների դեպուտատների սովետների սեսիաների նշանակությունը, աշխուժացնել մշտական հանձնաժողովների աշխատանքը։

Սովետները, որպես պետական իշխանության օրգաններ, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIII համագումարում, պետք է ուժեղացնեն իրենց ազդեցությունը մեր երկրի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման և հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա։

Կոմունիստական կուսակցությունը ներկայումս ձգտում է, որ տեղական նշանակություն ունեցող բոլոր հարցերը լուծեն իշխանության տեղական օրգանները։






Ջ. ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆ

## ՀԱՆՃԱՐԵՂ ՄՏԱԾՈՂԻ ԴԱՐԱԿԱԶՄԻԿ ԵՐԿԸ

(Վ. Ի. Լենինի Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա գրքի ստեղծման 50-ամյակի առթիվ)



ԼԱԴԻՄԻՐ Իլյիչ Լենինը 1916 թվականի հուլիսի սկզբին ավարտեց ծավալով ոչ մեծ, բայց իր տեսական ու քաղաքական նշանակությամբ մեծագույն Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա գիրքը։ Առաջին համաշխարհային պատերազմի մահաբեր թնդանոթների որոտի և հրդեհների բոցերի մեջ ստեղծվեց այդ աշխատությունը, որը ուղենիշ հանդիսացավ գիտական կոմունիզմի զարգացման գործում։

Ցյուրիխի փոստի ծառայողը, Վլադիմիր Իլյիչից ձեռագիրն ընդունելով Ռուսաստան ուղարկելու համար, իհարկե, չգիտեր, թե ով է այդ մարդը և ինչ կա բարակ թելով կապած ծրարի մեջ։ Նա չգիտեր, որ իր առջև կանգնած է մեր դարաշրջանի մեծագույն մարդը, որը մեկ տարուց մի փոքր անց կգլխավորի Հոկտեմբերյան մեծ հեղաշրջումը և կդառնա միջազգային պրոլետարիատի առաջնորդը։ Փոստային այդ չինովնիկը չգիտեր, որ իր ձեռքում պահում է քաղաքական-տնտեսագիտական մեծագույն աշխատությունը, որն առաջիկա տարիներին կթարգմանվի քաղաքակիրթ բոլոր ժողովուրդների լեզուներով, կտարածվի միլիոնավոր օրինակներով և կդառնա ժամանակակից կապիտալիզմի զարգացման օրենքներն ուսումնասիրողների սեղանի գիրքը։ Ցյուրիխի կանտոնալ գրադարանի աշխատակիցներն էլ չգիտեին, որ այդ կոռեկտ ռուս մարդը, որը գրականություն էր դուրս գրում չորս լեզուներով և մինչև ուշ երեկո աշխատում էր դրանց վրա, նույն Լենինն է, որի անունը շուտով կհռչակվի աշխարհով մեկ և կապրի դարեդար։ Ո՛չ նրանք, ո՛չ էլ շվեյցարական փոքրիկ խաղաղ քաղաքի բնակիչները չէին էլ ենթադրում, որ իրենց հետ կողք-կողքի մեկուսի ապրում և լարված աշխատում է մեծ մտածողը, իմպերիալիզմի մասին հանճարեղ ուսմունքի ստեղծողը։

...Ինչպես հայտնի է, առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ Լենինը գտնվում էր Շվեյցարիայում, ուր վտարանդության մեջ ապրում էր

1914 թվականից։ 1916 թվականի հունվարի սկզբին, (Բեռլինում) Լենինը «Առագաստ» գրահրատարակչությունից պատվեր ընդունեց գիրք գրելու իմպերիալիզմի մասին։ 1916 թվականի փետրվարի կեսերին Վլադիմիր Իլյիչը փոխադրվեց Ցյուրիխ, որտեղ նույն թվականի հուլիսի սկզբին ավարտեց իր գիրքը։ Այն լույս տեսավ Պետերբուրգում, միայն 1917 թվականի ապրիլին, արդեն ինքնակալության տապալումից հետո։

ԼԵՆԻՆԻ Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա գիրքը սկիզբ դրեց իմպերիալիզմի մասին գիտությանը, լայն ճանապարհ հարթեց ժամանակակից կապիտալիզմի մարքսիստական հետազոտման համար։ Այդ աշխատությունը պարունակում է իմպերիալիզմի մասին լենինյան ուսմունքը։

XIX և XX դարերի սահմանագլխին կապիտալիզմը թևակոխեց իր զարգացման նոր, բարձրագույն փուլը՝ իմպերիալիզմի փուլը, որի էկոնոմիկայի առավել բնորոշ գիծն է մոնոպոլիստական կապիտալի տիրապետությունը։ Ազատ մրցակցության դարաշրջանը փոխարինվեց մոնոպոլիաների դարաշրջանով։ Լենինն ուշադրությամբ հետազոտում է մոնոպոլիաների ստեղծման պրոցեսը. մոնոպոլիստական խոշոր միավորումները (կարտելները, սինդիկատները, տրեստները) ծագում են արտադրության համակենտրոնացման հետևանքով. այդ արտահայտվում է այն բանով, որ ապրանքների ճնշող մասը արտադրում են ժամանակակից տեխնիկայով հագեցած առավել խոշոր ձեռնարկությունները։

Խոշոր ձեռնարկատերերի միությունների մենաշնորհ վիճակը նրանց ռեալ հնարավորություն տվեց՝ խիստ կերպով ազդելու շուկայի վրա, առաջին հերթին ապրանքների առաջարկն արհեստականորեն սահմանափակելու և դրանց գները բարձրացնելու, այնպիսի նվազագույն գնի վերաբերյալ գործարք կնքելու միջոցով, որից ցածր ապրանքների վաճառքն արգելվում է մոնոպոլիստական համաձայնագրի մասնակից կապիտալիստին։

Ներքին շուկայում բարձրացված գներով ապրանքների վաճառքը դարձավ մոնոպոլիաների գլխավոր նպատակին հասնելու՝ մենաշնորհ կերպով բարձր շահույթներ կորզելու միջոց։ Սակայն կապիտալիստական մասնավոր սեփականության պահպանման, ապրանքային արտադրության պայմաններում, մոնոպոլիստական միությունները ի վիճակի չեն վերացնելու նորանոր ձևեր ընդունող մրցակցությունը։ Մրցակցության և մոնոպոլիաների գոյակցությունն իմպերիալիզմի բնորոշ գիծն է, որն անմիջականորեն դրսևորում է ժամանակակից կապիտալիստական հասարակարգի տնտեսական-հասարակական-քաղաքական ողջ կյանքի նոր կողմերը։ Մոնոպոլիստական կապիտալիզմի՝ իմպերիալիզմի փուլը չի վերացնում կապիտալիզմի ընդհանուր օրենքները, որոնք նոր պայմաններում գործում են ավելի քայքայիչ կերպով, սրելով արտադրության կապիտալիստական եղանակի անտագոնիստական հակասությունները։

Մոնոպոլիաները, միացնելով մեկ ճյուղի կամ նույնիսկ մի շարք ճյուղերի ձեռնարկությունները, դրա հետ մեկտեղ ուժեղացնում են արտադրության անարխիան, սրում են քաոսային վիճակը, որը հատուկ է արտադրության ամբողջ կապիտալիստական եղանակին։ Միավորվելով մոնոպոլիստական միությունների մեջ, կապիտալն ուժեղացնում է իր հզորությունը, իսկ հասարակության համար դա միաժամանակ նշանակում է կապիտալի ճնշման ուժեղացում, պրոլետարիատի վիճակի վատացում։



Մոնոպոլիաները ծագում են ոչ միայն արդյունաբերության մեջ, դրանք կազմակերպվում են նաև վարկի ոլորտում, բանկային սիստեմում։ Կապիտալի համակենտրոնացման ու կենտրոնացման օրենքը տարածվում է բանկային գործի վրա։ Ժամանակավոր օգտագործման համար ուրիշի ազատ միջոցներ որոնող կապիտալիստների և իրենց ժամանակավորապես ազատ միջոցները ձեռնտու կերպով տեղավորելու հնարավորություն որոնող կապիտալիստների (իսկ բանկերը հենց այդպիսիք էին նախամոնոպոլիստական դարաշրջանում) բազմաթիվ համեստ միջնորդներն այժմ դառնում են մի բուռն «ամենազոր մոնոպոլիստներ, որոնք իշխում են բոլոր կապիտալիստների ու մանր տերերի գրեթե ամբողջ դրամական կապիտալի վրա...»։

«Բանկերը և դրանց նոր դերը» հատուկ գլխում Լենինը տալիս է բանկերի նոր գործունեության ցայտուն պատկերը, և ընթերցողը պարզ տեսնում է, որ XX դարը «շրջադարձային կետ» է հնից դեպի նոր կապիտալիզմը։

Այսպիսով, մոնոպոլիաներն իշխում են և՛ արտադրության, և՛ շրջանառության ոլորտում, և այդ տանում է մոնոպոլիստական արդյունաբերական կապիտալի ու մոնոպոլիստական բանկային կապիտալի փոխներթափանցում, այնպիսի կապիտալի ստեղծում, որը տնտեսագիտական գրականության մեջ ստացել է «ֆինանսական կապիտալ» անունը։

Պետք է ուղղակի ասել, որ ֆինանսական կապիտալի լենինյան բնորոշումն առաջին անգամ գիտական ռելսերի վրա դրեց դրա հետազոտումը։

Լենինը տվեց ֆինանսական կապիտալի լրիվ և հստակ սահմանումը. Արտադրության համակենտրոնացում. դրանից աճող մոնոպոլիաներ. արդյունաբերության հետ բանկերի միաձուլում կամ միակցում՝ ահա ֆինանսական կապիտալի ծագման պատմությունը և այդ հասկացության բովանդակությունը:

Մոնոպոլիաների ծագո՛ւմ։ Մոնոպոլիստական կապիտալի տիրապետությո՛ւն՝ ահա ամենագլխավորն ու բնորոշը իմպերիալիզմի դարաշրջանի համար, ուստի, ժամանակակից հասարակարգի տնտեսագիտական ամեն մի կատեգորիա, տնտեսական պրոցես, նրա կյանքի շատ թե քիչ նշանակալից երևույթ կարող է հասկացվել, բացատրվել, եզրակացվել իմպերիալիզմի հենց այս որոշիչ գծից ելնելով։

Նախաիմպերիալիստական դարաշրջանում ֆինանսական կապիտալ չկար և չէր կարող լինել, քանի որ այն ժամանակ մոնոպոլիաներ չկային ո՛չ արդյունաբերության մեջ, ո՛չ էլ բանկային գործում։ Եվ, ընդհակառակը, ֆինանսական կապիտալի ծագումն իմպերիալիզմի դարաշրջանում անխուսափելի է, քանի որ իշխում են մոնոպոլիաները։

Ֆինանսական կապիտալի տիրապետությունն իրականացնում է «ֆինանսական օլիգարխիան»՝ հասարակական արտադրության բոլոր ճյուղերում հրամանատարական դիրքեր գրաված մոնոպոլիստական կապիտալի տերերը։ Այդ օլիգարխիան է որոշում այն երկրի զարգացման ուղղությունը, որտեղ ինքը տիրապետություն է հաստատել, նա է որոշում երկրի ներքին և արտաքին քաղաքականությունը։ Տնտեսական բոլոր բարձունքները գրաված մոնոպոլիստական այդ հզոր միավորումների տերերը, ակցիոներական ընկերությունների տերերն են հենց իրենց իսկ նշանակած կառավարությանը հրում «սառը պատերազմի», պատերազմական ագրեսիաների, ամեն տեսակի միջազգային

բարդությունների ուղին, այդ նրանք՝ ֆինանսական կապիտալի մագնատներն են որոշում կապիտալիզմի երկրների բախտը։

Լենինը XIX դարի վերջերի և XX դարի սկզբի կապիտալիստական պետությունների կյանքից վերցրած բազմաթիվ այդպիսի փաստերի մասին հանգամանորեն պատմում է, մասնավորապես, «ֆինանսական կապիտալ» գլխում։

Ֆինանսական կապիտալի տիրապետությամբ է պայմանավորված նաև կապիտալի արտահանումը, որն աչքի է ընկնում իմպերիալիզմի դարաշրջանում։ Եթե ազատ մրցակցության դարաշրջանի համար տիպիկ էր ապրանքների արտահանումը, ապա ժամանակակից կապիտալիզմի համար տիպիկ է կապիտալի արտահանումը։ Հասկանալի է, դա չի նշանակում, թե իմպերիալիզմի դարաշրջանում ապրանքների արտահանումը թուլանում է։ Ընդհակառակը, արտաքին առևտրական շրջանառությունը խիստ աճում է, օտարերկրյա շուկաներում առևտուրը մեծապես գերազանցում է ապրանքների նախամոնոպոլիստական դարաշրջանում կատարված արտահանման և ներմուծման ծավալը։

Այդ ամենով հանդերձ, իմպերիալիզմին բնորոշ է կապիտալի արտահանումը, որի համար անհրաժեշտ պայմաններ չեն եղել նախամոնոպոլիստական դարաշրջանում։ Ֆինանսական կապիտալը ձգտում է ոչ թե ազատության, այլ տիրապետության, և կապիտալի արտահանումը կապիտալ ներմուծող երկրում իր տիրապետությունն ամրապնդելու շատ հարմար միջոց է կապիտալ արտահանող երկրի համար։

Ապրանքների արտահանումն ինքնըստինքյան չի տանում դեպի ապրանք արտահանող երկրի քաղաքական տիրապետություն ապրանք ներմուծող երկրի նկատմամբ։ Ապրանքների արտահանումը ոչ էկվիվալենտային փոխանակության պայմաններում նշանակում է՝ տնտեսապես թույլ երկրի կողոպուտ, բայց որպեսզի ավելի զարգացած երկիրը քաղաքականապես իրեն ենթարկի թույլ երկրին, առաջին հերթին, անհրաժեշտ է կապիտալի արտահանում, որը պայմանավորում է համապատասխան պահանջներով։

Հետազոտելով կապիտալի արտահանման պրոբլեմը, Լենինն ընդգծում է, որ դա պայմանավորված է «կապիտալի ավելցուկով» այն երկրներում, ուր կապիտալի կուտակումը հասել է հսկայական չափերի և պակասում է «շահութաբեր տեղավորման ասպարեզը»։ Մյուս կողմից, կապիտալի արտահանումը հնարավոր է դառնում այն բանի շնորհիվ, որ մի շարք հետամնաց երկրներ արդեն ներքաշված են համաշխարհային կապիտալիզմի շրջանառության մեջ, կառուցվել են գլխավոր երկաթուղագծերը կամ սկսվել է դրանց կառուցումը, տարրական պայմաններ են ապահովված արդյունաբերության զարգացման համար և այլն։

Հսկայական չափերով կապիտալ արտահանող փոքրաթիվ հարուստ երկրներ դառնում են ռանտյե երկրներ, կապիտալիստական պարազիտիզմի երկրներ։ Այս եզրակացության է հանգեցնում իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալի արտահանության Լենինի հետազոտությունը։

Որքան աճում է կապիտալի արտահանումը, որքան ընդլայնվում են համաշխարհային շուկան և ամեն տեսակի արտասահմանյան կապերը, այնքան ավելի ռեալ հող է ստեղծվում միջազգային մոնոպոլիստական միությունների կազմակերպման համար, միություններ, որոնք իրար հետ համաձայնագրեր են կնքում աշխարհի տնտեսական բաժանման շուրջ։ «Դա,— ասում է Լենինը,—



կապիտալի և արտադրության համաշխարհային համակենտրոնացման նոր աստիճանն է»։ Առաջվա պես դրդիչ հանգամանքն է մնում մրցակցությունը վերացնելու ձգտումը, և այդ նպատակն ինչ-որ չափով իրականացվում է, բայց, դրա հետ մեկտեղ, ուժեղանում է տնտեսապես բաժանված աշխարհում առաջին տեղը գրավելու համար մղվող պայքարը։ Լենինը նավթային արդյունաբերությունից, մեքենաշինությունից, առևտրական նավագնացությունից և այլ բնագավառներից օրինակներ է բերում, որոնք վկայում են, որ միջազգային կարտելները ո՛չ միայն չեն վերացրել կապիտալիստական աշխարհի հակասությունները, այլև ուժեղացրել են դրանք, նոր, ավելի սուր հակասություններ ստեղծելով նոր հողի, «աշխարհի տնտեսական բաժանման հողի վրա»։

Միաժամանակ, գերմոնոպոլիաների կողմից աշխարհը տնտեսապես բաժանելու, դրանց միջև դաժան պայքարի, ուժերի հարաբերակցության մեջ տեղի ունեցած փոփոխությունների հետևանքով տեղի է ունենում աշխարհի տերիտորիալ բաժանումը իմպերիալիստական պետությունների միջև։

Աշխարհի տերիտորիալ բաժանումը, որը կատարվում է «ըստ ուժի», վերջնական չէ։ Բայց քանի որ մինչև XIX դարի վերջերն ազատ հողերի զավթումն ավարտված էր և իմպերիալիստական երկրների կողմից չզավթված տերիտորիաներ չէին մնացել, ապա տերիտորիաների համար նրանց միջև մղվող պայքարը կարող էր գնալ միայն աշխարհի վերաբաժանման ուղիով։ Այդ պայքարն անխուսափելիորեն ոչ խաղաղ, զինված պայքար է, դա պատերազմ է։

Ե՛վ առաջին, և՛ երկրորդ համաշխարհային պատերազմները արդեն բաժանված կապիտալիստական աշխարհը վերաբաժանելու համար իմպերիալիստական պետությունների մղած պայքարի ծնունդ էին։ Իմպերիալիստական պատերազմների տնտեսական հիմքը հզոր մոնոպոլիաների մղած պայքարն է համաշխարհային տիրապետության համար։

Համառոտակի այս է իմպերիալիզմի մասին լենինյան ուսմունքի բովանդակությունը, որը սեղմ, բայց անսահման արտահայտչականությամբ շարադրված է Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա գրքում։

Իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի զարգացման օրինաչափությունները հասկանալու համար այդ գիրքն ունի նույնպիսի նշանակություն, ինչպիսին Կ. Մարքսի Կապիտալը ազատ մրցակցության դարաշրջանում՝ կապիտալիզմի զարգացման օրինաչափություններն ըմբռնելու համար։

Վլադիմիր Իլյիչը հատկապես կանգ է առնում այն հարցի վրա, որ իմպերիալիզմը կապիտալիզմի վերջին և ճառուկ փուլն է։ Դա չափազանց կարևոր մեթոդոլոգիական դրույթ է, որը բացահայտում է իմպերիալիզմի բուն էությունը և նրա պատմական դերը մարդկային հասարակարգի զարգացման գործում։ Այն իր սուր կողմով ուղղված է Կաուցկու և իմպերիալիզմի մյուս ջատագովների՝ «կազմակերպված կապիտալիզմի», «ժողովրդական կապիտալիզմի», «շահերի ներդաշնակության» գոյություն ունեցող մինչև այժմ մոդայական տեսությունների հեղինակների դեմ։

Իմպերիալիզմի դարաշրջանում, կապիտալիզմի այդ վերջին փուլում, ավելի ու ավելի են խորանում կապիտալիզմի հակասությունները և, առաջին հերթին՝ վճռական անտագոնիստական հակասությունն աշխատանքի ու կապիտալի միջև։ Կապիտալիզմի անտագոնիստական զարգացման հետևանքն այն է, որ իմպերիալիզմի փուլում նախադրյալներ են հասունանում կապիտալիզ-

մից սոցիալիզմին անցնելու համար։ Բուրժուազիայի դեմ պրոլետարիատի մղվող դասակարգային պայքարի պայմաններում արտադրողական ուժերի զարգացումը հասցնում է այն բանին, որ ստեղծվում են ինչպես նյութական, այնպես էլ սուբյեկտիվ նախադրյալներ կապիտալիզմը հասարակական արտադրության ավելի բարձր, սոցիալիստական եղանակով փոխարինելու համար։ Արտադրողական ուժերի աճը սահմանափակող անտագոնիստական հիմունքների վրա արտադրության հանրայնացման աստիճանը, որին կապիտալիզմը հասել է իմպերիալիզմի դարաշրջանում, պրոլետարիատի կողմից իշխանությունը գրավելու հետևանքով փոխարինվում է արտադրության հանրայնացման ավելի բարձր աստիճանով՝ արդեն ոչ անտագոնիստական հիմունքներով, որն անսահման հնարավորություններ է ստեղծում արտադրողական ուժերի անընդհատ աճի համար։

●

ԿԵՍ դար է անցել այն ժամանակից, երբ Լենինն ստեղծեց իմպերիալիզմի մասին հանճարեղ ուսմունքը։ Անցած հիսուն տարում համաշխարհային պատմական նշանակություն ունեցող շատ իրադարձություններ են տեղի ունեցել։ Դրանցից ամենախոշորը, որը որոշեց մարդկային հասարակության հետագա զարգացումը, Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունն էր։ Այն հաստատեց կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման Լենինի հայտաբերած օրենքի անառարկելի ուժը, օրենք, որը իմպերիալիզմի մասին լենինյան ուսմունքի բաղկացուցիչ մասն է։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով Ռուսաստանն անջատվեց համաշխարհային կապիտալիստական սիստեմից, ստեղծվեց ժողովրդական տնտեսության նոր, սոցիալիստական սիստեմ, որն իր հիմունքներով, բովանդակությամբ ու զարգացման օրենքներով կապիտալիստական սիստեմի ուղղակի հակապատկերն է։

Սոցիալիզմի ճանապարհով մեր երկրի հարաճուն զարգացման և հիտլերյան Գերմանիայի ու նրա դաշնակիցների դեմ Սովետական Միության ռազմատնտեսական հաղթանակի շնորհիվ կապիտալիզմի համաշխարհային սիստեմից անջատվեցին Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներ, ստեղծվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմ, որը երկրորդ համաշխարհային պատերազմի գլխավոր արդյունքն է։ Առաջացան համաշխարհային մասշտաբի երկու լագերներ՝ աճող ու ամրապնդվող սոցիալիզմի լագերը և անկայուն, իր դարն ապրող կապիտալիզմի լագերը։

Երկրորդ համաշխարհային պատերազմի մյուս կարևորագույն հետևանքը Լենինի կանխատեսած՝ իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումն է։ Պատերազմն ավարտելուց հետո անցած քսան տարում Ասիայում ու Աֆրիկայում գաղութային ստրկության շղթաները թոթափեցին, քաղաքական անկախություն նվաճեցին և տնտեսական ինքնուրույն զարգացման ուղին բռնեցին 60-ից ավելի երկրներ, որոնց բնակչությունը կազմում է մեկուկես միլիարդ։

Իմպերիալիստական գաղութակալության կործանումը տեղի ունեցավ համաշխարհային կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի պայմաններում, որն իմպերիալիզմի մասին լենինյան ուսմունքի անբաժանելի մասն է։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը կապիտալիստական ցիկլի փուլերից մեկը չէ, որպիսիք վերարտադրության նորմալ ընթացքը պարբերաբար ընդհատող գերարտադրության տնտեսական ճգնաժամերն են։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը բազմակողմանի ճգնաժամ է, որն ընդգրկում է կապիտալիստական հասարակարգի և էկոնոմիկան, և՛ քաղաքականությունը, և՛ գաղափարախոսությունը։ Ծագելուց հետո այն չի կարող ավարտվել այլ կերպ, քան համաշխարհային կապիտալիզմի ամբողջ սիստեմի կործանումով։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը ծագել է իմպերիալիզմի փուլում, բայց սկիզբ է առել առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Սակայն, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի գոյավորման համար պահանջվեցին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությանը և դրան ուղեկցող՝ աշխարհի բաժանումը երկու հակադիր սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի։

Եթե կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առաջին փուլը կապված է առաջին համաշխարհային պատերազմի և Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հետ, ապա կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ փուլի համար պայմաններ էին ստեղծվում առաջին ու երկրորդ համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում։ Երկրորդ համաշխարհային պատերազմը կենտրոնացված արտահայտությունն էր այն բանի, որ սկսվել է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ փուլը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացումը և իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայումը սկիզբ դրեցին կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի նոր փուլին։

Հիսնական թվականների կեսին ծնունդ առած այդ փուլի առանձնահատկությունն այն է, որ վերջինս սկսվել է խաղաղ պայմաններում՝ ի տարբերություն կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առաջին և երկրորդ փուլերի, որոնք առաջացան պատերազմի պայմաններում։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի տեսության հիմունքները տրված են իմպերիալիզմի՝ որպես կապիտալիզմի վերջին փուլի վերաբերյալ լենինյան ուսմունքի մեջ։ ՍՄԿԿ XX, XXII և XXIII համագումարների որոշումները, որոնք պարունակում են կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի վերաբերյալ ուսմունքի հետագա մշակումը, մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման վառ օրինակ են։

●

ՊՐԱԿՏԻԿԱՆ լիովին հաստատեց իմպերիալիզմի լենինյան ուսմունքի բոլոր դրույթները։ Ժամանակակից կապիտալիստական աշխարհում, նրա էկոնոմիկայում, քաղաքականության, գաղափարախոսության, միջազգային հարաբերությունների մեջ չի գտնվի մի շատ թե քիչ լուրջ պրոցես, կարևոր երևույթ, որն իր ամբողջ էությամբ չհաստատի իմպերիալիզմին Լենինի տված բնութագիրը։ Այդ բանն ապշեցուցիչ կերպով հաստատվում է, մասնավորապես, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի վերաբերյալ ուսմունքի նկատմամբ, որը իմպերիալիզմի լենինյան տեսության բաղկացուցիչ մասն է։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պրոբլեմը, այսինքն՝ առհասարակ մոնոպոլիաներից պետական մոնոպոլիայի անցումը, կապիտալիստական տնտեսության պրակտիկայում մեծ նշանակություն է ստանում հետպատերազմյան տարիներին։

Պետական մոնոպոլիաների լայնորեն անցնելու համար պայմաններ նախապատրաստվեցին դեռ մինչև առաջին համաշխարհային պատերազմը. այդ անցման հնարավորությունը ինչպես մոնոպոլիաների էության, այնպես էլ բուրժուական պետության էության մեջ էր, բայց առաջին համաշխարհային

պատերազմը մեծապես արագացրեց մոնոպոլիստական կապիտալիզմի վերաճումը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի։

Ազատ մրցակցության դարաշրջանում, համեմատաբար խաղաղ զարգացման տարիներին, կապիտալիստները յոլա էին գնում առանց երկրի տնտեսական կյանքին պետության ուղղակի միջամտության, նրանք երկրի էկոնոմիկային պետական ապարատի անմիջական մասնակցության կարիքը չէին զգում։ Իհարկե, պետությունն այն ժամանակ էլ շահագործական դասակարգերի իշխանության օրգանն էր, այն ժամանակ էլ այն կանգնած էր այդ դասակարգերի շահերի պաշտպանության դիրքերում, նրանց սեփականությունը պաշտպանում էր ամեն տեսակի հարձակումներից և միշտ պատրաստ էր բանվորների «անարդարացի» պահանջները սահմանափակելու։ Սակայն, նախամոնոպոլիստական դարաշրջանում բուրժուական պետությունը կապիտալիստների ամբողջ հասարակարգի օրգանն էր, հանդես էր գալիս հանուն բուրժուազիայի ընդհանուր շահերի։ Այդ ընդհանուր արմատական շահերն էին՝ կապիտալիստական սեփականության պահպանումն ու ամրապնդումը, բանվորների անարգել շահագործումը և բարձր շահույթի հանգիստ յուրացումը։

Կապիտալիզմի զարգացման մոնոպոլիստական փուլին անցնելուց հետո պետությունը բուրժուազիայի ամբողջ դասակարգի կամակատարից վերածվեց կապիտալիստական մոնոպոլիաների կամակատարի, մոնոպոլիաներ, որոնք կազմում են բուրժուազիայի միայն մի մասը։ Բուրժուական պետության սոցիալական բազան, որն առանց այն էլ սահմանափակ է կապիտալիստական դասակարգի շրջանակներում, ավելի է նեղանում, և դրանով իսկ ավելի գարշելի մերկությամբ է հանդես գալիս նրա հակաժողովրդական բնույթը։ Կապիտալիզմի հիմնական հակասության ուժեղացման հետևանքով մեծանում են պետության պատժիչ ֆունկցիաները, բայց, դրա հետ մեկտեղ, մոնոպոլիաների տիրապետությունը պահանջում է, որ պետական իշխանությունը մշտապես և ավելի ու ավելի խորամուխ լինի երկրի տնտեսական կյանքում։ Լենինը ցույց տվեց, որ մոնոպոլիստական միությունների և բուրժուական պետական ապարատի միահյուսումը երկկողմանի պրոցես է. պետական իշխանության օրգանները ակտիվորեն ներխուժում են երկրի տնտեսական կյանքի մեջ, բայց այն ուղղությամբ և այն ծավալով, որը նրանց թելադրում են մոնոպոլիաները։

Տնտեսության պետական կարգավորումը, իհարկե, չի փոխում ո՛չ կապիտալիզմի բնույթը, ո՛չ պետության բնույթը, բայց բուրժուական հասարակարգի էկոնոմիկայի մեջ մտցնում է նոր գծեր, որոնք չկային կամ գրեթե չկային կապիտալիզմի զարգացման նախորդ փուլում։

Կապիտալիստական մոնոպոլիաներն ավելի ու ավելի են մերձենում պետական ապարատին, պետական իշխանության օրգաններն ավելի սերտորեն են միաձուլվում մոնոպոլիստական միությունների հետ, և հսկայական ուժի կապիտալի ու պետության այդ փոխադարձ ներթափանցումը ստեղծում է միասնական հզոր մեխանիզմ, որը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի սիստեմում կազմակերպում ու ճնշում է հարյուր միլիոնավոր մարդկանց։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի հետպատերազմյան տարիների պրակտիկան այն բնութագրի վառ ցուցադրումն է, որ նրան տվել է Լենինը։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ձևերը բազմազան են, նոր հանգամանքներից այս կամ այն երկրում ծնունդ են առնում նոր ձևեր, բայց դրանց էությունը նույնն է։ Ինչպես արտադրության, այնպես էլ շրջանառության ոլորտում երկրի տնտեսական կյանքի կենտրոնացված կարգավորումը, որն առաջին անգամ թելադրվեց պատերազմական ժամանակի պայմաններով, շարունակվում է նաև խաղաղ պայմաններում։ Պահպանելով իր ռեակցիոն-բյուրոկրատական բնույթը, այդ կարգավորումն իրականացվում է առանց բանվորների, առանց այդ գործին լայն հասարակայնությանը ներգրավելու։ Պետությունը վերահսկում է արդյունաբերական և մյուս ձեռնարկությունների գործունեությունը, բայց դա բնավ չի նշանակում մասնավոր կապիտալիստական սեփականության վերացում և արտադրության միջոցների հասարակական սեփականության հաստատում։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ձևերից են՝ ձեռնարկությունների պետականացումը, բուրժուական ազգայնացումը և ձեռնարկությունների կառուցումը պետական միջոցներով, որոնք վերջին երկու տասնամյակում հատկապես զգալիորեն տարածվեցին Անգլիայում, Ֆրանսիայում։ Ֆրանսիայում կառավարությունը վերահսկում է 643 ձեռնարկությունների։ Պետությանը բաժին է ընկնում արդյունաբերական արտադրանքի արտադրության 20 տոկոսը։ Պետական ձեռնարկությունները գերակշռում են էներգետիկայի, նավթի ու գազի արդյունահանման, ավիացիոն, ավտոմոբիլային արդյունաբերության մեջ, տրանսպորտում։ Ֆրանսիայում կառավարությունը վերահսկում է կապիտալ ներդրումների 40—45 տոկոսը և, կարելի է ասել, որ այն դարձել է երկրի առաջին մոնոպոլիան, գլխավոր ներդրողը, բայց ողջամիտ մարդկանցից ոչ մեկը չի ասի, թե Ֆրանսիայում հաստատվել է սոցիալիստական կարգ։

Բնութագրելով կապիտալիզմի ժամանակ արտադրության նկատմամբ սահմանված վերահսկողությունը, Լենինն ասել է, որ ըստ էության ամբողջ հարցը հանգում է այն բանին, թե ով ում է վերահսկում, այսինքն, որ դասակարգն է վերահսկողը և որը՝ վերահսկվողը։ Եվ քանի որ կապիտալիզմի ժամանակ վերահսկող դասակարգը մոնոպոլիստական բուրժուազիան է, ապա նա առանց խղճահարվելու ամեն տարի պետական բյուջեի հաշվին ազգայնացված ձեռնարկություններին պատկառելի գումարներ է վճարում անվերադարձ օժանդակության ձևով։ Դրանք անմիջականորեն անհրաժեշտ են նախկին տերերին առատորեն հատուցում տալու հետևանքով այդ ձեռնարկություններում ստեղծված խրոնիկական դեֆիցիտը փակելու համար։

Արտադրության ու շրջանառության նկատմամբ պետության վերահսկողությունն իրականացվում է նաև պետական սեկտորի համար ստրատեգիական պաշարներ, ռազմական արտադրանք ու սարքավորումներ կուտակելու նպատակով պետական լայն գնումներ կատարելու, պատվերներ տալու գնով։ Էկոնոմիկայի ռազմականացումը, բանակի, ռազմա-ծովային և ռազմա-օդային նավատորմների մշտական վերազինումը մոնոպոլիաների հսկայական գերշահույթների առատ ու կայուն աղբյուր են։ Աճում է պետական սպառումը, որը մոնոպոլիաների համար ստեղծում է մասսաների վճարունակ պահանջարկից անկախ մշտական շուկա։ Վիետնամում «ամոթալի պատերազմը» շարունակելու նպատակով, ԱՄՆ-ի կոնգրեսից Ջոնսոնի կորզած միլիարդավոր դոլարներն անընդհատ հոսում են մոնոպոլիստների գրպանները։

Ինչպես հիսուն տարի առաջ՝ Լենինի կենդանության օրոք, այնպես էլ այժմ, բնակչության մեկ մասի անչափ ծանր աշխատանքը և մյուս մասի շռայլ կյանքը բնորոշում են պրոլետարիատի վիճակը։ Չնայած բանվոր դասակարգին հաջողվել է համառ պայքարով որոշ չափով կրճատել աշխա-

տանքային օրվա տևողությունը, բայց զգալիորեն ուժեղացել է աշխատանքի ինտենսիվությունը, որը տանում է բանվորական ուժի արագ մաշում, շահագործման աստիճանի բարձրացում: Հետպատերազմյան տարիներին հսկայական չափերի է հասել բանվորների ոչ լրիվ բեռնվածությունը, մասնակի գործազրկությունը, որը կեղծում է ժամանակակից կապիտալիստական շահագործման իսկական պատկերը: ԱՄՆ-ում բանվորների մասսայական թերբեռնվածությունը շարունակ աճում է. 1940 թվականի 5,6 միլիոնի դիմաց, 1964 թվականին կային 8,9 միլիոն ոչ լրիվ բեռնված բանվորներ: Ոչ-լրիվ բանվորական օրը կապիտալիստներին թույլ է տալիս բարձրացնել աշխատանքի ինտենսիվությունը, ավելացնել մեկ ժամվա միջին արտադրանքը և կրճատել արտադրանքի միավորի վրա աշխատավարձի ծախսերը:

Բանվորներից, մոնոպոլիստների քամած միլիարդավոր շահույթներն օգտագործվում են իմպերիալիստների թմբկահարած տխրահռչակ «զարգացմանը օգնելու» վրա: Այստեղ նրանք ունեն երկու նպատակ. խրացման կայուն շուկա ձեռք բերել «տանը» չիրացվող արտադրանքի համար և քաղաքական անկախություն ձեռք բերած երկրները տանել կապիտալիստական զարգացման ճանապարհով: Այդ նպատակին են ուղղված ժամանակակից նեոգաղութակալության բոլոր ձևերը, նեոգաղութակալություն, որը հարկ չեն համարում թաքցնել ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, ինչպես և ԳՖՌ-ի ու Ճապոնիայի մուլտիմիլիոնները: Այսպես, Դյուսելդորֆում լույս տեսնող «Միթթագ» թերթում (1963 թ. մայիսի 30) Բոննի տնտեսական համագործակցության մինիստր Շեելը գրել է. «Զարգացմանը նպաստելու մեր նպատակն է այնպես անել, որ օգնություն ստացող երկրները մնան որպես ազատ (այսինքն՝ կապիտալիստական—Զ. Բ.) աշխարհի մի մասը»: Ընդսմին, պարզաբանվում է, որ «օգնություն» ստանալու պայմանն այն է, որ ազգային պետություններում պետք է առաջին հերթին զարգանա ոչ թե ծանր արդյունաբերությունը, այլ տնայնագործական արտադրությունն ու կրոնը: Եվ դա ո՛չ միայն Բոննի ռևանշիստների, այլև ժամանակակից բոլոր իմպերիալիստների դիրքն է՝ Ասիայի և Աֆրիկայի զարգացող երկրները պահել որպես իմպերիալիզմի ագրարային-հումքային կցորդներ, թույլ չտալ ինդուստրացում, այսինքն՝ նրանց տնտեսական ինքնուրույնության ռեալ հիմքի ստեղծում, առավել ևս, որ երկրի ինդուստրացման հետ մեկտեղ աճում է նաև արդյունաբերական պրոլետարիատը՝ ամրապնդված բանվոր դասակարգը, միակ ուժը, որը կարող է վերջ տալ մենաշնորհ շահույթներին, մոնոպոլիաների տիրապետությանը:

Նեոգաղութակալության գաղափարախոսությունն ուղղակի հակասում է մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսությանը: Ինչպես այն ժամանակներում, երբ ստեղծվում էր Լենինի Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա գիրքը, հակակոմունիզմն այժմ էլ իմպերիալիստական գաղափարախոսության հիմնական բովանդակությունն է: Դա ոչ թե սոսկ վկայում է կապիտալիստական աշխարհի գաղափարախոսների մտածողության աղքատության, այլև այն մասին, որ սպառվել են կոմունիզմի դեմ պայքարի նրանց գաղափարական միջոցները:

Հիսուն տարի առաջ Լենինի հանճարով ստեղծված գիրքը շարունակում է ծառայել միջազգային կոմունիստական ու բանվորական շարժմանը, բոլոր երկրների համար վառ լուսավորում է կապիտալիզմի կործանման և սոցիալիզմին անցնելու պատմական ուղին:

---

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԵՎ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սկզբնական կուսակցական կազմակերպությունները ղեկավարության այն օղակներն են, որոնց ամբողջ գործունեությունն ընթանում է աշխատավորական լայն մասսաների շրջանում: Առանց սկզբնական կուսկազմակերպությունների կազմակերպական, գաղափարական և քաղաքական ակտիվ աշխատանքի, անհնար է հաջողությամբ իրականացնել կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրները, ժամանակին կատարել կուսակցության ու կառավարության որոշումները:

Վ. Ի. Լենինը խոսելով սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերի մասին, ասում էր, որ նրանք սերտորեն կապված են իրար հետ ու կուսակցության կենտրոնի հետ, կատարելով իրենց փորձի փոխանակություն, կազմակերպելով ագիտացիան ու պրոպագանդան, հարմարվելով հասարակական կյանքի բոլոր բնագավառներին, աշխատավոր մասսայի բոլոր խավերին, նրանք պետք է բազմակողմանի աշխատանքով սիստեմատիկորեն դաստիարակեն և՛ իրենց, և՛ կոլեկտիվներին:

Լենինյան այս ցուցումը ակտուալ է և մեր օրերում: Սկզբնական կուսկազմակերպությունների դերը ներկայումս է՛լ ավելի է աճում, ընդլայնվում են նրանց գործողությունների ոլորտը, ակտիվանում ներկուսակցական կյանքը:

Հաշվետու-ընտրական կուսակցական ժողովներում, շրջանային և քաղաքային կուսկոնֆերանսներում, ՀԿԿ XXIV համագումարում շատ կոմունիստներ նշեցին, որ վերջին տարիներին հիմնականում բարելավվել է սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքը:

Սկզբնական կուսկազմակերպությունները կոչված են առաջիկայում ևս մեծ դեր կատարելու կոմունիստներին և բոլոր աշխատավորներին գաղափարապես դաստիարակելու և նրանց ստեղծագործական ուժերը մոբիլիզացնելու տնտեսական ու կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրները լուծելու գործում: Ներկայումս մեր հանրապետությունում հաշվվում է 4003 սկզբնական կուսկազմակերպություն, այդ թվում՝ 903-ը արդյունաբերական, շինարարական, տրանսպորտի և կապի ձեռնարկություններում, 749-ը՝ կոլտնտեսություններում ու սովխոզներում: Նրանցից շատերը վճռական դեր են խաղում տնտեսության ղեկավարման և աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում, կուտակել են կազմակերպական և ագիտացիոն-մասսայական աշխատանքի նշանակալի փորձ: Ակնհայտ է ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964) և հաջորդ պլենումների որոշումների բարերար ազդեցությունը նրանց գործունեության վրա: Բարձրացել է կոմունիստների ակտիվությունն արտադրության մեջ և հասարակական կյանքում, նրանք ամենուր սոցիալիս-

տական մրցության կազմակերպիչներ են, նախաձեռնողներ, չեն հանդուրժում թերությունները։

Հանրապետության քաղկոմներն ու շրջկոմները, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումների որոշումներից, զգալիորեն բարելավել են սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարությունը։ Ամենից առաջ նրանք մեծ պահանջկոտություն են ցուցաբերում սկզբնական կազմակերպությունների քարտուղարների ընտրության, նրանց տեսական և գործնական ուսուցման հարցում։ Եվ դա բնական է։ Սկզբնական կուսկազմակերպության հաջող գործունեությունը պայմանավորված է նրա քարտուղարի, բյուրոյի կամ կոմիտեի բանիմաց աշխատանքով։

Հաշվի առնելով այդ, ՀԿԿ քաղկոմներն ու շրջկոմները վերջին հաշվետու-ընտրական ժողովների ժամանակամիջոցում զգալիորեն բարեփոխեցին սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների և բյուրոների կազմը։ Եթե նախորդ ընտրություններին քարտուղարների կազմում բարձրագույն և թերի բարձրագույն կրթությամբ ընդամենը կային 1811 մարդ (ընդհանուր թվի միայն 43,9 տոկոսը), ապա ներկայումս այն հասել է 1964-ի (ընդհանուր թվի 50 տոկոսը)։ Կուսակցական կազմակերպությունների քարտուղարների կազմում այժմ կան արդյունաբերության և գյուղատնտեսության 865 մասնագետներ, որոնք վատ չեն տիրապետում նաև կուսակցական աշխատանքի արվեստին։

Կուսակցական կոմիտեներն օգտագործում են սկզբնական կուսկազմակերպությունների հետ կապերն ամրապնդելու բազմազան ձևեր ու մեթոդներ։ Օրինակ, ՀԿԿ Սպանդարյանի, Շահումյանի, Սևանի և այլ շրջանային կոմիտեները, աշխատանքի մյուս ձևերին զուգընթաց, սկզբնական կուսկազմակերպությունների միացյալ փնջային ժողովներում պարբերաբար հանդես են գալիս հաշվետվություններով։ Դրա շնորհիվ կուսակցական կոմիտեն հնարավորություն է ունենում իր կատարած գործերն ու անելիքները դնելու կոմունիստների քննարկմանը, ունկնդրելու ներքևից եկող քննադատությանը, ավելի հստակ տեսնելու կատարած աշխատանքի բացերը և, կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների հիման վրա մշակելու այնպիսի միջոցառումներ, որոնց կենսագործումը նպաստելու է շրջանի առջև դրված քաղաքական ու տնտեսական խնդիրների լուծմանը։

Սկզբնական կուսկազմակերպություններին ղեկավարելու և օգնելու, նրանց հետ կապն ամրապնդելու պրակտիկայում արդարացված ձևերից են կուսակցական կոմիտեների բյուրոներում սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետվությունները, կուսկազմակերպությունների գործունեության տարբեր բնագավառների վերաբերյալ հարցեր քննարկելը և այլն։ Այդ օգնում է կուսակցական կոմիտեին ժամանակին տեսնելու ինչպես կազմակերպության, այնպես էլ նրա քարտուղարի աշխատանքում եղած թերությունները։ Հաշվետվության առթիվ շրջկոմի բյուրոյի կոնկրետ ու գործնական որոշումը նպաստում է սկզբնական կուսկազմակերպության աշխատանքի բարելավմանը, կանխում շատ սխալներ, օգնում բացերի վերացմանը։

Այնուհանդերձ, ոչինչ չի կարող փոխարինել տեղերում մարդկանց հետ կատարվող ամենօրյա աշխատանքին, որը և ընկած է կուսակցական կոմիտեների գործունեության հիմքում։ Ուստի, շատ կարևոր է, որ կուսակցական կոմիտեների աշխատողներն ավելի հաճախ լինեն տեղերում, խորանան կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ և, ելնելով կոնկրետ



պայմաններից, խորհուրդ տան կուսկազմակերպությանը, հրահանգավորեն նրա քարտուղարին, օգնեն բացահայտելու և վերացնելու թերությունները։

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների հետ կապի ուժեղացման, նրանց մարտունակության ու դերի բարձրացման ուղղությամբ խրախուսելի աշխատանք են կատարում Երևան քաղաքի Լենինյան, Շահումյան, ինչպես նաև Վեդիի, Մարտունու, Հոկտեմբերյանի, Ախուրյանի և այլ շրջանների կուսակցական կոմիտեները։ Նրանց աշխատողները, որպես կանոն, սիստեմատիկաբար լինում են ձեռնարկություններում և հիմնարկություններում, օգնում կազմակերպություններին ճիշտ տեղադրելու կոմունիստների ուժերն արտադրության մեջ, բարելավելու աշխատանքի կազմակերպումը, լայնորեն ծավալելու քաղաքական-մասսայական աշխատանքը, բացահայտելու և գործադրելու արտադրության ներքին ռեզերվները, դրանով իսկ բարձրացնելով ձեռնարկության էկոնոմիկան։

Կուսակցական կոմիտեների ամենօրյա ղեկավարությամբ և օգնությամբ հանրապետության շատ սկզբնական կուսկազմակերպություններ բարելավել են իրենց գործունեությունը՝ ապրում են ներկուսակցական լիարյուն կյանքով, դարձել են արտադրության բազմամարդ կոլեկտիվի կազմակերպող ու մոբիլիզացնող ուժ։ Այդպիսիներից է, օրինակ, Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղի կոլտնտեսության կազմակերպությունը, որը 116 կուսանդամ-թեկնածու ունի։ Կուսակցական-քաղաքական աշխատանքը նա սերտորեն զուգակցում է տնտեսականին։ 1965 թվականին և ընթացիկ տարում կուսակցական ընդհանուր ժողովներում ու կուսբյուրոյի նիստերում քննարկվել են ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարմանը, կոմունիստների մարքս-լենինյան ուսուցումը կազմակերպելուն, նրանց քննադատական դիտողությունների կենսագործմանը, ինչպես և երիտասարդության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի բարելավմանն ու ուժեղացմանը, ընդունած որոշումների կատարմանը, և վերջապես, կոլտնտեսային արտադրության հիմնական խնդիրներին վերաբերող մի շարք հարցեր։

Վարդենիկի կոլտնտեսության կուսկազմակերպությունն իրավամբ ապրում է ներկուսակցական բովանդակալից կյանքով։ Այստեղ բոլոր կոմունիստներն ունեն կուսակցական հանձնարարություններ։ Իսկ կուսբյուրոն մշտապես վերահսկում և ապահովում է դրանց կատարումը։

Իրենց եռանդով ու բարեխղճությամբ աչքի են ընկնում ագիտատորներ Ա. Ավետիսյանը, Մ. Բալայանը, կուսակցական խմբի կազմակերպիչներ Հ. Գևորգյանը, Հ. Պողոսյանը, Գ. Բոլեյանը և ուրիշներ։ Կոլտնտեսականներն ուշադրությամբ են լսել ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների մասին զրույցները, հավանություն տվել դրանց և այժմ ավելի մեծ եռանդով պայքարում են նոր հնգամյա պլանի կենսագործման համար։

Ճիշտ են բաշխված կուսկազմակերպության ուժերը. 64 կոմունիստ զբաղված են դաշտավարությամբ, 19-ը՝ անասնապահական ֆերմաներում, 3-ը՝ շինարարությունում, մնացածը մասնագետներ և այլ աշխատանք կատարողներ են։ Գլխավորն այն է, որ բոլոր կոմունիստները ավանգարդում են ու եռանդով, ազնվորեն են կատարում իրենց պարտականությունները։ Հանրային արտադրության առաջավորներից են կոմունիստներ՝ Գ. Մանուկյանը, հնձվոր Հ. Սահակյանը, մեխանիզատոր Լ. Մանուկյանը, օղակավար Վ. Լևոնյանը, բրիգադիր Ն. Աբրոյանը։ Վերջինիս բրիգադան 1965 թվականին ծխախոտի պլան-

տացիայի յուրաքանչյուր հեկտարից, պլանային 22 ցենտների փոխարեն, ստացել է 30 ցենտներ հումք, իսկ ծխախոտագործուհի Ն. Ջիրոյանն 100 թելամետրի փոխարեն օրական քաղել ու շարել է 170—180 թելամետր ծխախոտ:

Վարդենիկի կոլտնտեսությունում երկրորդ տարին է, ինչ կուսբյուրոյի քարտուղար է ընտրվում բրիգադավար, սոցիալիստական աշխատանքի հերոս Վաչագան Գասպարյանը. նրա բրիգադան առաջավոր է: Չնայած բնակլիմայական անբարենպաստ պայմաններին, բրիգադան 1965 թ. հեկտարից ստացել է. կարտոֆիլ՝ 240, ծխախոտ՝ 32,5, հացահատիկ՝ 25 ցենտներ:

Վ. Գասպարյանը պահանջկոտ ղեկավար է, զգայուն և հոգատար ընկեր, ազնիվ կոմունիստ: Նա ՍՄԿԿ XXIII համագումարի պատգամավոր էր և այժմ համագյուղացիները մեծ սիրով ու հետաքրքրությամբ են լսում համագումարի որոշումների մասին նրա զրույցները:

Կուսակցական կազմակերպության լավ աշխատանքի շնորհիվ Վարդենիկի կոլտնտեսությունը (նախագահ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ս. Խաչատրյան) նոր վերելք է ապրում: 1965 թ. կոլտնտեսության դրամական եկամուտը հասավ 1 միլիոն 100 հազար ռուբլու (1964 թ. 820 հազարի փոխարեն), մեկ աշխօրի արժեքը՝ 2 ռուբ. 87 կոպեկի, մինչդեռ 1964 թվականին 1 ռուբ. 96 կոպեկ էր, կարտոֆիլի մեկ հեկտարի միջին բերքը կազմեց 200, իսկ ծխախոտինը՝ 23,5 ցենտներ: Լուրջ հաջողություններ են ձեռք բերվել նաև անասնապահական մթերքների արտադրության բնագավառում: Մեկ կովի կաթնատվությունը, 1964 թվականի համեմատությամբ, ավելացավ 110 կիլոգրամով, կոլտնտեսությունը գերակատարեց պետությանը գյուղատնտեսական բոլոր մթերքների վաճառքի պլանները:

Նշանակալի արդյունքների են հասել նաև հանրապետության ուրիշ շատ տնտեսությունների կուսկազմակերպությունները: Չնայած դրան, կան սկզբնական կուսկազմակերպություններ, որոնք հիմտորեն չեն ներգործում տնտեսությունների գործերի վրա, չեն ապահովում առաջադրված խնդիրների հաջող լուծումը:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կուսակցության Ամասիայի, Էջմիածնի, Մեղրու, Եղեգնաձորի և այլ շրջանային կոմիտեներ դեռևս անհրաժեշտ ղեկավարություն և օգնություն ցույց չեն տալիս սկզբնական կուսկազմակերպություններին, չեն բարձրացնում նրանց դերն ու պատասխանատվությունն արտադրության կազմակերպման ու ղեկավարման, աշխատավորության շրջանում տարվող կազմակերպական ու քաղաքական աշխատանքն ուժեղացնելու գործում: Նշված կոմիտեների պատասխանատու աշխատողներն երբեմն չեն թափանցում կազմակերպության գործունեության մեջ, հանդես են գալիս միայն թերությունների արձանագրողի դերում, ակտիվ չեն միջամտում նրանց գործերին, չեն օգնում լուծելու առաջադրված խնդիրները:

Պետք է ասել, որ կուսակցության առանձին շրջկոմներ դեռևս լուրջ հետևություններ չեն արել ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան և նոյեմբերյան (1964) պլենումների որոշումներից, շարունակում են աշխատել հին ձևով, չափից ավելի են տարվում նիստերով ու խորհրդակցություններով, թերագնահատում են տեղերում տարվող կենդանի կազմակերպչական աշխատանքը: Կուսակցության Ամասիայի շրջանային կոմիտեն ու նրա քարտուղարները (Հ. Հակոբյան, Ա. Համզաև) մերթ հետևողական չեն գործում, տեղի որոշ կուսակցական աշխատողները փորձում են փոխարինել տնտեսական ղեկավարներին, հաճախ



կաշկանդելով վերջիններիս նախաձեռնությունն ու ինքնուրույնությունը: Շրջանային կոմիտեի անբավարար ղեկավարության հետևանքով մի շարք կազմակերպություններում (Գյուլլիբուլաղ, Օխչօղլի, Գյոլլի և այլն) ցածր է կուսակցական-կազմակերպական, գաղափարական աշխատանքի մակարդակը: Գյոլլիի կոլտնտեսությունում, օրինակ, ցածր է կարգապահությունը. կոմունիստների զգալի մասը չի կատարում կանոնադրական պահանջները, թույլ է պահանջկոտությունը կադրերի նկատմամբ: Կուսակցական կազմակերպության ժողովներում բազմիցս քննարկվել են ինչպես աշխատանքային կարգապահության, այնպես էլ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը վերաբերող հարցեր, բայց որոշումները մնացել են թղթի վրա. վիճակը չի փոխվել և՛ կուսկազմակերպությունում, և՛ կոլտնտեսությունում:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների ղեկավարությունը դեռևս անբավարար է իրականացնում Եղեգնաձորի շրջանային կոմիտեն: Ալայաղի, Աղքենդի, Բոլորաբերդի և մի շարք այլ գյուղերի կուսկազմակերպություններում գործերը բարվոք վիճակում չեն: Նրանք վատ են իրականացնում իրենց ղեկավար և ուղղություն տվող դերը, հանդես չեն բերում ակտիվություն ու նախաձեռնություն, թույլ են ներգործում տնտեսությունների արտադրական գործունեության վրա, ցածր է կադրերի պատասխանատվությունը:

Այս ամենի պատճառներից մեկն այն է, որ այդ կազմակերպությունների մեծ մասում կոմունիստների 80—90 տոկոսը զբաղված է ղեկավար պոստերում, մնացած մասն էլ, թեպետ աշխատում է արտադրության մեջ, բայց ավանգարդային դերում չէ: Այս ամենը բացասական ազդեցություն է թողել գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանների կատարման վրա ոչ միայն հիշյալ տնտեսություններում, այլև ամբողջ շրջանում:

Նման թերություններն անհանդուրժելի են: Անհրաժեշտ է, որ կուսակցական կոմիտեներն արմատապես բարելավեն սկզբնական կուսակցական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունն ու ղեկավարությունը, դրանք դարձնեն ավելի կոնկրետ ու գործնական, ավելի նպատակասլաց ու անմիջական: Ըստ որում, հարկավոր է ամեն կերպ բարձրացնել կուսակցական կոմիտեի աշխատողների պատասխանատվությունը:

ՍՄԿԿ XXIII համագումարում տրված հաշվետու զեկուցման մեջ, խոսելով կուսակցության ամրապնդման և նրա կազմակերպական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին, ՍՄԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Բոլոր կուսակցական օրգանների պարտականությունն է անդուլ հոգատարություն ցուցաբերել սկզբնական կուսկազմակերպությունների նկատմամբ: Անհրաժեշտ է, որ կուսակցական կոմիտեները մշտապես կապված լինեն սկզբնական կուսկազմակերպությունների հետ, որ շրջանային, քաղաքային, մարզային կոմիտեները և միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների կենտկոմների ղեկավար աշխատողները կանոնավոր կերպով լինեն կուսկազմակերպություններում, զրուցեն, խորհրդակցեն կոմունիստների հետ և նրանց առջև հանդես գան զեկուցումներով»:

Կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ կուսակցական ղեկավարման պրակտիկայից իսպառ դեն նետել պարադայնությունը, աղմկարարությունը, պոռոտախոսությունը, թղթամոլությունն ու նիստարարությունը՝ որպես ղեկավարման լենինյան ոճին խորթ երևույթներ, դաստիարակել մարդկանց կուսակցական բարձր սկզբունքայնության ոգով: Գործը պետք

է կազմակերպել այնպես, որ սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես գտնվեն կուսակցական կոմիտեների տեսադաշտում, նրանց օպերատիվ ղեկավարություն ցույց տրվի, ժամանակին լուծվեն բարձրացվող հարցերը։

Դրա համար, ամենից առաջ, հարկավոր է հոգալ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների դերի բարձրացման մասին։ Որքան գիտակ ու փորձված, ձեռներեց ու գործունյա է քարտուղարը, այնքան մարտունակ է կուսկազմակերպությունը, այնքան լավ է իրականացնում ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իր իրավունքները, կադրերի ընտրության և դաստիարակման, մասսաներին կազմակերպելու իր պարտականությունները։ Ուստի, անհրաժեշտ է կազմակերպել սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների սիստեմատիկ ուսուցում։

Կուսակցության Երևանի և Լենինականի քաղաքային, Հոկտեմբերյանի, Ստեփանավանի, Սևանի, Ղափանի և մի շարք շրջանային կոմիտեներ սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների համար ստեղծել են մշտական գործող դպրոցներ, ուր ուսումնասիրվում են արդյունաբերության, գյուղատնտեսության էկոնոմիկայի, կուսակցական-կազմակերպական ու գաղափարական աշխատանքի մի շարք հարցեր։ Բացի այդ, նշված կուսակցական կոմիտեներին առընթեր ստեղծված են նաև մեթոդական խորհուրդներ, որոնց նպատակն է ընդհանրացնել ու տարածել սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի լավագույն փորձը։

Այժմ, երբ կյանք է մտնում նոր հնգամյակը, անչափ մեծանում է կուսկազմակերպությունների դերը։ Նրանցից պահանջվում է ուժեղացնել աշխատավորների քաղաքական ու գաղափարական դաստիարակությունը, ամրապնդել կարգապահությունը բոլոր օղակներում, ամեն կերպ բարձրացնել մարդկանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։

Հայաստանի կոմկուսակցության XXIV համագումարը ընդգծեց, որ կուսակցական կազմակերպությունների գործունեությունը պետք է համապատասխանի ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանով առաջադրված նոր խնդիրների մակարդակին. դրանք անթերի կենսագործելու համար կուսակցական կոմիտեները պետք է կատարելագործեն իրենց ղեկավարման ձևերն ու մեթոդները, ապահովեն սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը։

Հայաստանի կոմունիստները, հանրապետության բոլոր աշխատավորները մեծ խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿԿ XXIII համագումարի պատմական որոշումները։ Կուսակցության քաղկոմների, շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է յուրաքանչյուր աշխատողին հասկանալի դարձնել ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների իմաստն ու բովանդակությունը, գլխավորել մասսաների հարաճուն քաղաքական ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը համագումարի առաջադրած մեծ խնդիրները լուծելու համար։

ԱՆԴՐ. ՍԱՐԳՍՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՇԱՐՔԵՐՆ ԸՆԴՈՒՆԵԼ ԱՄԵՆԱԼԱՎԱԳՈՒՅՆՆԵՐԻՆ

Կոմունիստական կուսակցության վեհ նպատակները և դրանց իրականացման պայքարի դժվարությունները պահանջում են, որ կուսակցության մեջ լինեն կայուն և կոմունիզմի գործին նվիրված մարտիկներ։

Կուսակցության անդամության հարցը կուսակցական շինարարության արմատական հարցն է։ Կուսակցության համախմբվածությունը, քաղաքական գիծը և, վերջին հաշվով, հենց նրա բախտը կախված է այն բանից, թե ովքեր են կուսակցության անդամները։

ՍՄԿԿ XXIII համագումարն ամենայն որոշակիությամբ ընդգծեց, որ սոցիալիզմի մեծ հաղթանակների ասպարեզում ՍՄԿԿ պատմական դերը, նրա բարձր հեղինակությունը, բնականաբար, սովետական շատ մարդկանց մեջ ձգտում է հարուցում գաղափարապես ու կազմակերպորեն իրենց կյանքը կապել կուսակցության հետ և այն նվիրել հասարակության վերափոխման, կոմունիզմի հաղթանակի համար մղվող հեղափոխական պայքարին։

Կուսակցության մեջ յուրաքանչյուր ընդունվողին ներկայացվող բարձր պահանջները բխում են սովետական ժողովրդի նկատմամբ ունեցած մեծ հոգատարությունից։ Կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների կյանքի օրենքը պետք է լինի, նշվեց կուսակցության XXIII համագումարում, հոգատարությունը կուսակցության շարքերի անաղարտության նկատմամբ, այն բանի նկատմամբ, որ ամեն մի կոմունիստ արժանապատվությամբ կրի և արդարացնի լենինյան կուսակցության անդամի վեհ կոչումը։

ՍՄԿԿ շարքերն ընդունվողներին ներկայացվող պահանջները բարձրացնելու նպատակով համագումարը սահմանեց, որ մինչև 23 տարեկան հասակի երիտասարդները կուսակցության մեջ են ընդունվում միայն ՀամԼԿԵՄ-ի միջոցով։ Դա կբարձրացնի կոմերիտմիության դերը՝ որպես կուսակցության ռեզերվի, կնպաստի կուսակցության մեջ ընդունելու երիտասարդության առավել ակտիվ մասը, որը ՀամԼԿԵՄ-ի շարքերում դաստիարակության դպրոց է անցել։ Կանոնադրությամբ սահմանվեց նաև, որ կուսակցության մեջ ընդունվելու համար երաշխավորագրեր տալու իրավունք վերապահել ոչ թե երեք, այլ առնվազն հինգ տարվա կուսակցական ստաժ ունեցող կոմունիստներին։ Համագումարը միևնույն ժամանակ որոշեց, որ կուսակցությունից հեռացնելու մասին սկզբնական կուսակցական կազմակերպության որոշումը ուժի մեջ է մտնում կուսակցության համապատասխան շրջկոմի, քաղկոմի կողմից այն հաստատվելուց հետո։ Այդ որոշումը վերջնական է համարվում ճիշտ այնպես, ինչպես վերջնական է համարվում նրանց որոշումը կուսակցության մեջ ընդունվելու

վերաբերյալ։ Դա կբարձրացնի կուսակցության շրջանային, քաղաքային կոմիտեների պատասխանատվությունը կուսակցության որակական կազմի բարելավման ուղղությամբ։

Հայաստանի կոմկուսակցության Երևանի Սպանդարյանի շրջանի սկզբնական կուսակցական կազմակերպությունները և շրջանային կոմիտեն ղեկավարվելով կուսակցության ցուցումներով, խստիվ պահպանել են ՍՄԿԿ-ի մեջ ընդունելության անհատական ընտրության սկզբունքը, բազմակողմանի ստուգել կուսակցական շարքերն ընդունվողների անձնական հատկանիշները։ Նրանք, ինչպես ցույց են տալիս փաստերը, զգալի չափով բարելավել են ՍՄԿԿ շարքերի ընդունելության և երիտասարդ կոմունիստների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքները։ Վերջերս շրջանային կոմիտեի պլենումը քննության առնելով կուսակցության մեջ ընդունելության ու երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի բարելավման հարցը, կոնկրետ որոշում ընդունեց այդ գործում եղած թերությունները վերացնելու համար։ Դա մեր շրջանի կուսակցական կազմակերպությունների գլխավոր հարցերից մեկն է։ Պետք է նկատի ունենալ, որ Սպանդարյանի շրջանում են կենտրոնացված հանրապետության գրեթե բոլոր բարձրագույն ուսումնական հաստատությունները, գիտահետազոտական ու նախագծային ինստիտուտների զգալի մասը և, բնականաբար, այստեղ երիտասարդ կոմունիստները համեմատաբար մեծ տոկոս են կազմում։

Վերջին երկու տարվա ընթացքում շրջանում կուսակցության մեջ են ընդունվել 1896 հոգի, որոնցից կուսակցության անդամության թեկնածու 869 հոգի և կուսակցության անդամ 1027 հոգի։ Այժմ շրջանում հաշվվում են մոտ հինգ հարյուր կուսակցության անդամության թեկնածուներ։

Բարձր է կուսակցության մեջ ընդունվողների քաղաքական-կրթական մակարդակը։ Կուսակցական շարքերի աճն ու որակական կազմի բարելավումն առաջին հերթին տեղի է ունենում ի հաշիվ ուսման և արտադրության առաջավորների, գիտության բնագավառի աշխատողների և ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչների։ Կուսակցության մեջ նոր ընդունվածների 20 տոկոսից ավելին կանայք են։ Նրանց երկու երրորդը բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ են։ Կուսակցության մեջ ընդունելության և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքով շրջանային կոմիտեն զբաղվում է սիստեմատիկաբար։ Այդ գործում մեզ օգնեց «Կուսակցության մեջ ընդունելության և երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործում Խարկովի մարզային կուսակցական կազմակերպության աշխատանքներում եղած լուրջ թերությունների մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քարտուղարության հայտնի որոշումը։

Խղճի մտոք կարող ենք ասել, որ շրջանի կուսակցական կազմակերպությունները, որպես կանոն, իրենց շարքերն են ընդունում մեր կուսակցության գործին նվիրված արժանավոր և լավագույն ընկերներին։ Բայց դա չի նշանակում, թե բոլոր նոր ընդունվողները լիովին կազմակերպված ու պատրաստված են։ Նրանք գաղափարական-քաղաքական կոփվածությունը հիմնականում ձեռք են բերում թեկնածուական ժամանակաշրջանում, պրակտիկ աշխատանքում, կուսակցական կյանքին ակտիվորեն մասնակցելու շնորհիվ։ Ուստի, շատ կարևոր է, որպեսզի սկզբնական կուսակցական կազմակերպությունները մշտապես հետևեն յուրաքանչյուր երիտասարդ կոմունիստի աշխատանքին ու վարքագծին, և ոչ միայն հետևեն, այլև նպաստեն, որ նրանք դառնան լենինյան կուսակցության իսկական մարտիկներ։



Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես սկզբնական կուսակցական կազմակերպությունները մանրակրկիտ ուսումնասիրություն և ընտրություն են կատարում, ձգտելով կոմունիստի բարձր կոչմանն արժանացնել միայն ու միայն լավագույններից լավագույնին։ Նրանք ամենօրյա հետևողական աշխատանք են տանում երիտասարդ կոմունիստների գաղափարական-քաղաքական դաստիարակության նպատակով։

Այս տեսակետից բնորոշ է Երևաննախագիծ ինստիտուտի սկզբնական կուսակցական կազմակերպության օրինակը։ Վերջին երկու տարում այս մեծ կոլեկտիվից կուսակցության մեջ են ընդունվել շուրջ երկու տասնյակ երիտասարդ մասնագետներ՝ բոլորն էլ կոմերիտմիության շարքերից։ Նրանք ինստիտուտի հասարակական-քաղաքական կյանքի ակտիվ մասնակիցներ և կազմակերպիչներ են։

Երիտասարդ ճարտարապետ Արսեն Մելիքյանը մինչև կուսակցության անդամության թեկնածու ընդունվելը գլխավորում էր ինստիտուտի կոմերիտական կազմակերպությունը։ Կուսակցական կոլեկտիվում Մելիքյանն ավելի աճեց և հասավ ավագ ճարտարապետի աստիճանին։ Նա միաժամանակ գլխավորում է ինստիտուտի արհմիութենական կազմակերպությունը և սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի անդամ է։ Ընկ. Մելիքյանն իր անձնական օրինակով հասարակական ակտիվ աշխատանքի է ներգրավել բազմաթիվ մասնագետների։ Հասարակական կարգով կազմած նրանց նախագծերով մայրաքաղաքում վեր են խոյացել մի շարք գեղեցիկ շենքեր։ Ճարտարապետների խումբը, երիտասարդ կոմունիստ Արսեն Մելիքյանի գլխավորությամբ, հասարակական հիմունքներով սկսել է նախագծել Կոնգոյի երիտասարդության պալատը։ Ինստիտուտի երիտասարդ, խոստումնալից ինժեներ-կոնստրուկտորներից է Թամարա Հայրապետովան, որը կուսակցության անդամության թեկնածուական ժամանակաշրջանում իր լավագույն աշխատանքի համար արժանացավ հանրապետության Գերագույն սովետի պատվոգրին։

Այդ ինստիտուտում աճել և կուսակցության շարքերն է ընդունվել Խաչիկ Մուրադյանը, որն այժմ արշավախմբի պետ է։ Նա ակտիվ կոմունիստ է, փորձառու մասնագետ, լավ կազմակերպիչ ու հասարակական ճարտարապետական արվեստանոցի ակտիվ մասնակից։ Բնական է, բոլորին թվարկել հնարավոր չէ։ Բայց անհրաժեշտ է խոսել ուսանելի այն աշխատանքի մասին, որ կատարվում է «Երևաննախագիծ» ինստիտուտի սկզբնական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ-ի շարքերի աճի և երիտասարդ կոմունիստների դաստիարակության բնագավառում։

Այժմ այստեղ կուսակցության անդամության յուրաքանչյուր թեկնածու և երիտասարդ կոմունիստ կուսակցական բյուրոյի, նրա քարտուղար Շմավոն Ազատյանի ուշադրության կենտրոնում է։ Գործնական օգնություն ցույց տալով կուսանդամության թեկնածուներին, կուսբյուրոն կոնկրետ հանձնարարությունների միջոցով կրկին ու կրկին ստուգում է նրանցից յուրաքանչյուրի անձնական հատկանիշները, մշտապես հսկում տրված հանձնարարությունների կատարմանը։ Դրա հետ միասին երիտասարդ կոմունիստներն ակտիվորեն ներգրավվում են կուսակցական կազմակերպության բյուրոյի և ժողովների հարցերի նախապատրաստմանն ու քննարկմանը։ Կուսակցական կազմակերպու-

թյունում կարգ է սահմանվել՝ յուրաքանչյուր ժողովում հակիրճ հաղորդում լսել այն մասին, թե այս կամ այն երիտասարդ կոմունիստն աշխատանքում ինչպես է իրեն դրսևորում, որի շուրջը ծավալվում է մտքերի աշխույժ փոխանակություն։ Պարբերաբար ժողովների քննարկմանն են դրվում երիտասարդ կոմունիստների ինքնահաշվետվությունները, նրանց համար կազմակերպվում են զեկուցումներ, զրույցներ կուսակցության անցած ուղու և մեր ժամանակի հրատապ հարցերի շուրջ։

Կուսակցության մեջ ընդունելության և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի լավ օրինակ է ցույց տալիս ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի սկզբնական կուսակցական կազմակերպությունը։ Ինստիտուտի բոլոր երիտասարդ կոմունիստները և կոմերիտականները ընդգրկված են հասարակական ակտիվ աշխատանքի, նրանցից շատերը պրոպագանդիստներ են և միևնույն ժամանակ հանրապետության շրջաններում ու քաղաքներում տարբեր հարցերի շուրջ հանդես են գալիս դասախոսություններով ու զեկուցումներով։ Ինստիտուտի երիտասարդ կոմունիստներն ամենաակտիվ մասնակցություն են ցուցաբերում ինչպես միութենական, այնպես էլ հանրապետական մասշտաբով կազմակերպվող գիտական կոնֆերանսներին ու սեմինարներին։ Վերջերս նրանց նախաձեռնությամբ անցկացվեց Երևան քաղաքի երիտասարդության գիտական կոնֆերանս՝ տնտեսագիտության տարբեր հարցերի շուրջ։

Աշխատանքի դրական փորձ է կուտակել նաև Կլարա Ցետկինի անվան կարի առաջին ֆաբրիկայի սկզբնական կուսակցական կազմակերպությունը։ Այստեղ երիտասարդության հետ տարվող հետևողական աշխատանքի շնորհիվ վերջին երկու տարվա ընթացքում ՍՄԿԿ շարքերն են ընդունվել արտադրության 8 առաջավորներ, որոնք միաժամանակ ակտիվորեն մասնակցում են ֆաբրիկայի հասարակական կյանքին։

Կուսակցության մեջ ընդունելության և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի լավագույն օրինակներ կարելի է բերել նաև շրջանի բազմաթիվ այլ սկզբնական կուսակցական կազմակերպություններից։ Սակայն բերված օրինակներն էլ ինքնըստինքյան ցույց են տալիս, որ շրջանի սկզբնական կուսակցական կազմակերպություններում, հատկապես վերջին շրջանում, այդ ուղղությամբ որոշակի աշխատանք է կատարվում։

Եթե կուսակցության շարքերի որակական կազմի բարելավման հարցը վերլուծենք ըստ էության, ապա կտեսնենք, որ շրջանի սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքում դեռևս կան լուրջ թերություններ ու բացեր։

Առաջին և հիմնական թերություններից մեկը պետք է համարել այն, որ մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններ անտեսում են կուսակցության այն որոշակի պահանջը, ըստ որի մեր շարքերի աճը հիմնականում պետք է կատարվի կոմերիտմիության անդամների հաշվին։ Անցած երկու տարվա ընթացքում կուսակցության մեջ ընդունված 1896 հոգուց միայն 360-ն են կոմերիտականներ։ Այս փաստը անհանդուրժելի է հատկապես այն կազմակերպությունների համար, որտեղ կոլեկտիվի հիմնական կորիզը կազմում է երիտասարդությունը։ Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտում միայն 1965 թ. կուսակցության մեջ որպես թեկնածու են ընդունվել 13 հոգի, որոնցից միայն 6-ն են կոմերիտական։ Բժշկական ինստիտուտի սանիտարական-հիգիենիկ ֆակուլտետում կուսակցության շարքերի աճը կոմերիտմիու-



թյունից կազմում է 37 տոկոս, իսկ գյուղատնտեսական ինստիտուտում՝ 50 տոկոս։ Նման վիճակ չնչին տարբերությամբ գոյություն ունի նաև մի շարք այլ կազմակերպություններում։ Ստեղծված դրությունը, իհարկե, չի կարող անհանդստություն չպատճառել։

Արդյո՞ք կուսակցության մեջ ընդունելության գործի նկատմամբ բարեհոգության և անպատասխանատվության արդյունք չէ՞ այն, որ վերջին երկու տարվա ընթացքում մեր շրջանում կուսակցության շարքերն ընդունված չորս երիտասարդ կոմունիստներ զանազան հանցանքների և զանցանքների համար վտարվել են կուսակցությունից, իսկ նրանցից երկուսը ենթարկվել են քրեական պատասխանատվության։

Ջրմուղ-կոյուղու տրեստի սկզբնական կուսակցական կազմակերպությունը վերջին երկու տարում ՍՄԿԿ շարքերն է ընդունել 8 ընկերների, որոնցից միայն մեկն է կոմերիտական կազմակերպության երաշխավորությամբ, և դա այն դեպքում, երբ այդ հիմնարկությունում կան 70-ից ավելի կոմերիտականներ, որոնցից շատերը արտադրության առաջավորներ են և հասարակական ակտիվ աշխատողներ։ Այդ 8-ը ընկերների թվում կուսակցության մեջ ընդունվեց նաև Գուրգեն Սիմոնյանը, որը նախկինում խուլիգանության և գողության համար երկու անգամ դատապարտված է եղել ազատազրկման։ Կուսակցության մեջ ընդունվելուց հետո Գ. Սիմոնյանի ձեռքերն ավելի ազատ արձակվեցին և, գործարքի մեջ մտնելով հանցագործ տարրերի հետ, պետական միջոցներից յուրացրեց 320 ռուբլի, որի համար ժողովրդական դատարանի կողմից երրորդ անգամ արդեն դատապարտվեց մեկ տարվա հարկադիր աշխատանքի։

Իհարկե, կուսակցության շրջկոմի բյուրոյի որոշմամբ Գ. Սիմոնյանը վտարվեց կուսակցության շարքերից, բայց արժե այստեղ երկու խոսք ասել սկզբնական կուսակցական կազմակերպության բռնած դիրքի մասին։ Գ. Սիմոնյանի նկատմամբ քրեական գործ հարուցվելուց հետո սկզբնական կուսակցական կազմակերպությանը հայտնի է դառնում նաև, որ նա կազմակերպությունից թաքցրել է իր նախկին կրկնակի դատապարտվածության հանգամանքը։ Թվում էր թե կազմակերպությունը հիմա արդեն իր վճռական խոսքը կասեր կուսակցության շարքերը պատահական կերպով ընդունված մարդու նկատմամբ։ Բայց զուր, Գ. Սիմոնյանի նկատմամբ ցուցաբերվեց զարմանալի «մեծահոգություն»։ Կազմակերպությունը նրան հայտարարեց խիստ նկատողություն և զգուշացրեց, որ իր հետագա գործունեության ընթացքում այլևս նման «սխալներ» թույլ չտա։

Թվում էր, թե այս փաստը որոշակի դաս կլիներ Ջրմուղ-կոյուղու տրեստի սկզբնական կուսակցական կազմակերպության համար։ Բայց հակառակ մեր սպասածի, այս կազմակերպությունում կրկին դրսևորվեց կուսակցության շարքերն ընդունելու նկատմամբ ցուցաբերվող վերին աստիճանի անպատասխանատու վերաբերմունքը։ 1965 թվականի հունվարին կուսակցության թեկնածու ընդունվեց նույն հիմնարկի աշխատող Կարլեն Գալստյանը. ինչպես հետագայում պարզվեց, նա արժանի չէր կուսակցության շարքերում լինելու։ Սկզբնական կուսակցական կազմակերպությունը, նրա բյուրոն, քարտուղարները և, հատկապես, Կ. Գալստյանին կուսակցության մեջ թեկնածու ընդունվելու համար երաշխավորող ընկերները թեթևակի վերաբերմունք են հանդես բերել։ Երաշխավորողները նույնիսկ բառեր չեն խնայել գովերգելու Կ. Գալստյանի

այսպես կոչված աշխատանքային «հաջողությունները» և իրենց համար բոլո-
րովին անհայտ նրա կենցաղը, վարքն ու բարքը:
Որպեսզի կուսակցության շարքերը համալրվեն ի հաշիվ լավագույն մարդ-
կանց, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է ավելի խոր
թափանցեն մարդկանց գործունեության մեջ, անկուսակցականներին մասնա-
կից դարձնեն կուսակցական դռնբաց ժողովներին, հոգ տանեն նրանց գաղա-
փարական-քաղաքական և հանրակրթական մակարդակի բարձրացման համար:
Կուսակցական ղեկավարները պետք է ամեն օր շփվեն ոչ միայն կոմունիստ-
ների, այլև անկուսակցականների հետ, խորապես գիտենան աշխատավորնե-
րի պահանջներն ու կարիքները:
Այնպիսի պատասխանատու գործում, ինչպիսին կուսակցության մեջ ըն-
դունելությունն է, միանգամայն անհանդուրժելի է շտապողականությունը և
մակերեսայնությունը: Կուսակցության մեջ ընդունելության նկատմամբ ոչ լուրջ
վերաբերմունքը ի վերջո վարկաբեկում է ընդունող կազմակերպության հեղի-
նակությունը:
Շրջանի սննդառի սկզբնական կուսակցական կազմակերպությունը պար-
տիայի անդամության թեկնածու էր ընդունել Ս. Խաչատրյանին: Նրան իրենց
երաշխավորություններով խիստ դրական էին բնութագրել կոմունիստներ
Ա. Մկրտչյանը, Բ. Պետրոսյանը և մանրածախ առևտրի բազայի նախկին դի-
րեկտոր, ներկայումս կուսակցությունից վտարված Մ. Զադոյանը: Ի դեպ,
Ս. Խաչատրյանն աշխատում էր Մ. Զադոյանի գլխավորած բազայում որպես
պահեստապետ: Գործարքի մեջ մտնելով վաճառող Ա. Կարապետյանի, բազայի
նախկին գլխավոր հաշվապահ Ն. Յավրոյանի և Մ. Զադոյանի հետ, նա բյու-
ջետային կազմակերպություններին բաց թողնվող մթերային ապրանքների
գները կոպիտ կերպով խախտելու միջոցով յուրացրել էր 26.800 ռուբլի:
Ս. Խաչատրյանը կուսակցության մեջ ընդունվելու պահին արդեն 38 տարեկան
էր, կոմերիտմիության մեջ չէր եղել և միանգամայն հասկանալի է, որ նա ձըգ-
տում էր մի կերպ խցկվել ՍՄԿԿ շարքերը և կուսակցական տոմսը օգտագործել
իր հետագա սև գործերի համար:
Իսկ ինչպե՞ս պատահեց, որ սննդառի սկզբնական կուսակցական կազմա-
կերպության կոմունիստները աչք փակեցին իրականության առաջ և քվեարկե-
ցին Խաչատրյանին կուսակցության անդամության թեկնածու ընդունելու օգ-
տին: Չէ՛ որ եթե այդ նույն կոմունիստներից առանձին-առանձին կարծիք հարց-
նելու լինես, մեծ մասը կասեին, որ Ս. Խաչատրյանը մեր կուսակցության հա-
մար անարժան մարդ է: Այստեղ առկա է բացարձակ անսկզբունքայնությունը,
որ նույնպես ունի իր պատճառները: Ս. Խաչատրյանին երաշխավորող կոմու-
նիստները, որոնք լուրջ պոստեր էին գրավում սննդառի սիստեմում, բառեր չեն
խնայել թվարկելու գոյություն չունեցող այն մեծ «ծառայությունները», որոնք,
ըստ իրենց, Ս. Խաչատրյանը մատուցել է առևտրի սիստեմին: Այսպես, օրի-
նակ՝ 1929 թվականից կուսակցության անդամ Ա. Մկրտչյանը գրում է. «Խա-
չատրյանը գրագետ, կարգապահ, բարեխիղճ և մեր կուսակցության համար
հասունացած ընկեր է»: «Խաչատրյանին երաշխավորում եմ, քանի որ համա-
տեղ աշխատանքի ժամանակ համոզվեցի, որ նա օրինակելի, պարտաճանաչ,
բարեխիղճ, վստահելի և համեստ աշխատող է: Համոզված եմ, որ Խաչատրյանը
բարձր կպահի կոմունիստի անաղարտ կոչումը և իր գործով ու աշխատանքով
կապացուցի իր նվիրվածությունը»: Մ. Զադոյանը, որին զգալի բաժին էր հա-



սել յուրացրած միջոցներից, իր երաշխավորության մեջ գրում է. «Խաչատրյանը տիրապետում է իր աշխատանքին, տրված հանձնարարությունները կատարում է ժամանակին, նպաստում ապրանքաշրջանառության պլանների կատարմանը, հետաքրքրվում քաղաքական և հասարակական կյանքով, կարդում քաղաքական և գեղարվեստական գրականություն, կոլեկտիվում ունի համակրանք, բուռն ցանկություն ունի կուսակցության շարքերն ընդունվելու»:

Կուսակցության շրջանային կոմիտեի բյուրոն, իհարկե, չհաստատեց սննդառի կուսակցական կազմակերպության որոշումը և Խաչատրյանին չընդունեց կուսակցության անդամության թեկնածու: Պատահական չէ, որ Խաչատրյանը պետական խոշոր միջոցներ յուրացնելու համար ձերբակալվեց:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է ամենայն լրջությամբ և պահանջկոտությամբ վերաբերվեն յուրաքանչյուր երաշխավորության նկատմամբ, դրանով իսկ բարձրացնեն երաշխավորողի պատասխանատվությունը: Միայն այսպիսի սկզբունքային մոտեցման շնորհիվ հնարավոր է բարելավել կուսակցության որակական կազմը:

Կուսակցության շարքերում ընդունելություն կատարելիս, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ կոմունիստի կոչման անարժան մարդկանց ՍՄԿԿ-ի մեջ ընդունելու նույնիսկ եզակի փաստերը վարկաբեկում են կուսկազմակերպություններին:

Շրջանում քիչ չեն այն երիտասարդ կոմունիստները, որոնք իրենց ուսման, արտադրական ցուցանիշներով և հասարակական ակտիվ գործունեությամբ ցույց են տալիս ստեղծագործական աշխատանքի հիանալի օրինակ: Սակայն կան նաև այնպիսիները, որոնք ետ են մնում և ինչպես հարկն է չեն արդարացնում կոմունիստի բարձր կոչումը: Դրա պատճառն այն է, որ առանձին սկզբնական կազմակերպություններ կուսակցության շարքերն ընդունելով նոր անդամներ ու թեկնածուներ, երբեմն պատշաճ հոգատարություն չեն ցուցաբերում նրանց դաստիարակության և արտադրության մեջ ավանգարդային դերի բարձրացման գործում: Դա հասցրեց նրան, որ կուսակցությունից կազմակերպորեն կտրվելու, անդամավճար չմուծելու, աշխատանքում և ուսման մեջ չառաջադիմելու, կոմունիստին անվայել վարքագիծ դրսևորելու համար երկու տարում շրջանում կուսակցության անդամության թեկնածուներից հեռացվել կամ դուրս են մնացել 17 հոգի: Միայն 1964 թվականին շրջանի բուհական կուսակցական կազմակերպություններից թեկնածուական ժամանակաշրջանում իրենց չարդարացնելու համար կուսակցությունից դուրս են մնացել 7 հոգի, որոնցից երեքը՝ պոլիտեխնիկական ինստիտուտից:

Բարձրագույն դպրոցների որոշ կուսակցական կազմակերպություններում առանձին ուսանող կոմունիստներ և կուսակցության անդամության թեկնածուներ ուսման մեջ ոչ միայն չեն ապահովում իրենց ավանգարդային դերը, այլ նույնիսկ չեն առաջադիմում: Ուսանող կոմունիստների առաջադիմությունը հատկապես ցածր է բժշկական, պոլիտեխնիկական ինստիտուտներում և պետական համալսարանի որոշ ֆակուլտետներում:

Գրեթե նույն վիճակն է (փոքր տարբերությամբ) նաև շրջանի մյուս բարձրագույն ուսումնական հաստատություններում:

Մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ անհրաժեշտ աշխատանք չեն տանում երիտասարդ կոմունիստների հետ: Այդ է պատճառը, որ երիտասարդ կոմունիստների մի մասն սկսում է կտրվել կուսակցական կյանքից ու

կոլեկտիվից, շեղվում է ճիշտ ուղուց, թույլ տալիս հակահասարակական արարքներ և նույնիսկ դառնում հանցագործ։ Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի 4-րդ կուրսի ուսանող, կոմունիստ Կամո Ստեփանյանը միևնույն ժամանակ աշխատում էր կենցաղ սպասարկման կոմբինատում՝ որպես գիշերային պահակ։ Իր ծառայական պարտականությունները կատարելու հետ մեկտեղ նա սիստեմատիկաբար զբաղվում էր գողությամբ։ Տարբեր ժամանակներում նա ֆաբրիկայից գողացել էր զգալի քանակությամբ նյութական արժեքներ, որի համար ժողովրդական դատարանի կողմից դատապարտվեց ազատազրկման։

Ինչպես անասնաբուժական ֆակուլտետի սկզբնական կուսակցական կազմակերպությունը, այնպես էլ ինստիտուտի կուսակցական կոմիտեն, Ստեփանյանի նկատմամբ ցուցաբերեցին վնասակար մեծահոգություն։ Ինստիտուտի կուսակցական կոմիտեում Կ. Ստեփանյանի հարցի քննարկման ժամանակ պարզվեց նաև, որ նա ոչ վաղ անցյալում հանրակացարանում թույլ տված խուլիգանական արարքի համար ենթարկվել է վարչական տույժի։ Այնուամենայնիվ, նշված փաստերի առկայության դեպքում էլ, ինչպես սկզբնական կուսակցական կազմակերպությունը, այնպես էլ ինստիտուտի կուսակցական կոմիտեն որոշեցին Կ. Ստեփանյանին թողնել կուսակցության շարքերում, հայտարարելով նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում։ Պարզ բան է, որ նման վերաբերմունքը չի նպաստում երիտասարդ կոմունիստների դաստիարակմանը, նրանց դերի ու պատասխանատվության բարձրացմանը։

Կուսակցության շրջանային կոմիտեն և սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է այսուհետև ևս առանձնահատուկ ուշադրություն նվիրեն երիտասարդ կոմունիստների գաղափարական դաստիարակությանը և հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր երիտասարդ կոմունիստ հաստատահասնեն այն բանին, որ յուրաքանչյուր երիտասարդ կոմունիստ հաստատակամորեն տիրապետի մարքս-լենինյան տեսությանը, ակտիվորեն մասնակցի կուսակցական ու հասարակական կյանքին և իր վարքով օրինակ լինի շրջապատի մարդկանց համար։

Վ. ՇԱՀԲԱԶՅԱՆ
ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի
քարտուղար



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԷՆԵՐԳԵՏԻԿԱՆ ԱՅՍ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Ա. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ

ՀՍՍՀ պետպլանի էներգետիկայի և վառելիքի բաժնի վարիչ

Սովետական պետության առաջին տարիներին, երբ երկիրը քայքայված էր, Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս էլեկտրիֆիկացիային՝ ԳՈԷԼՌՈ-ի պլանը համարելով մեր կուսակցության II ծրագիրը։ Այն նախատեսված էր 10—15 տարվա համար. կառուցվելու էին 20 ջերմաէլեկտրակայան և 10 հիդրոէլեկտրակայան 1,5 միլիոն կիլովատ ընդհանուր կարողությամբ, տարեկան 8,8 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիայի արտադրանքով։

Ձնացած պատմական ժամանակաշրջանի դժվարին պայմաններին, մեր երկրի աշխատավորները շահեցին ԳՈԷԼՌՈ-ի պլանի կենսագործման համար մղած ճակատամարտը։ ԳՈԷԼՌՈ-ի պլանում խտացված մտքերն ու ելակետային դրույթներն իրենց զարգացումը գտան սոցիալիստական շինարարության հետագա փուլերում։ 1965 թվականին էլեկտրաէներգիայի կարողությունը հասավ 507 մլրդ կիլովատ ժամի։

Սկսած 1963 թվականից, ամեն տարի շարք մտած էլեկտրակայանների կարողությունը 6,5 անգամ ավելի է, քան նախատեսված էր ԳՈԷԼՌՈ-ի 10—15 տարվա համար կազմված պլանով։ Այդ միևնույնն է, թե երկու օրը մեկ գործադրության դրվի մեկ Վոլխովգէս՝ ԳՈԷԼՌՈ-ի պլանի առաջնեկ հիդրոէլեկտրակայանը։ Մեր օրերում Բրատսկգէսի միայն մի ագրեգատը 3,5 անգամ ավելի էլեկտրաէներգիա է տալիս, քան Վոլխովգէսը, իսկ Կրասնոյարսկգէսի նախագծային կարողությունը ԳՈԷԼՌՈ-ի պլանով նախատեսված բոլոր էլեկտրակայանների կարողությունից 3,3 անգամ ավելի է լինելու։ Մոտ ժամանակներս այնտեղ կտեղակայվեն 500 հազար կվտ կարողություն ունեցող առաջին հիդրոագրեգատները։ ՍՍՀՄ-ում, 1966 թվականից սկսած, կգործեն 12 ջերմաէլեկտրակայան, յուրաքանչյուրն ավելի քան մեկ միլիոն կվտ կարողությամբ։ Մեր էլեկտրատնտեսության զարգացման խոշոր հաջողությունները հնարավորություն ընձեռեցին պատմական կարճ ժամանակամիջոցում էլեկտրիֆիկացնել արդյունաբերության բոլոր ճյուղերը, կոմունալ տնտեսությունը, քաղաքային բնակչության կենցաղը, երկաթուղային տրանսպորտը և գյուղատնտեսական արտադրության նշանակալի մասը։ Էլեկտրաէներգիայով ապահովված է կոլտնտեսությունների ու սովխոզների 90 տոկոսը։

ՍՄԿԿ ծրագրում պարզորոշ ասված է, որ էլեկտրիֆիկացիան կոմունիստական հասարակարգի էկոնոմիկայի կառուցման առանցքն է և առաջատար դեր է խաղում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման ասպարեզում, ժամանակակից տեխնիկական առաջընթացում։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի լայն էլեկտրիֆիկացումը կբազմապատկի աշխատանքի էլեկտրազինվածությունը, պայմաններ կստեղծի ներդնելու բարձրարտադրողական նոր ավտոմատ սիստեմներ ու ագրեգատներ։ Դրանք կբարձրացնեն աշխատանքի արտադրողականությունը, մարդուն կազատեն ֆիզիկական ծանր աշխատանքից, առավել չափով կբարելավեն սովետական մարդկանց սանիտարա-հիգիենիկ ու տեխնիկական պայմանները։

Մեր երկրի առջև կոնկրետ խնդիրներ են դրված. 1970 թվականին էլեկտրաէներգիայի տարեկան արտադրանքը հասցնել 850 միլիարդ կիլովատ ժամի։

Սովետական Միության էլեկտրաէներգիայի զարգացման հեռանկարային ժամանակաշրջանի գլխավոր ուղղությունը (երկրի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների) էներգամատակարարման լիովին կենտրոնացումն է։ Այդ նշանակում է՝ խոշոր տնտեսական շրջաններում և եղբայրական հանրապետություններում միասնական էներգետիկ սիստեմների ստեղծում և միաձուլում Սովետական Միության էներգետիկ ընդհանուր սիստեմին։ Նոր հնգամյա պլանի համաձայն կառուցվելու են խոշորագույն ջերմաէլեկտրակայաններ, որոնց յուրաքանչյուր ագրեգատը կունենա 500—800 (և ավելի) հազար կիլովատ ընդհանուր կարողություն։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում հիդրոռեսուրսների կոմպլեքսային օգտագործման նպատակով կկառուցվեն հզոր և օգտավետ հիդրոէլեկտրակայաններ մի քանի հազարից մինչև մեկ միլիոն կիլովատ կարողություն ունեցող ագրեգատների տեղակայումով։ Բարձր լարման էլեկտրացանցերի շինարարության և էլեկտրահաղորդման բանող գծերը կփոխարկվեն լարման ավելի բարձր աստիճանի՝ 220—330—500 կիլովոլտի. երկար տարածությունների վրա էլեկտրական մեծ կարողություններ հաղորդելու նպատակով, առաջիկայում կգործարկվի հաստատուն և փոփոխական հոսանքով 700 կիլովատ լարում. մի քանի հարյուր հազարից մինչև մեկ միլիոն կիլովոլտ ամպեր կարողության տրանսֆորմատորների և անհրաժեշտ էլեկտրատեխնիկական սարքավորումների ստեղծում, որոնք կապահովեն հուսալի և անընդմեջ էլեկտրամատակարարումը։ Էլեկտրաէներգիայի այդպիսի վիթխարի զարգացումը պահանջում է երկրի միասնական էներգետիկ սիստեմի ու նրա օղակների աշխատանքային հստակ ռեժիմի սահմանում, ավտոմատացման վերահսկողության և կառավարման միջոցների հետագա արմատավորում ու զարգացում, ինֆորմացիոն և կառավարող էլեկտրոնային-հաշվիչ սարքավորումների, մեքենաների ու դրանց սիստեմների ներդրում։

ՍՄԿԿ XXIII համագումարը մեծ ուշադրություն նվիրեց երկրի էներգետիկ բազայի զարգացմանը։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի վերաբերյալ համագումարի դիրեկտիվներում (1966—1970 թթ.) ասված է, որ էլեկտրաէներգիայի առաջանցիկ զարգացման համար անհրաժեշտ է՝ գործադրության մեջ դնել 64—66 մլն կվտ նոր կարողություններ, հիմնականում 2,4 մլն կվտ և ավելի կարողությամբ խոշոր կոնդենսացիոն ջերմաէլեկտրակայանների կառուցման միջոցով։ Այդտեղ տեղակայել գերազանցապես էներգետիկ բլոկներ, որոնցից յուրաքանչյուրի կարողությունը 300 հազար կվտ է։ Միաժամանակ, նպատակադրվում է նոր տեխնիկական լուծումների ներդրման և մեծ կարողություն ունեցող հիդրոտուրբինների (500—550 հազար կվտ) տեղակայմամբ բարձրացնել տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Դիրեկտիվներում ասված է՝ երկրի արևելյան շրջաններից կենտրոնական շրջանները մեծ չափերի էլեկտրաէներգիա փոխանցելու համար նախապատրաստական աշխատանքներ տանել։

Ընկ. Ա. Ն. Կոսիգինն իր զեկուցման մեջ նշեց, որ վերոհիշյալ նպատակի իրականացման համար անհրաժեշտ է սկսել 1,5 մլն վոլտ լարվածության հաստատուն հոսանքի էլեկտրահաղորդիչ գծերի շինարարությունը։ Խնդիր է դրված ներկա հնգամյակում ստեղծել ՍՍՀՄ եվրոպական մասի միասնական էներգետիկ սիստեմ։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1970 թվականին կհասնի 830—850 մլրդ կվտ ժամի։ Աշխատանքի էներգազինվածությունը արդյունաբերության մեջ կավելանա 1,5, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 3 անգամ։ Էլեկտրամատակարարման կենտրոնացված աղբյուրների հաշվին զգալի չափով կընդլայնվեն կոլտնտեսությունների ու սովխոզների էլեկտրիֆիկացման աշխատանքները։ Այդ նպատակով նախատեսվում է 1,5 անգամ մեծացնել 35 կիլովոլտ և ավելի լարվածություն ունեցող էլեկտրացանցերի երկարությունը, իսկ գյուղական վայրերում, մինչև 20 կիլովոլտ լարվածություն ունեցող էլեկտրացանցերինը՝ 2 անգամ։

Նկատի առնելով այս, նախատեսվում է էլեկտրաէներգիայի ռացիոնալ օգտագործման և նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման հաշվին հնգամյակի ընթացքում 6—8 տոկոսով իջեցնել էլեկտրաէներգիայի ծախսման նորմաները։

Դիրեկտիվներում նախատեսված է երկրում զգալի չափով զարգացնել նավթի և գազի արդյունաբերությունը։ 1970 թվականին նավթի և գազի բաժինը վառելանյութի ընդհանուր արտադրանքում կհասնի 60 տոկոսի։

Մեր հանրապետության ժողտնտեսության բոլոր ճյուղերի բուռն վերելքը նույնպես անքակտելիորեն կախված է էլեկտրաէներգիայի զարգացումից։ Հայաստանում սովետական իշխանության հաստատման 45 տարիների ընթացքում կառուցվել են տասնյակ խոշոր ու միջին հիդրոէլեկտրակայաններ, այդ թվում՝ Սևան—Հրազդան կասկադի՝ հիդրոէլեկտրակայանների հիդրոտեխնիկական շինարարության եզակի նմուշը։

Հայկական ՍՍՀ-ում էլեկտրիֆիկացված են բոլոր քաղաքները, բանավանները, կոլտնտեսություններն ու սովխոզները։ Էլեկտրաէներգիայի զարգացումը հնարավորություն ընձեռեց հանրապետությունում ստեղծելու արդյունաբերության այնպիսի կարևորագույն ճյուղեր, ինչպիսիք են քիմիական, հանքագործական, գունավոր մետալուրգիայի, մեքենաշինական, էլեկտրա և ռադիոտեխնիկական, սարքաշինական և այլն։ Հաջողություններն ակնհայտ են նաև գյուղատնտեսության, շինարարության, քաղաքային և երկաթուղային տրանսպորտի էլեկտրիֆիկացման բնագավառում։ Աղստաֆա—Աթարբեկյան էլեկտրահաղորդման մագիստրալային գծի շնորհիվ հայկական էներգետիկ սիստեմը կապվեց Անդրկովկասի միավորյալ սիստեմին։ Այդ հնարավորություն ստեղծեց, որ Հայաստանը եղբայրական Ադրբեջանից ստանա անհրաժեշտ քանակությամբ էլեկտրաէներգիա։

*Հիդրոէներգետիկայի հետագա զարգացման հետ մեկտեղ հանրապետությունում մեծ թափ է ստացել էլեկտրական և ջերմային էներգիա արտադրող կոմբինացված ջերմաէլեկտրակայանների կառուցումը, դրա շնորհիվ հանրապետության էներգետիկան կզարգանա այնպիսի թափով, որը համեմատաբար քիչ կապիտալ ներդրումներով կբավարարի հանրապետության էներգետիկայի կարիքները։*

*Երևանի, Կիրովականի և Հրազդանի ջերմային էլեկտրակայանները, ինչպես և Արփա գետի ջրերը Սևանա լիճը տանող օբյեկտների շինարարությունը թույլ կտան պահպանելու Սևանա լճի մակերեսի համեմատական բարձր մակարդակը։*

*Երբ ավարտվի Երևանի ջերմաէլեկտրակենտրոնի շինարարությունը 550 հազար կիլովատ կարողությամբ, այն ավելի շատ էլեկտրաէներգիա կարտադրի, քան 1962 թվականին մաքսիմալ չափով արտադրել են Սևան—Հրազդան կասկադի և հանրապետության մյուս գետերի վրա կառուցված հիդրոէլեկտրակայանները միասին վերցրած։*

*Անցած տարիներին հանրապետությունում պատրաստվել են հազարավոր բարձրորակ մասնագետ-էներգետիկներ, որոնք հաջողությամբ աշխատում են ոչ միայն էներգետիկայի, այլև հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Նրանց ստեղծագործ աշխատանքի շնորհիվ հանրապետության գրեթե բոլոր էլեկտրակայաններն ու խոշոր էլեկտրաենթակայաններն ավտոմատացված ու հեռամեխանիզացված են։ Գոյություն ունեցող և գործադրության մեջ դրվող էներգետիկ նոր օբյեկտները, ինչպես և ջերմաէլեկտրակայանները ևս պետք է ավտոմատացվեն ու հեռամեխանիզացվեն։*

*Էներգասիստեմի ավտոմատացում ու հեռակառավարում նշանակում է՝ տնտեսության բոլոր ճյուղերի անընդմեջ էներգամատակարարում։ Ավտոմատացմամբ ու հեռակառավարմամբ թեթևանում են էլեկտրակայանների էլեկտրոբացանցերի աշխատանքի պայմանները։ Իսկ էներգետիկ օբյեկտները, հատկապես ջերմաէլեկտրակայանները, դառնում են մաքուր, լուսավոր, նորագույն տեխնիկայով հագեցած խոշոր արտադրական կենտրոններ, ուր յուրաքանչյուր փոքր հանգույցի, ագրեգատի ու սարքավորման աշխատանքը վերահսկում և կարգավորում են ավտոմատ սարքերն ու մեխանիզմները։*

*Այդ կհանգեցնի էներգետիկ օբյեկտներում տեղակայված հզորությունների մաքսիմալ օգտագործմանը, սարքավորումներում եղած թերությունների ժամանակին վերացմանը և սարքավորման վթարների լիկվիդացմանը։ Իսկ այդ ամենը պայմաններ կստեղծեն, որպեսզի էներգետիկ օբյեկտներն աշխատեն տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով։*

*Տեխնիկա-տնտեսական նախնական ուսումնասիրության համաձայն Հայկական ՍՍՀ-ի էլեկտրաէներգիայի պահանջը 1970 թվականին սահմանված է 8,9 մլրդ կվտ ժամ։*

*Հայաստանը հարուստ չէ ջրային ռեսուրսներով։ Էլեկտրաէներգիայի արտադրության համար քիչ թե շատ ձեռնտու էներգաաղբյուրներ են Որոտան և Դեբետ գետերը։ Իսկ մյուս գետերը էական նշանակություն չունեն իրենց ցածր արդյունավետության պատճառով։*

*Որոտան կասկադի հիդրոէլեկտրակայանները՝ Տաթևը, Շամբը և Սպանդարյանը, իրենց օրական, սեզոնային և տարեկան կարգավորումով ունեն 405 հազար կվտ կարողություն և տարեկան 1150 մլն կվտ ժամ էլեկտրաէներգիայի հնարավոր արտադրանք։ Դեբեդի կասկադի՝ Շնողի, Լոռիբերդի և Արմանիսի հիդրոէլեկտրակայանների օրական և սեզոնային կարգավորման կարողության ունակությունը 296 հազար կվտ է, իսկ էլեկտրաէներգիայի հնարավոր արտադրանքը՝ 900 մլն կվտ ժամ։ Հաշվի առնելով նշված օբյեկտների շինարարության արագացման հնարավորությունները, էլեկտրաէներգիայի արտադրանքը 1970 թվականին կկազմի 0,9 մլրդ կվտ ժամ (եթե Տաթև և Շամբ գետերը շահագործման հանձնվեն) և 1975-ին վերոհիշյալ բոլոր կասկադները շահագործման հանձնվելու դեպքում՝ 2,05 մլրդ կվտ ժամ։*

*Այսպիսով, Հայկական ՍՍՀ-ի վերը նշված բոլոր էլեկտրակայանների էներգիայի հնարավոր արտադրանքը 1970 թվականին կկազմի 8,05, 1975-ին՝ 10,8 մլրդ կվտ ժամ։*

*Ուստի, էլեկտրաէներգիայի պակասը 1970 թվականին կլինի 850, իսկ 1975-ին՝ 4700 մլն կվտ ժամ։ Պակասը վերացնելու համար անհրաժեշտ է որոնել էներգիայի նոր աղբյուրներ։*

*Ջերմային էներգետիկ նախնական հետազոտումները, ինչպես և Անդրկովկասի ու Հյուսիսային Կովկասի ջերմային էներգետիկ օբյեկտների շինարարության պայմանները ցույց են տալիս, որ էլեկտրաբալանսի հարցում մեզ պետք է վառելանյութի միջոցով էլեկտրաէներգիա արտադրող նոր էներգետիկ օբյեկտների շուտափույթ կառուցում ու գործադրում։*

*Այսպիսով, 1970 թվականի էլեկտրաէներգիայի պակասը կարելի է վերացնել Որոտանի հիդրոէլեկտրակայանների՝ Տաթևի, Շամբի արագ կառուցմամբ ու գործարկմամբ Հրազդանի ջերմաէլեկտրակայանի (600 հազար կվտ կարողությամբ), երեք կոնդենսացիոն ագրեգատների (յուրաքանչյուրը 200 հազար կվտ հզորությամբ) շահագործմամբ, առաջին երկուսը 1969 թվականի առաջին և երկրորդ եռամսյակներում, երրորդը՝ ոչ ուշ, քան 1970 թվականի երկրորդ եռամսյակում։ Նպատակահարմար է հետագայում այդ ջերմաէլեկտրակայանը զարգացնել այնպիսի ուղղությամբ, որ դրա հզորությունն ավելանա ևս 600 հազար կվտ-ով։*

*Այս հնգամյակում անհրաժեշտ է սկսել և ավարտել նաև Սպանդարյանգէսի՝ Որոտան կասկադի գլխային կայանի շինարարությունը, որի շնորհիվ կկառուցվի Սպանդարյանի ջրամբարը և հնարավորություն կընձեռվի այդ կասկադի հիդրոէլեկտրակայանների ունակությունն ավելացնել ավելի քան երկու անգամ։ Հանրապետության առջև խնդիր է ծառանում՝ 1969 թ. սկսել Շնողգէսի (Դեբեդի կասկադ, 185 հազար կվտ կարողությամբ) շինարարությունը և այն ավարտել 1973 թվականին։*

*Հաշվի առնելով էլեկտրաէներգիայի պակասը Անդրկովկասում ու Հայաստանում 1970 թվականից հետո, անհրաժեշտ կլինի առաջիկա հնգամյակում կառուցել ևս մեկ նոր էլեկտրակայան (ներմուծված վառելանյութով), որի առաջին հերթի կարողությունը պետք է լինի 600 հազ. կվտ-ից ոչ պակաս և կգործարկվի՝ 1971—72 թվականներին։*

*Էներգետիկ ռեսուրսների անպայման ապահովումը հանրապետության կարևորագույն խնդիրն է։ Միաժամանակ, պակաս կարևոր չէ ապահովել դրանց ռացիոնալ և ճիշտ օգտագործումը։ Այս տեսակետից անհրաժեշտ է ճիշտ զարգացնել հանրապետության ջերմամատակարարման, էլեկտրամատակարարման և վառելիքի ցանցային օբյեկտները։*

*Յոթնամյակի տարիներին (1959—65 թթ.) հանրապետությունում մեծ թափ*

ստացավ էլեկտրացանցերի (էլեկտրաենթակայանների և էլեկտրահաղորդման գծերի) զարգացումը։ Չնայած դրան, անհրաժեշտ է ընդգծել, որ հանրապետությունում էներգասիստեմի ցանցը անբավարար կապի մեջ է Անդրկովկասի ընդհանուր էներգասիստեմի հետ։

Առաջիկա հնգամյակում անհրաժեշտ է կանխատեսել այդ սիստեմը կապող ես մեկ էլեկտրահաղորդման ուղի, ինչպես նաև՝ հանրապետության 6, 10, 35, 110, 120 կիլովոլտ լարվածության էլեկտրացանցերի է՛լ ավելի զարգացում։ Մինչև 1963 թվականը հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների ու կոմունալ կենցաղային պահանջների ջերմամատակարարումը կենսագործվել է արդյունաբերական ձեռնարկությունների, կոմունալ օբյեկտների ու բնակելի շենքերի կաթսայական տեղակայումներից։

Հետագայում արդյունաբերական ձեռնարկություններին ջերմային էներգիայի զգալի մասը մատակարարել են Կիրովականի և Երևանի ջերմաէլեկտրակենտրոնները։ Սակայն պետք է նշել, որ ջերմաէլեկտրակենտրոնները կարող էին ավելի շատ ջերմություն թողարկել, եթե անհրաժեշտ լիներ ջերմուղիների ջերմաբեռնվածքի (тепловая нагрузка) առկայությունը, ինչպես նաև ջերմաէլեկտրակենտրոնների կաթսային ագրեգատների ժամանակին ներմուծումն ու յուրացումը։

Անհրաժեշտ է այս հնգամյակում արագացնել ջերմուղիների շինարարությունը՝ ջերմաէլեկտրակենտրոններից մինչև արդյունաբերական ձեռնարկությունները, ինչպես և կոմունալ-կենցաղային նպատակով սպառողները։ Էներգետիկայի բոլոր ճյուղերի զարգացման վիթխարի խնդիրների լուծումը էներգետիկայի հարցով զբաղվող կազմակերպություններից պահանջում է բարելավել կազմակերպական, տեխնիկական ու գիտահետազոտական գործերը։ Էներգետիկայի բնագավառի զարգացմանը նվիրված բոլոր մշակումները, որոնք գիտական խոր հիմք ունեն, պետք է ստեղծվեն կոմպլեքսային եղանակով և գերազանցապես ապահովեն հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացումը։

Այդ նպատակով անհրաժեշտ է բարելավել նախագծային հետազոտական աշխատանքները, բարձրացնել դրանց որակը և ապահովել ժամանակին կատարումը։ Հատուկ ուշադրություն նվիրել էներգետիկ օբյեկտների շինարարության որակին, էներգետիկ նոր հզորությունները շահագործման հանձնել օժանդակ օբյեկտներով և առանց թերությունների։

Այսպիսով, էներգետիկայի զարգացման նպատակով նոր հնգամյակի նախատեսած խոշոր ներդրումները վկայում են, որ նորանոր կարողությունների յուրացմամբ ՍՍՀՄ ողջ էկոնոմիկան ու տեխնիկան կստանան ամուր և հուսալի հիմքեր՝ նոր թափով առաջ մղելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման գործը։ Կասկածից վեր է, որ հնգամյա պլանի վիթխարի կանխագծումների իրագործմամբ, անհամեմատ կաճի մեր մեծ հայրենիքի հզորությունը, հզորություն, որի հիմքում դրված է էներգետիկայի հաստատուն բազան։





# ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

Ա. ՌՈՒԽԿՅԱՆ

Դոկտոր, պրոֆեսոր

Մեր երկրում անասնաբուծական մթերքների առատություն ստեղծելու հիմնական ազդակներից մեկը գյուղատնտեսական կենդանիների մթերատվության բարձրացումն ու վերարտադրության միջոցով ցեղային կենդանիների գլխաքանակի ավելացումն է։

ՍՄԿԿ XXIII համագումարն ընդգծեց, որ հանրային անասնապահության արդյունավետության բարձրացման նպատակով անհրաժեշտ է «ամրապնդել տոհմաբուծական տնտեսությունները և տոհմաբուծական աշխատանքի ու կենդանիների արհեստական սերմնավորման կայանները, կազմակերպել բարձրարժեք տոհմային անասունների ճիշտ աճեցումը և լավագույն օգտագործումը»։

Ընդունված է ասել, որ անասնաբուծական մթերքների արտադրության առաջադրանքներն անթերի կատարելու համար հարկավոր է լավ կերակրել և խնամել անասուններին։ Անասնաբուծության ամբողջ պատմությունը, ինչպես նաև զոոտեխնիկական գիտության նվաճումները հաստատում են, որ այդ դրույթը չի կարելի միակողմանիորեն կիրառել, քանի որ ոչ բոլոր կենդանիներն են միևնույն բարենպաստ պայմաններում նույն քանակի մթերքներ տալիս։

Դրա պատճառն այն է, որ նրանց ժառանգականությունը միանման չէ և այդ իսկ տեսակետից տարբեր կենդանիների ընտրողականությունը կենսապայմանների հանդեպ լինում է տարբեր, որի հետևանքով նրանց բիոլոգիական ու տնտեսական հատկություններում դրսևորվում է մեծ փոփոխականություն։ Հետևաբար, անասունների կերակրման ու խնամքի բարելավման հետ մեկտեղ, պետք է կիրառվեն տոհմաբուծական այնպիսի միջոցառումներ, որոնք հիմնականում վերափոխեն ժառանգական տիպը և մի շարք հետագա սերունդներում ապահովեն ցեղի կատարելագործումը՝ ընտրված ուղղությամբ։ Այդ խնդիրները կարելի է լուծել միայն ժամանակակից գենետիկայի սկզբունքներով մշակված տոհմաբուծության կոմպլեքս միջոցառումների կիրառմամբ։

Ժառանգականության ու նրա փոփոխականության մասին գիտությունը կուտակել է բազմաթիվ փաստեր և հաստատել ծնողական հատկությունները

սերունդներին փոխանցվելու օրինաչափությունները։ Սակայն հանրահայտ է, որ ժառանգականության ուսմունքի մեջ գոյություն ունեն տարբեր ուղղություններ և իրար հակասող տեսակետներ։ Գյուղատնտեսական կենդանիների տոհմաբուծությամբ զբաղվող սելեկցիոներների առջև ծառացած է տեսական առաջնակարգ մի խնդիր՝ ինչպես վարել ժառանգականության և փոփոխականության օրինաչափությունները, որպեսզի հնարավոր լինի ստեղծել ժողովրդական տնտեսության պահանջներին համապատասխան, տվյալ բնակլիմայական պայմաններին լավ հարմարեցված ցեղեր։

Ժառանգականության և նրա փոփոխականության ուսմունքի կենսագործումը տոհմաբուծության մեջ ամենայն խորությամբ մշակված է մեր ականավոր գիտնականների՝ Պ. Ն. Կուլեշովի, Բոգդանովի, Մ. Ֆ. Իվանովի և այլոց աշխատություններում, ուր նշված են այն հիմնական եղանակներն ու մեթոդները որոնցով պետք է ղեկավարվի սելեկցիոները։

Առաջինը Չ. Դարվինը բազում փաստերով ապացուցեց, որ գյուղատնտեսական կենդանիների զարգացման պրոցեսի հիմնական գործոններն են՝ փոփոխականությունը, ժառանգականությունը և ընտրությունը։ Նա հաստատեց, որ օրգանիզմների փոփոխականությունը նրանց կենսապայմանների փոփոխման կամ տրամախաչման հետևանք է։ Այդ փոփոխություններից առաջացած նոր շեղումները՝ շնորհիվ իրենց ժառանգական բնույթի, չեն կորչում կամ չեն անհետանում, այլ փոխանցվում են հաջորդ սերունդներին։ Իսկ արհեստական ընտրության և զուգընտրության միջոցով ստացված սերնդի համապատասխան խնամքի դեպքում ցեղը կատարելագործվում է ցանկացած ուղղությամբ։ Առաջնորդվելով այս օրինաչափություններով՝ տոհմային անասնաբուծությունը նոր ցեղերի ստեղծման գործում հասել է մեծ հաջողությունների։

Անասնացեղերի տոհմային կատարելագործման ուղղությամբ մեր երկիրը ևս ունեցել է տեսական ու գործնական մեծ նվաճումներ։ Սովետական էկոնոմիկայի զարգացման շնորհիվ, միայն վերջին 30 տարիներում, ՍՍՀՄ-ի զանազան հանրապետություններում ու մարզերում ստեղծվել են տավարի, ոչխարի, խոզի, ձիերի ու թռչունների բարձր մթերատու հայրենական մոտ 60 նոր ցեղեր և մի քանի տասնյակ ցեղախմբեր, որոնց մեծ մասը լավագույնն են ամբողջ աշխարհում։ Այդպիսով, պատմականորեն անհամեմատ կարճ ժամանակամիջոցում մեր Միությունում հնարավոր դարձավ հիմնովին վերափոխել անասունների ցեղայնությունը, մոտավորապես 2—3 անգամ բարձրացնել գյուղատնտեսական կենդանիների մթերատվությունը։ Այդ գործում վճռական նշանակություն ունեցավ մեր երկրում գիտության ու տեխնիկայի զարգացումը, որը պայմանավորված է հասարակության հեղափոխական և կուլտուր-տեխնիկական վերափոխումներով։

Մարքսը վերլուծելով աշխատանքի պրոցեսը և խոսելով արտադրության միջոցների մասին, ասում է. Կենդանիները և բույսերը, որոնք սովորաբար դիտվում են իբրև բնության արդյունք, իրականում ոչ միայն առնվազն նախընթաց տարվա աշխատանքի արդյունք են, այլև իրենց այժմյան ցեղերով շատ սերունդների ընթացքում մարդու վերահսկողության տակ, մարդկային աշխատանքի միջոցով կատարված շարունակական կերպարափոխությունների արդյունք են։ Ուստի հիմք կա պնդելու, որ ցեղառաջացման և ցեղերի կատարելագործման հիմնական և առաջատար գործոնը ինքը մարդն է, նրա աշխատանքը, նրա տեխնիկան։ Իսկապես, բավական է վերացնենք մարդու աշխա-



տանքը, նույնիսկ միայն վատացնենք կերակրման ու խնամքի պայմանները, ցեղը կկորցնի բոլոր դրական հատկությունները և, ինչպես ասում են՝ կենթարկվի դեգեներացիայի։ Այլ կերպ ասած՝ տոհմային գործի ու ցեղերի կատարելագործման պրոցեսի զարգացումը միշտ շաղկապված է հասարակության արտադրական ու տեխնիկական ուժերի զարգացման հետ։

Քանի որ հասարակական արտադրական ուժերն անընդհատ զարգանում ու փոփոխվում են, ապա, ուրեմն, արտադրական պրոցեսի փոփոխությունը, գիտության ու տեխնիկայի զարգացումն ավելի ու ավելի մեծ պահանջներ են ներկայացնում անասնաբուծությանը, հետևապես գյուղատնտեսական կենդանիների ցեղերը նույնպես պետք է փոփոխվեն ու համապատասխանեն հասարակական արտադրության պահանջներին։

Նախկինում գիտակցական տոհմաբուծության մասին խոսք լինել չէր կարող, որովհետև գյուղատնտեսական կենդանիների վրա ավելի մեծ ազդեցություն է ունեցել բնական ընտրությունը, քան մարդու կողմից տարվող տարրական ընտրությունը։ Հետագա ֆորմացիաներում էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացմանը զուգընթաց, տոհմաբուծությունը կազմակերպվում է գիտական սկզբունքներով, կիրառելով տոհմային աշխատանքի բանական ձևերը՝ ընտրության և զուգընտրության ավելի հիմնավորված մեթոդներ, լիարժեք կերակրում, մթերատվության հաշվառում, տոհմագրություն։

Այդ տեսակետից Անգլիան ավելի շուտ, քան եվրոպական մյուս երկրները, բռնեց արդյունաբերության զարգացման ուղին, ստեղծելով հզոր արդյունաբերական կենտրոններ, որոնք հարուցեցին անասնաբուծական մթերքների, մասնավորապես թարմ մսի մեծ պահանջ։ XVIII դարի կեսերին Անգլիայում ստեղծվում են համաշխարհային հռչակ վայելող տավարի շորտհորն ցեղը, խոզերի սպիտակ խոշոր և սև վաղահաս ցեղերը, մսատվությամբ աչքի ընկնող ոչխարների մոտ երկու տասնյակ ցեղեր։

Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում իր հայտնի աշխատության մեջ Վ. Ի. Լենինը, խոսելով անասնաբուծության ինտենսիվացման մասին, գրում է. Տավարաբուծությունն այստեղ ստանում է կաթնատնտեսային ուղղություն, իսկ դաշտավարությունը ամբողջ իր բնույթով հարմարեցվում է նրա պահանջներին, որպեսզի հնարավոր լինի ստանալ ավելի մեծ քանակությամբ արժեքավոր մթերքներ։ Այդ ժամանակաշրջանում, ինչպես նշում է Լենինը, գյուղացիներն սկսում են զբաղվել ցեղերի բարելավմամբ, հոտերում կիրառում են ընտրություն, բարելավում կերակրումն ու խնամքը, ձեռք բերում կատարելագործված գյուղատնտեսական գործիքներ, աշխատում են կաթնամշակությունը դնել զուտ առևտրական հիմքերի վրա... Բույսերի սորտերը և կենդանիների հին ցեղերը, որոնք ստացվել էին բնական ընտրությամբ, փոխարինվում են բարելավվածներով՝ արհեստական ընտրությամբ։

Միայն Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո հնարավոր եղավ ՍՍՀՄ տոհմային գործը վարել գիտականորեն, ժամանակակից սելեկցիայի հիման վրա, երբ տոհմային կենդանիների բուծումը կազմակերպվեց պլանային ձևով։ 1918 թ., երբ մեր երկրի վրա բոլոր կողմերից հարձակվում էին ինտերվենտները, քաղաքացիական պատերազմում ոչնչացվում էին ժողովրդի ստեղծած հարստությունները, նույնիսկ այդ ծանր պայմաններում Լենինը անհրաժեշտ համարեց ուշադրություն դարձնել տոհմային անասնաբուծության վրա, մի-

ջոցներ ձեռք առնել այն կարգավորելու համար։ 1918 թ. հուլիսի 13-ին Լենինն ստորագրեց «Տոհմային անասնաբուծության մասին» առաջին դեկրետը։

Նպատակ ունենալով վերականգնել նրբագեղմ ոչխարաբուծությունը, սովետական կառավարությունը 1919 թ. հոկտեմբերի 3-ին, Վ. Ի. Լենինի ստորագրությամբ հրատարակեց դեկրետ՝ «Նրբագեղմ ոչխարաբուծության պահպանման և զարգացման մասին», որը պատմական նշանակություն ունեցավ մեր երկրում նրբագեղմ ոչխարաբուծության զարգացման համար։

Պրոֆ. Պ. Ն. Կուլեշովի և Մ. Ֆ. Իվանովի գիտականորեն հիմնավորված առաջարկությունների համաձայն քանակական թվականներին սկսվեց տեղական ցեղերի բարելավումը՝ տրամախաչման միջոցով։ Իր մասշտաբով վիթխարի, պատմության մեջ առաջին անգամ կիրառվող պետական միջոցառումներն իրագործելու համար անհրաժեշտ էր արտասահմանից ներմուծել մեծ քանակությամբ տոհմային կենդանիներ, մասնավորապես՝ արտադրողներ։

1925 —1931 թթ. տարբեր երկրներից, մասնավորապես Գերմանիայից, Անգլիայից, ԱՄՆ-ից, Ավստրալիայից, Արգենտինայից ՍՍՀՄ ներմուծվեցին մոտ 50 հազար գլուխ տավար, ավելի քան 150 հազար գլուխ նրբագեղմ ոչխար և մոտ 10 հազար գլուխ տոհմային խոզ, որոնք տեղաբաշխվեցին նոր կազմակերպված սովխոզներում։ 1934 թվականին տեղական ցեղերի և պլանային բարելավող ցեղերի կլանողական տրամախաչման միջոցով մեր երկրում արագ բարելավվեց անասունների ցեղայնությունը և առանձին հանրապետություններում ու մարզերում ստեղծվեցին տոհմային մեծ հոտեր։ Միայն 1935 թվականին մեր երկրի տարբեր հանրապետություններում ու մարզերում կազմակերպվեցին ավելի քան 200 տոհմաբուծարաններ։ Հետագա տարիներում ստեղծվեց տոհմաբուծության պլանային սիստեմ, որն օգնեց կոլտնտեսություններում ու սովխոզներում ստեղծելու տոհմային մեծ հոտեր, որոնք աչքի են ընկնում բարձր մթերատվությամբ և տոհմային արժանիքներով։

Ցեղի բարելավման ու մթերատվության բարձրացման միջոցառումներն ընդհանուր են սոցիալիստական բոլոր տնտեսությունների համար։ Բայց պետք է նկատել, որ տոհմային նպատակը տոհմային տնտեսություններում և ապրանքային ֆերմաներում, ըստ նրանց արտադրական նշանակության, բոլորովին տարբեր է։ Տոհմային տնտեսություններում նպատակը գոյություն ունեցող ցեղերի տոհմային հետագա կատարելագործումն է, նրանց ժառանգական հատկությունների ամրացումը՝ տոհմային մեծարժեք կենդանիներ աճեցնելու համար։ Մինչդեռ, ապրանքային ֆերմաներում և արդյունաբերական տնտեսություններում տոհմաբուծության հիմնական նպատակն է բուծել դիմացկուն և սակավապահանջ կենդանիներ, որպեսզի լավ կերակրման ու խնամքի պայմաններում հնարավոր լինի ցածր ինքնարժեքով հասնել բարձր մթերատվության։ Ուստի, ապրանքային ֆերմաներում հարկ չկա ձգտելու ժառանգականության ամրացման, քանի որ նման կենդանիների կենսունակությունը ցածր է։

Սակայն, չնայած, որ տոհմային աշխատանքների խնդիրներն ու նպատակները տոհմային ու ապրանքային տնտեսություններում տարբեր են, այնուամենայնիվ, ընդհանուր սկզբունքները տոհմային գործի պլանավորման ու կազմակերպման տեսակետից մնում են նույնը։ Այսպես՝ եթե անհրաժեշտ է տվյալ բնապատմական ու տնտեսական պայմաններին համապատասխան ընտրել ու բազմացնել ամենից ավելի ցանկալի արտադրական տիպի կենդանիներ, եթե երկար տարիների փորձը ցույց է տվել, որ այդ գոտում օգտակար



է տվյալ ցեղի բուծումը, ապա այդ ցեղի կատարելագործումը պետք է տարվի մի ընդհանուր միասնական պլանով թե՛ տոհմային և թե արդյունաբերական բոլոր տնտեսություններում։

Տոհմաբուծության առաջնակարգ խնդիրն է՝ ձգտել անասնաբուծության ընդունված տոհմային ուղղության ամրապնդմանը և հրաժարվել մի ցեղը մյուսով վաղաժամ փոխարինելուց։ Գյուղատնտեսական կենդանիների ցեղերի շրջանայնացումը ցեղերի պլանային որակական բարելավման անկյունաքարն է։

Իհարկե, ցեղերի շրջանայնացումը չի կարող անփոփոխ մնալ, այլ բավականին երկար ժամանակից հետո անհրաժեշտ է այն վերանայել ու ճշտել։ Սակայն, առանց հիմնավորման չի կարելի խախտել անասնաբուծության ընդունված ուղղությունը և ներմուծել բոլորովին այլ ցեղի անասուններ։

Եթե լուրջ դիտողություններ կան ցեղերի շրջանայնացման և տոհմային գործի ճշտման վերաբերյալ կամ նույնիսկ առաջարկվում է վերանայել այն, անհրաժեշտ է հաշվի առնել դրանք, բազմակողմանի ուսումնասիրել և դրանից հետո միայն ճշտումներ և փոփոխություններ կատարել։ Այժմ, Հայկական ՍՍՀ-ում լուրջ կարիք է զգացվում ցեղերի, մասնավորապես ոչխարաբուծության շրջայնացման պլանները ճշտելու, նկատի ունենալով կուսակցության և կառավարության վերջին որոշումները կիսանրբագեղմ ոչխարների բուծման վերաբերյալ։

Չնայած գիտականորեն հիմնավորված ցեղերի պլանային ընտրությունն ունի առաջնակարգ նշանակություն անասնաբուծության ցանկալի ուղղության զարգացման համար, այնուամենայնիվ, դրանով չեն որոշվում անասնաբուծության որակական բարելավման խնդիրները։

Մեր հանրապետությունում իբրև բուծման հիմնական մեթոդ մոտ 30 տարուց ավելի կիրառվում է միջցեղային տրամախաչումը. տարեցտարի աճում է խառնացեղ բարձր մթերատու կենդանիների գլխաքանակը, բայց դեռևս շատ քիչ գործ է արվում նույն հոտերում արտադրողների տոհմային արժեքը բարձրացնելու ուղղությամբ։ Ավելին, տոհմային շատ տնտեսություններում և, նույնիսկ արհեստական սերմնավորման կայաններում, վերարտադրության համար օգտագործում են այնպիսի շարքային արտադրողներ, որոնք այլևս լավացնել չեն կարող խառնածին մայրական կազմը։ Ո՛չ մի տնտեսությունում հանգամանորեն չի ուսումնասիրված արտադրողների կազմը ո՛չ ըստ անձնական հատկությունների և ո՛չ էլ ըստ ժառանգականության, իսկ ըստ սերնդի որակի, համարյա ոչ մի արտադրող չի գնահատված։ Տոհմային աշխատանքի բարելավման նպատակով պետք է շտապ կատարել ցուլերի, խոյերի, վարազների գնահատում ու պասպորտիզացիա, թե՛ տնտեսություններում և թե՛ սերմնավորման կայաններում թողնելով միայն բարձր ցեղայնություն ու տոհմային արժեք ունեցող արտադրողներ։ Անհրաժեշտ է մոտակա տարիներին հասնել այն բանին, որ պետական սերմնավորման կայաններին վաճառվեն միայն ըստ սերնդի գնահատված արտադրողներ։

Շատ շրջաններում մոտակա տարիներին կարելի է օգտագործել խառնածինների, մասնավորապես տավարի, հետագա վերափոխական տրամախաչման բուծման ձևը, որը հնարավորություն կտա ավելի բարձրացնելու նրանց ցեղայնությունն ու մթերատվությունը։ Սակայն, այժմ մենք ունենք այնպիսի շրջաններ ու տնտեսություններ, որտեղ հիմնականում հոտերը կազմված են բարձրարժեք խառնածիններից ու անհրաժեշտ է որոշել, թե ինչ ուղղությամբ

բուծել այդ կենդանիներին։ Մեր կարծիքով, եթե այդ խառնածինները համարվում են տնտեսապես և զոոտեխնիկական առումով ցանկալի ու հեռանկարային, ապա կարելի է արդեն անցնել, այսպես կոչված, բուծման՝ «ինքն իր մեջ» և կիրառելով համապատասխան ընտրություն ու զուգընտրություն, ստեղծել նոր, տեղական պայմաններին հարմարված բարձր մթերատու հոտեր։ Իհարկե, չի կարելի բոլոր խառնածինների հոտերը համարել նոր ցեղախումբ կամ ցեղ, բայց և այնպես պետք է սիստեմատիկաբար զբաղվել տոհմի բարելավմամբ։ Այդ նպատակով կատարված աշխատանքը պետք է համապատասխանի բուծվող ցեղի կամ նրանից ստացված խառնածին կենդանիների ժառանգականությանը, որպեսզի հնարավոր լինի հասնել բարձր մթերատվության ու պտղատվության։

Տոհմային գործի պլանավորման և վարման բնագավառում մեծ անելիքներ ունեն տոհմաբուծության և արհեստական սերմնավորման պետական կայանները, որոնք ընդգրկելով մի քանի շրջաններ, պետք է հանդիսանան տոհմային գործի կազմակերպման կենտրոնները տվյալ գոտում։ Այդ կայանների գլխավոր խնդիրներն են՝ տոհմային միջոցառումների կիրառմամբ կատարելագործել բուծվող ցեղը, և ապահովել տոհմային կենդանիների բազմացումը արհեստական սերմնավորման միջոցով, այն հաշվով, որ ապահովվի ցեղի կատարելագործումը անհրաժեշտ ուղղությամբ։ Ինչպես նախրի նորմալ վերարտադրության, այնպես էլ գյուղատնտեսական կենդանիների ցեղերի բարելավումն արագացնելու գործում ամենից մեծ արդյունք է տալիս արհեստական սերմնավորումը։ Այն մեծ նշանակություն է ստանում ո՛չ միայն ցածր մթերատու անասունների ցեղայնությունը վերափոխելու տեմպերի արագացման և արտադրողների ավելի ռացիոնալ օգտագործման, այլև խառնածին կենդանիների և նոր ցեղախմբերի կատարելագործման համար։ Վերջին դեպքում կպահանջվեն ոչ թե սոսկ լավացնող ցեղի արտադրողներ, այլ միայն ցանկալի տիպի այնպիսի բարելավողներ, որոնց որակը ճշտորեն ստուգված է նրանցից ստացված սերնդի որակով։

Տոհմային կայանների մասնագետները պետք է պատշաճ ուշադրություն նվիրեն տոհմային հաշվառմանը, մատղաշների աճեցմանը, մթերատվության բարձրացման միջոցառումների ճիշտ կիրառմանը։ Սակայն, վերջին տարիներս տոհմային հաշվառումը համարյա վերացել է և այդ, անկասկած, բացասական է անդրադարձել տոհմի բարելավման գործի վրա։ Անհրաժեշտ է ամենուրեք վերականգնել համապատասխան զոոտեխնիկական հաշվառումները, հանձնարարելով այդ տոհմային գործով զբաղվող մասնագետներին։

Այնպես պետք է կազմակերպել տոհմային հաշվառումը, որ հնարավորություն ստեղծվի կենդանիների ընտրության, զուգընտրության, արտադրող ցուլերն ըստ սերնդի որակի գնահատման, ազգակցական խմբերի և գծերի համատեղման, մատղաշների նպատակային աճեցման և տոհմային գործի հաջողությունը որոշող մի շարք այլ հարցերի արդյունքների բազմակողմանի և արագ վերլուծման համար։

Այժմ գիտության և արդյունաբերության ասպարեզում լայնորեն ներդրվում են հաշվարկային աշխատանքների մեքենայացման զանազան սիստեմներ։ Տոհմի հաշվառման կատարելագործված ձևերի և մեթոդների մշակումը՝ հաշվիչ մեքենաների օգտագործմամբ, հանդիսանում է տոհմային անասնապահության կազմակերպման ու վարման հրատապ խնդիրներից մեկը։

---

# ԾԱՂԿՈՒՄ Է ԱՆԱՊԱՏԸ


Ս. ԽԱՆՈՅԱՆ

Թալինի շրջանի Արագած այգեգործական սովխոզի դիրեկտոր


Տասը տարի առաջ էր։ Լենինականից Երևան տանող ճանապարհը ծածկված էր գորշ, սև քարերով, ամենուրեք ձգվում էր արևակեզ ու տոթակեզ տափաստանը. չոր լեռներ ու բլուրներ...

1956 թվական... անապատը լցվեց շինարար մարդու կենսատու աշխատանքով։ Կազմակերպվեցին բազմաթիվ սովխոզներ, այդ թվում նաև Արագած սովխոզը։

Անապատը պտղաբեր դարձնելու համար չկային անհրաժեշտ, մեքենաներ ու մեխանիզմներ։ Շատերը չէին հավատում, որ այդ քարքարոտ հողերը բերրի կդառնան, խաղողի վազ կաճի, բայց Արթիկի, Ապարանի, Թալինի շրջաններից վերաբնակեցվածները ձեռնամուխ եղան դարերով անպտուղ մնացած ղուրին կյանք տալու։

Հարյուրավոր հեկտար հողի մակերեսից քարերը մաքրելուց հետո այն շուռ տրվեց, և նորից քարերը հավաքվեց։ Դրանից հետո խոր վար կատարվեց. օրգանական պարարտանյութերի, առվույտի ցանքի շնորհիվ ստեղծվեց հողի պտղաբեր շերտ. պատրաստվեցին ձագարները՝ խաղողի վազերի և պտղատու ծառերի համար։ Սովխոզի բանվորների, ծառայողների և մասնագետների ջանքերով նվաճվեց անապատը։ Առաջին տարին տնկեցին 41 հեկտար խաղող և 35 հեկտար պտղատու ծառ, ստեղծվեց սեփական տնկարան։

Հետզհետե ընդարձակվեցին խաղողի, պտղատու այգիների և մյուս կուլտուրաների տարածությունները։ Այժմ սովխոզն ունի ավելի քան երկու հազար հեկտար հողամաս, որից հազարը՝ վարելահող է. 500 հեկտարը՝ խաղողի այգիներ են, իսկ 416-ը՝ պտղատու ծառեր։

Սովխոզը թևակոխել է իր տասնամյակը։ Նրա կազմակերպման տարիներին թե մեզ մոտ, և թե՛ վերադաս կազմակերպություններում կային մարդիկ, որոնք ասում էին, թե Արագածում այգեգործությամբ զբաղվել նշանակում է սանդում ջուր ծեծել։ Այսօր մեր կոլեկտիվը, բաց ճակատով, իր տնտեսությունն է հրավիրում այդ ընկերներին՝ ճաշակելու սովխոզում աճեցված արևահամ խաղողը, որը շամպայն գինիների արտադրության համար անփոխարինելի է։

Մեր սովխոզի կոլեկտիվի ջանքերով տարեցտարի ավելանում է խաղողի ու մրգի արտադրությունը։ 1963 թվականին արտադրվել և պետությանն է

հանձնվել 362 տոննա խաղող, 1964-ին՝ 603, իսկ 1965-ին՝ 1035 տոննա։ Սովխոզը ոչ միայն աչքի է ընկնում բարձր ցուցանիշների հասած իր այգեգործությամբ, այլև գյուղատնտեսության մյուս ճյուղերում ունեցած հաջողություններով։ Նախկին ամայի անապատն այսօր դարձել է հանրային անասնաբուծության օրինակելի տնտեսություն։ Սովխոզի կազմակերպման առաջին տարում մեկ կովի միջին կաթնատվությունը 500 լիտրից չէր անցնում (մեկ այծի կաթ), այսօր մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը եռապատկվել է, քառապատկվել։ Միայն 1965 թվականին արտադրվել է ավելի քան 680 ցենտներ կաթ կամ մեկ կովի միջին կաթնատվությունը հասել է մոտ երկու հազար լիտրի։

Առվույտի սերմ արտադրող լավագույն տնտեսություններից մեկը մեր սովխոզն է հանրապետությունում։ 1963 թվականին առվույտի սերմադաշտերի յուրաքանչյուր հեկտարից 1,5-ի փոխարեն ստացվեց 2,5 ցենտներ սերմ, իսկ 1965-ին՝ 2-ի փոխարեն՝ 3,5 ցենտներ։ Գերակատարվել են նաև բանջարաբոստանային կուլտուրաների, մսի և գյուղատնտեսական այլ մթերքների արտադրության առաջադրանքները։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի, ինքնարժեքի իջեցման շնորհիվ բարձրացել է տնտեսության շահութաբերությունը։ 1963 թվականին սովխոզը ստացել է 28886 ռուբլու օգուտ, 1964-ին՝ 112097, 1965-ին՝ 160000 ռուբլի։

Այս հաջողությունները ձեռք են բերվել սովխոզը տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդելու, դժվարությունները հաղթահարելու, հմուտ և իրենց գործը սիրող մասնագետներով տնտեսությունն ապահովելու շնորհիվ։ 15 բրիգադների բրիգադավարներն աշխատանքը զուգակցելով ուսման հետ, հեռակա կարգով ձեռք են բերել մասնագիտական, միջնակարգ և բարձրագույն կրթություն. բանվորներից շատերը միջնակարգ մասնագիտական կրթություն են ստանում երկրի տարբեր ուսումնարաններում և տեխնիկումներում։ Գլխավոր գյուղատնտես Ա. Կարապետյանը, գյուղատնտեսներ Ա. Բարսեղյանը, Ա. Գալստյանը, Ս. Նիկոյանը և ուրիշներ դարձել են իրենց գործը սիրող հմուտ մասնագետներ։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարի՝ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թ. հնգամյա պլանի դիրեկտիվներում նշված է, որ մեր հանրապետությունում առաջիկայում առավելապես ավելանալու է խաղողի, մրգի, բանջարեղենի, եթերատու կուլտուրաների և ծխախոտի արտադրությունը։ Արագած սովխոզը, որպես այգեգործական տնտեսություն, առաջիկա հնգամյակում մեծ ուշադրություն է նվիրելու այդ ճյուղերի զարգացմանը։ Վերը բերված թվերը (բերքատվության ցուցանիշները) ցույց են տալիս, որ տնտեսությունում խաղողագործությունը շահավետ ճյուղ է և պետք է այն զարգացնել։ Ճիշտ է, խաղողի գերակշռող սորտերն են՝ Արենին, Ռքածիթելին և Գառան դմակը, սակայն մեր այգիներում ընդարձակ տարածություններ են կազմում նաև Ոսկեհատը, Բանանցը, Կախեթին և այլն, որոնք Արագածի պես չոր ու կոնտինենտալ կլիմա ունեցող, քամիներով և սառնամանիքներով հարուստ վայրերի համար ձեռնտու չեն։

Սորտերի այդ բազմազանությունը հետևանք է այն բանի, որ կտրոնները մթերվում են հանրապետության տարբեր սովխոզներից ու տնտեսություններից, որոնք չունեն մաքրասորտ, ստանդարտ, շրջանացված խաղողի այգիներ։



Այդ արատավոր պրակտիկային վերջ տալու համար հարկավոր է հանրապետությունում ստեղծել առանձին տնկարանային տնտեսություններ, որոնք կոլտնտեսություններին և սովխոզներին մատակարարեն բացառապես մաքրասորտ արմատակալներ։

Դրությունն անհամեմատ վատ է պտղաբուծության բնագավառում։ Ճիշտ է, պտղատու ծառերի տնկիների կպչողականությունը հասնում է 98 տոկոսի, և վատ բերք չենք ստանում, բայց, բազմասորտայնությունն այստեղ ևս իր բացասական ազդեցությունն է թողնում։ Այգիներում տնկված են խռնձորենու տասնյակ սորտեր, որոնց բիոլոգիական և ագրոտեխնիկական առանձնահատկությունները տարբեր են։ Այդ հետևանք է այն բանի, որ տնկարանային տնտեսություններն արտադրում են ոչ շրջանացված սորտեր։

Խաղողի և մրգի բերքատվությունն ավելի բարձր կլիներ, եթե մեզ վնասներ չպատճառեն հաճախակի տեղացող կարկուտները։ Ժամանակն է, որպեսզի Արագածում կազմակերպվի կարկտաբեր ամպեր ցրող հրթիռային բազաներ, որը կօգնի փրկելու ստեղծված բարիքները։

Գյուղի աշխատավորությունը ջերմորեն ընդունեց ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները։ Մեր կոլեկտիվը նույնպես ուրախությամբ արձագանքեց այդ որոշումներին. չէ՛ որ մինչև 1970 թվականը տնտեսության պլանները կայուն են մնալու։ Սակայն պետք է նշել, որ պլանավորման նոր կարգը դեռևս լրիվ չի կիրառվում։ Քիչ չեն դեպքերը, երբ պլանավորում են վերևից, առանց հաշվի առնելու տնտեսության ռեալ հնարավորությունները։ Այսպես, շրջանի գյուղատնտեսական արտադրական վարչությունը արտադրանքի ցածր ինքնարժեքը պահպանելու պատրվակով ստիպում է տնտեսությունների ղեկավարներին խախտելու ագրոկանոնները։ Մեր խաղողի այգիների տարածություններում, ընթացիկ տարում, պլանավորված է ընդամենը մեկ անգամ կանաչ հատում, կանաչ կապ և քաղհան-փխրեցում։ Սովխոզների համար ամեն տարի հաստատվում են հասարակական շինարարությունների կառուցման մեծ պլաններ, բայց միջոցներով չապահովելու հետևանքով դրանք անկատար են մնում։

Մի տասնամյակ առաջ կայարանի միակ շենքից բացի Արագածի ավանում ոչինչ չկար։ Արդեն կառուցվել են հարյուրավոր տներ, բացվել են բազմաթիվ փողոցներ, վեր են խոյացել բազմահարկ բնակելի շենքեր, կառուցվել են դպրոց, մսուր-մանկապարտեզ, ճաշարաններ ու խանութներ։ Այժմ սովխոզի շահույթի հաշվին կառուցվում է 400 տեղանոց դահլիճ ունեցող կուլտուրայի տուն։

Մեր կարծիքով, լավ կլինի հասարակական շինությունների կառուցումն ավարտելուց հետո (իհարկե մեր հաշվին) դրանք հանձնել այդ գործով զբաղվող կազմակերպություններին։ Վատ չէր լինի, որ դպրոցը հանձնվեր ժողկրթբաժնին, բաղնիքը՝ կոմունալ-սպասարկման շրջանային գրասենյակին, հացի փուռը՝ շրջկոոպին և այլն։ Վերջիններս իրենք պատասխանատու կլինեին իրենց օբյեկտների համար և արհեստականորեն չէր ուռճանա ինքնարժեքը։ Այսպես, օրինակ, վերոհիշյալ օբյեկտների ամորտիզացիոն ծախսերը՝ միայն անցյալ տարի եղել է 9300 ռուբլի։

Սովխոզը տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդելու գործում մեծ նշանակություն ունի աշխատավորության անձնական շահագրգռվածության բարձրացումը։ Լրացուցիչ վարձատրության սիստեմի կիրառումը տվել է իր

դրական արդյունքը: Այգեգործական № 1 (բրիգադավար Գ. Մանուկյան), № 2 (բրիգադավար Լ. Հարթենյան), № 7 (բրիգադավար Ս. Գաբրիելյան), № 12 (բրիգադավար Յ. Մկրտչյան) և այլ բրիգադների բանվորներն իրենց պլանները գերակատարելու համար ամեն տարի ստանում են 30—180 ռուբլի պարգև-հավելումներ: Յուրաքանչյուր բանվորի աշխատանքն ամեն օր երեկոյան ամփոփվում է և հաջորդ առավոտյան փակցվում պատին. այսպիսով ամեն մեկը կարող է իմանալ իր կատարած աշխատանքի ծավալը և վարձատրության չափը: Տրակտորիստներ Բ. Հարությունյանը և Վ. Ավետիսյանը 1965 թ. տնտեսական տարում փափուկ վարի պլանը գերակատարելու, վառելանյութի և պահեստամասերի տնտեսման, ինքնարժեքի իջեցման համար հավելյալ վարձատրություն են ստացել 83—181 ռուբլի: Վարձատրության այս սիստեմը բարձրացնում է բանվորների շահագրգռվածությունը:

Լայնորեն ծավալվել է սոցիալիստական մրցությունը: Ամեն եռամսյակ ամփոփվում են սոցմրցման արդյունքները և հաղթողներն արժանանում են դրամական պարգևի, ստանում առաջավոր բանվորի կամ մեխանիզատորի որակավորում, դիրեկցիայի կողմից հրամանով շնորհակալության արժանանում, նրանց անունները գրվում են պատվոտախտակին և այլն:

Սովխոզը, որը պայքարում է կոմունիստական աշխատանքի կոչման արժանանալու համար անցյալ տարի պարգևատրվել է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով և Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության ու արհմիության հանրապետական կոմիտեի փոխանցիկ կարմիր դրոշով, ստացել է նաև դրամական պարգև:

Տնտեսության առաջընթացին նպաստել են նաև մեխանիզատորները: Հարստացել է սովխոզի մեքենա-տրակտորային պարկը: Նախկին մեկ ավտոմեքենայի փոխարեն այժմ ունենք 22-ը, տարբեր մարկաների ավելի քան 30 տրակտոր, գյուղատնտեսական հարյուրավոր այլ մեքենաներ ու գործիքներ:

Սակայն, այս բնագավառում ևս կան թերություններ: Երբեմն պլանավորող կազմակերպությունները տնտեսությանն ուղարկում են այնպիսի մեքենաներ ու գործիքներ, որոնք պետք չեն և տարիներով մնում են որպես բեռ: Հայգյուղտեխնիկան լիովին չի ապահովվում մեքենաների ու կցվող գործիքների պահեստամասերով: Արտադրությունից հանվել է ԿԴ—35 մարկայի տրակտորը: Բայց դրա փոխարեն չի երաշխավորված մեր պայմանների համար ավելի ձեռնտու տրակտոր: Դեռևս չկան խաղողի վազերը թաղող կամ բացող հարմարավետ մեքենաներ: Ժամանակն է, որպեսզի Հայգյուղտեխնիկան և գյուղտնտեսության մեքենայացման ու էլեկտրիֆիկացման գիտահետազոտական ինստիտուտը միացյալ ուժերով այգեգործական տնտեսություններին երաշխավորեն խաղողի միջթմբային տարածությունները մշակող, վնասատուների դեմ պայքարող արդյունավետ մեքենաներ ու մեխանիզմներ:

Ընթացիկ հնգամյակում ավելի լուրջ խնդիրներ են ծառացած մեր տնտեսության առջև: Ժամանակին և ագրոտեխնիկական բարձր որակով կատարելով խնամքի ու մշակության բոլոր աշխատանքները, 1970 թվականին կստանանք 24000 ցենտներ խաղող, 892 տոննա պտուղ, 128 տոննա կաթ:

Արագած այգեգործական սովխոզի կոլեկտիվը ամեն ինչ կանի իր առջև դրված խնդիրները պատվով լուծելու համար:

---

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ

## ԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՆ ԷՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

Ա. ՄԵՀՐԱԲՅԱՆ (դոկտոր, պրոֆեսոր), Մ. ՄԵԼԻՔ-ՓԱՇԱՅԱՆ

Գիտակցությունը մարդու գլխուղեղի բարձրագույն ինտեգրատիվ (համակցող) ֆունկցիան է: Լինելով հասարակական պայմանների անընդհատ ներգործության օբյեկտն ու դրանց արգասիքը, մարդը միաժամանակ սուբյեկտ է, բնությունն ու միջավայրը վերափոխող կոլեկտիվ անդամ:

Եթե բնության մեջ օրինաչափությունները դրսևորվում են անգիտակցորեն՝ արտաքին անհրաժեշտության ձևով, ապա մարդը, ընդհակառակը, դրանք գիտակցորեն է արտացոլում ու կիրառում իր կյանքի պրակտիկայում: Այդ պատճառով էլ գիտակցությունը շրջապատող միջավայրին մարդու հարմարվելու վերափոխիչ գործիք է:

Անհատի գիտակցությունը սոսկ անձնական կուտակված կենսափորձի արդյունք չէ: Այն մարդկային կոլեկտիվի, մարդկային բազում սերունդների փորձի պատմական սեփականությունն է: Պատկերավոր ասած, ժամանակակից մարդու գիտակցող գլուխը հենված է իր միլիարդավոր նախորդների ու ժամանակակիցների ուսերին: Ամեն մի առանձին անհատ իր գիտակցությունն ու ինքնագիտակցությունը ձեռք է բերում միայն որպես հասարակության անդամ: Գիտակցությունն ամենից առաջ շրջապատող աշխարհի իմացությունն է: Անհատը միայն կոլեկտիվի հետ և նրա միջոցով է հասու լինում շրջապատող աշխարհի երևույթներին:

Սակայն, գիտակցությունը լոկ շրջապատող աշխարհի ու սուբյեկտի ճանաչումը չէ: Գիտակցությունն իր մեջ ոչ միայն ընկալումներ ու մտապատկերներ, ոչ միայն մտածելու ու հիշելու պրոցեսներ է պարփակում, այլև ներառնում է անհատի էմոցիոնալ-կամային ամբողջ գործունեությունը: Մարդու ուղեղը մի չափազանց բարդ ու կատարյալ ապարատ է, որը տևական էվոլյուցիայի հետևանքով հասել է մատերիայի զարգացման բարձրագույն ձևին: Այն ձեռք է բերել ճանաչողական արտացոլման ունակություն, այսինքն՝ արտաքին աշխարհի օբյեկտիվ բովանդակությունը փոխարկում է մարդու գիտակցության հոգեկան բովանդակության: Արտաքին աշխարհը արտացոլման նյութական օբյեկտ է դառնում մի այլ նյութական օբյեկտի մեջ: Գիտակցությունը մի ինչոր ինքնածին ներուղեղային պրոցես չէ: Հետևաբար, ուղեղը ոչ թե գիտակցության աղբյուրն է, այլ նրա օրգանը:

Բազմաթիվ խոշոր մտածողներ ու գիտնականներ իրենց ուսումնասիրության առարկան են դարձրել մարդու գիտակցությունը: Վերջինիս էությունը

*բացահայտվել է օբյեկտիվ իրականության նկատմամբ նրա ունեցած հարաբերության հիմնական մեթոդոլոգիական հարցը հաջորդաբար լուծելու պրոցեսում՝ հասարակության ամբողջ պատմության ընթացքում։ Գիտակցության բազմակողմանի բնույթը և հասարակականորեն պայմանավորված նրա յուրահատկությունները, անհատի գիտակցությունը ուսումնասիրության առարկա են ծառայել զանազան գիտությունների՝ փիլիսոփայության, պատմության, կենսաբանության, նեյրոֆիզիոլոգիայի, հոգեբանության և պսիխոպաթոլոգիայի համար։*

*Այն փիլիսոփաներից, որոնք առաջին անգամ իրենց սիստեմներում կարևոր տեղ են տվել գիտակցության ու ինքնագիտակցության զարգացման գաղափարին, պետք է հիշել նախ և առաջ Հեգելին։ Իր* Ոգու ֆենոմենոլոգիան *երկում նա բացահայտում է անհատական գիտակցության զարգացման պրոցեսը նրա տարբեր աստիճաններում, որոնք, ինչպես դիպուկ նկատել է Էնգելսը, դիտվում են որպես մարդու անցած պատմական աստիճանների կրճատ մի վերարտադրություն։*

*Հեգելի փիլիսոփայական դպրոցի անկման շրջանում երիտասարդ հեգելականների մեջ առանձնապես աչքի ընկավ Լյուդվիգ Ֆոյերբախը, որն անչափ մեծ դեր խաղաց Հեգելի իդեալիզմի դեմ մղած պայքարում։ Ֆոյերբախը ցույց տվեց, որ Հեգելը մարդու անհատական գիտակցությունը բացարձակ ինքնուրույն էություն է դարձրել, դրանով իսկ այն անջատելով բուն մարդուց։ Մարդու էությունը կարելի է հասկանալ միայն նրա գիտակցության և նրա մարմնի միասնության մեջ։ Ֆոյերբախը ճիշտ էր նկատում, որ հոգեկանը պայմանավորված է ֆիզիոլոգիականով և որ գիտակցության բովանդակությունը կախված է օբյեկտիվ իրականության երևույթներից։*

*Մարքսիզմի առաջացումը մի իսկական հեղափոխություն եղավ փիլիսոփայության բնագավառում։ Հասարակության կյանքի, պատմական պրոցեսի նկատմամբ մատերիալիստական դիալեկտիկայի կիրառումը Մարքսին և Էնգելսին հնարավորություն տվեցին ստեղծելու մեթոդոլոգիական կուռ հիմք՝ հասարակության, անհատի և նրա գիտակցության օրինաչափությունները հետազոտելու համար։ Հաղթահարելով գիտակցության հեգելյան ըմբռնումը սրա հիպերտրոֆիկ ու վերացական ձևով, ինչպես նաև Ֆոյերբախի անտրոպոլոգիական (մարդաբանական) մոտեցումը, նրանք առաջ քաշեցին այն դրույթը, որ «գիտակցությունը հենց սկզբից էլ հասարակական արգասիք է և մնում է այդպիսին, քանի դեռ առհասարակ գոյություն ունեն մարդիկ... Գիտակցությունը երբեք էլ չի կարող ոչ այլ ինչ լինել, քան գիտակցված կեցություն, իսկ մարդկանց կեցությունը նրանց կյանքի ռեալ պրոցեսն է» (*Գերմանական իդեոլոգիա *1933 թ.)։*

*Մարդու հոգեբանությունը, նրա գիտակցությունն արդյունք է գլխուղեղի գործունեության, որը շրջապատող բնությունն ու սոցիալական իրականությունն արտացոլում է դրանց ամբողջ բարդությամբ ու բազմազանությամբ։ Իմացության պրոցեսը տեղի է ունենում ոչ թե պասսիվ հայեցողության, այլ ակտիվ, ստեղծագործական, պրակտիկ գործունեության պրոցեսում։ Մարքսը և Էնգելսն իրենց փիլիսոփայական աշխատություններում մինչև վերջ մերկացրին գիտակցության վերաբերյալ իդեալիստական բոլոր պատկերացումների ո՛չ միայն դասակարգային, այլև իմացաբանական արմատները։*

*Իմացաբանության պրոբլեմների, այդ թվում անհատի գիտակցության վե-*



*րաբերյալ ուսմունքի հարցերը հասարակական ու բնական գիտությունների արդի մակարդակի վրա դրեց Վ. Ի. Լենինը։ Իր* Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ *կլասիկ երկում,* Փիլիսոփայական տետրերում *և այլ աշխատություններում նա ընդգծում էր, որ արդեն իսկ զգայություններում ու ընկալումներում դրսևորվում է մեր գիտակցության գործունեությունը։ Հենց Լենինն է ձևակերպել իմացության պրոցեսի շարժման օրենքը, բացառիկ խորաթափանցությամբ ցույց տալով այդ շարժումը կենդանի հայեցողությունից դեպի աբստրակտ մտածողությունը և նրանից դեպի պրակտիկան։ Նա ընդգծել է, որ արտաքին գրգռի էներգիան փոխարկվում է գիտակցության փաստի։ Մարդու գիտակցական գործունեության մեջ զգայությունների ունեցած դերը մատնանշել է նաև Ի. Մ. Սեչենովը։ Նա ցույց է տվել, թե զգայունակության կորստի դեպքում ինչպես է խախտվում գիտակցությունը։*

*Մատերիալիստական հոգեբանությունը ելնում է այն դրույթից, որ մարդու հոգեկան գիտակցական գործունեությունն սկիզբ է առնում զգայություններում. այն դրսևորվում է ընկալումներով, որոնց օգնությամբ արտացոլվում են ամբողջական առարկաներն ու երևույթները. հիշողությամբ, որի միջոցով արտացոլվում են բոլոր նախկին ընկալումները. մտածողությամբ, որն արտացոլում է առարկաների ու երևույթների փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը. զգացմունքներով, որոնք դրսևորում են նրա վերաբերմունքը շրջապատի նկատմամբ. գործունեությամբ, որն ուղղված է այդ շրջապատի վերափոխման նպատակին։*

## ԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՆ ԼՈԿԱԼԻԶԱՑԻԱՅԻ ՀԱՐՑԸ

*Անցյալ դարի երկրորդ կեսին մանրադիտակի օգնությամբ գլխուղեղի կազմության ուսումնասիրության հաջողությունները բարձր մակարդակի վրա դրեցին հոգեկան ֆունկցիաների լոկալիզացիայի (տեղայնացման) ուսմունքը, այսինքն՝ հետազոտողներն սկսեցին գլխուղեղի առանձին մասերում ու ծալքերում որոնել հիշված ֆունկցիաների կենտրոններ հանդիսացող շերտեր։ Օրինակ, որոշ նյարդաբանների կարծիքով մարդու գլխուղեղի կեղևի ծոծրակային մասում են ծագում շնչավոր առարկաների կերպարները. գագաթի մեջտեղի ակոսում գտնվում է մաթեմատիկական նշաններն ըմբռնելու գոտին և այլն։ Դրանից հետո փորձեր արվեցին ուղեղի անատոմիական կազմության ու ֆունկցիոնալ գործունեության հիման վրա ուսումնասիրելու նաև հոգեկան խանգարումները։*

*Մեր դարի առաջին կեսում երևան եկան նեղ-լոկալիստական այլ կոնցեպցիաներ, որոնց համաձայն հոգեկան գործունեության և անգամ գիտակցության կենտրոնները տեղադրված են ուղեղի միայն խիստ սահմանափակ տեղամասերում։ Նման մի տեսություն առաջ քաշվեց հենց վերջին տարիներս՝ հիմք ունենալով գլխուղեղի զանազան մասերը էլեկտրաէնցեֆալոգրաֆիայի (բիոէլեկտրական հոսանքների գրանցում) մեթոդով ուսումնասիրելու բնագավառում եղած նվաճումները։ Այդ մեթոդը հնարավորություն է տալիս գրանցելու գլխուղեղի բիոէլեկտրիկ պոտենցիալները և ուսումնասիրելու ուղեղային գոյացումների ֆունկցիոնալ գործունեությունը։*

*Այդ մեթոդով ստացված տվյալների հիման վրա Պենֆիլդը և Ջասպերը (1956) առաջ քաշեցին կենտրոնագլխուղեղային տեսությունը, որի համաձայն*

վերջնական ինտեգրացիայի մակարդակը՝ գիտակցության կենտրոնը տեղավորված է ուղեղի ենթակեղևային գոյացումներում, երկու կիսագնդերի նկատմամբ համաչափ դասավորված առանձնահատուկ սիստեմում: Կենտրոնագլխուղեղային սիստեմի այդ տեսությունը մշակվեց՝ հիմք ունենալով կենդանիների վրա կատարած փորձերը, ընկնավորների ուղեղի վիրահատությունները և ուղեղի առանձին մասերի հեռացման հետևանքների կլինիկական-լաբորատորիական ուսումնասիրությունը: Էքսպերիմենտալ կերպով ցույց է տրվել, որ ուղեղի ենթակեղևային գոյացումներն էլեկտրական հոսանքով գրգռելիս խիստ փոփոխվում է կեղևի ընդարձակ մասերի էլեկտրական ակտիվությունը. ընդսմին հայտնի է, որ էվոլյուցիոն զարգացման ընթացքում այդ գոյացումներն, անշուշտ, ավելի վաղ են առաջացել, այսինքն՝ ավելի հին են, քան կեղևը: Էլեկտրական ակտիվության փոփոխման այդ երևույթը տեղի է ունենում այն բանի շնորհիվ, որ ենթակեղևային գոյացումների ու կեղևի միջև գոյություն ունի երկկողմանի կապ: Դրա շնորհիվ էլ գրգիռների հոսանքները կեղևի զույգ կիսագնդերից հասնում են ուղեղի բունը (ենթակեղևը) և ընդհակառակը: Երբ վնասվում են ուղեղի բնի առանձին տեղամասերը, խախտվում է գիտակցությունը:

Այս ամենը, հիշյալ հեղինակների կարծիքով, հաստատում է այն դրույթը, որ հենց այդտեղ՝ ուղեղի ենթակեղևային մասում է գտնվում գիտակցության կենտրոնը: Նրանք գտնում են, որ հենց այդ սիստեմն է կարգավորում մարդու վարմունքը, իսկ կեղևը սոսկ ստորադաս դեր է խաղում, այսինքն՝ նա չէ մարդու բարդ վարմունքի ու գիտակցության օրգանը:

Սակայն եթե այդ հեղինակները նսեմացնում են այն դերը, որ խաղում է գլխուղեղի կեղևը բարդ ինտեգրատիվ մեխանիզմներում, գտնում են, թե նա լոկ ենթակեղևային գոյացումներից եկող կարգավորիչ ազդակների պասսիվ կատարման մի օրգան է, հապա ինչո՞վ բացատրել մեծ կիսագնդերի այդքան նշանակալի զարգացումը կենդանիների էվոլյուցիայի պրոցեսում: Հիրավի, մեծ կիսագնդերի կեղևն անչափ զարգացել է տեսակների էվոլյուցիոն առաջընթացի պրոցեսում: Կեղևային գոյացումները, ունենալով մեծ պլաստիկություն, առանձնապես զգայուն են միջավայրի փոփոխությունների նկատմամբ և այդ իսկ պատճառով էլ կարող են օրգանիզմը լավ հարմարեցնել փոփոխվող պայմաններին:

Մորֆոֆիզիոլոգիական (կառուցվածքի և գործունեության) տվյալները հաստատում են Ի. Պ. Պավլովի այն հայացքը, որ մեծ կիսագնդերը մարդու և կենդանիների բարձրագույն նյարդային գործունեության այն օրգանն են, որը մեծ դեր է խաղում օրգանիզմի ու միջավայրի փոխհարաբերություններում: Որքան ավելի բարձր աստիճանի վրա է կանգնած կենդանին, այնքան ավելի բարդ է նրա վարմունքը: Պավլովի կատարած փորձերը ցույց են տվել, որ կեղևը լրիվ հեռացնելու՝ դեկորտիկացիայի դեպքում, կենդանին հաշմանդամ է դառնում, ի վիճակի չի լինում քիչ թե շատ ակտիվորեն հարմարվելու շրջապատին, թեպետև պահպանվել են ուղեղի ենթակեղևային գոյացումները:

Ուղեղի հետագա էվոլյուցիան հանգեցրել է այն բանին, որ բուն կեղևի առանձին մասերը զարգացել են անհամաչափ: Ճակատամասը, որը մյուս մասերի համեմատությամբ ամենից ուշ է զարգացել, մարդու մոտ շատ ավելի տեղ է գրավում ամբողջ ուղեղում, քան որևէ այլ կենդանու մոտ (ստորին կապիկների մոտ ճակատամասը կազմում է ուղեղի կիսագնդերի ամբողջ մակե-



րեսի 10 տոկոսը, բարձրագույն կապիկներինը՝ 13,5, մարդունը՝ 24 տոկոսը,
մինչդեռ ծոծրակի մասը, որն ավելի վաղ է գոյացել, համապատասխանորեն
կազմում է 24, 21,5 և 12 տոկոս): Նման հարաբերությունը չի կարող ֆունկցիո-
նալ առանձնահատկություններ չառաջացնել: Այդ են հաստատում ինչպես
նախկին բոլոր հետազոտությունները, այնպես էլ նորագույն տվյալները: Այս-
պես, Ջեկսոնն իր հետազոտությունների հիման վրա գտնում էր, որ ուղեղի ճա-
կատամասը գիտակցության հիմնական սուբստրատն է: Պավլովը, վիրահա-
տության միջոցով հեռացնելով ճակատամասը, եկավ այն հետևության, որ դա
չի կարող «գերագույն կենտրոն» լինել, բայց խոշոր դեր է խաղում բարձրա-
գույն նյարդային գործունեության մեջ: Հետազոտության էլեկտրաէնցեֆալո-
գրաֆիկ մեթոդի նորագույն նվաճումները նույնպես վկայում են, որ ճակատա-
մասն ավելի ռեակտիվ է, ավելի շուտ է արձագանքում զանազան գրգիռներին:
Այնուհետև, գլխուղեղի տարբեր մասերը ուսումնասիրելիս ու համեմատե-
լիս չի կարելի անտեսել, որ մարդու և կենդանիների ուղեղի ամենաերիտասարդ
ու բարդ գոյացումները՝ կիսագնդերը, զույգ օրգան են: Եթե լրիվ դեկորտիկա-
ցիան, ինչպես արդեն նշվեց, կենդանուն զրկում է շրջապատող միջավայրին
հարմարվելու ունակությունից, ապա վիրահատության միջոցով կենդանիների
և նույնիսկ մարդու ամբողջ կիսագնդի կեղևի հեռացումը, ինչպես ցույց են
տվել մի շարք հեղինակների (Ուոլտեր և ուրիշներ) կլինիկական դիտումները,
քիչ թե շատ արտահայտված պաթոլոգիական շեղումներ չի հարուցում բանա-
կանության ու բնավորության մեջ (բացառած, իհարկե, վիրահատությանն ան-
միջապես հաջորդած ժամանակաշրջանը):

Այդ փաստերից հանգում ենք այն հետևության, որ ուղեղի նորա-
գույն մասի՝ կեղևի զույգությունը մարդու կոմպենսատորային հնարավորու-
թյունների և ուղեղի գործունեության հուսալիության ապահովման ֆիզիոլո-
գիական նախադրյալն է:

Կենտրոնական նյարդային համակարգությունը վերին աստիճանի բարդ
մի գոյացում է՝ բաղկացած մշտապես մեկը մյուսի վրա փոխադարձաբար
ներգործող մասերից: Գիտակցության ֆիզիոլոգիական հիմքերը, բարձրագույն
ինտեգրատիվ մեխանիզմների մակարդակը ճիշտ ըմբռնել կարելի է միայն այն
դեպքում, երբ հանգամանորեն ուսումնասիրվի ու սահմանվի ուղեղի առան-
ձին մասերի դերը և նրանց մասնակցությունն արտացոլման ընդհանուր գոր-
ծունեության մեջ:

## ՖԻԶԻՈԼՈԳԻԱԿԱՆԻ ԵՎ ՀՈԳԵԿԱՆԻ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԸ

Գիտությունը ներկայումս թևակոխել է այն ուղին, որը տանում է դեպի
բնության այնպիսի բարդ ու հանելուկային երևույթի ավելի լրիվ ըմբռնումը,
որպիսին գիտակցությունն է:

Հաշվի առնելով գիտակցության բոլոր կողմերի փոխադարձ սերտ կապն
ու պայմանավորվածությունը, շատ հետազոտողներ իրենց առջև խնդիր են
դնում ուսումնասիրել, թե գիտակցության հիմքում ընկած ֆիզիոլոգիական
պրոցեսներն ինչպես են հարաբերակցում դրանց հոգեբանական բնութագրումներին:

«Ֆիզիոլոգիականի և հոգեկանի» հարաբերակցության հարցը դրել է
Ի. Մ. Սեչենովը դեռևս 1865 թվականին: Բարձրագույն նյարդային գործու-

նեության վերաբերյալ Ի. Պ. Պավլովի ստեղծած ուսմունքը զարգացնում է Սեչենովի գաղափարները և առաջ է քաշում իր դրույթները, այն, որ վարմունքը պայմանավորված է միջավայրի գործոններով, որոնք իրենց հերթին որոշակի տեղաշարժեր են առաջացնում ֆիզիոլոգիական պրոցեսներում, մասնավորապես՝ կենտրոնական նյարդային համակարգության մեջ:

Երբ գլխուղեղի ուսումնասիրության բնագավառում սկսվեցին կիրառվել էլեկտրոնային տեխնիկան և այնպիսի մեթոդներ, որոնց օգնությամբ կարելի է արձանագրել ու հետազոտել նյարդային համակարգության ամենանուրբ պրոցեսները, հետազոտողները հնարավորություն ունեցան ուղեղի ֆունկցիոնալ վիճակի մասին դատել ո՛չ միայն նրա գործունեության վերջնական արդյունքները (վարմունքը, բառային ինֆորմացիան) տեսնելով, այլև անմիջականորեն գնահատել այդ վիճակը:

Ռետիկուլյար ֆորմացիայի (ուղեղի այն գոյացումը, որը գտնվում է ենթակեղևային մասում) ֆունկցիայի ուսումնասիրությունը շատ նոր բան մտցրեց բարձրագույն նյարդային գործունեության դրսևորումների, ուղեղի առանձին մասերի ֆունկցիոնալ հարաբերակցության ըմբռնման մեջ: Միևնույն ժամանակ, հաստատվեցին Պավլովի ուսմունքի այնպիսի հիմնական դրույթները, ինչպիսիք են օրգանիզմի գործուն վիճակը պահպանելու ասպարեզում դրսի գրգիռների ունեցած դերը, ուղեղի ենթակեղևային մասի խթանող, տոնուսը բարձրացնող դերը, որը և ապահովում է նյարդային համակարգության բարդ պրոցեսների ու հոգեկան երևույթների ընթացքը:

Ռետիկուլյար ֆորմացիայի ուսումնասիրության ընթացքում եղած հայտնագործությունների առնչությամբ հետազոտողների տեսադաշտում գնալով ավելի մեծ տեղ են գրավում ուղեղի ինտեգրատիվ մեխանիզմների, գիտակցության խախտման մեխանիզմների հարցերը:

Գիտակցության հասկացությունը պետք է ըմբռնել լայն իմաստով, այսինքն՝ նրա ընդհանուր փիլիսոփայական առումով: Գիտակցությունն այդ նշանակությամբ պետք է հասկանալ որպես օբյեկտիվ իրականության ճանաչողական արտացոլման ունակություն, ինչպես նաև ճանաչածը պրակտիկայում կիրառելու ունակություն՝ նպատակ ունենալով ակտիվորեն հարմարեցնելու ու վերափոխելու շրջապատի միջավայրը: Սակայն, ճանաչողական արտացոլման այդ ունակությունն ունի բիոլոգիական նախադրյալներ, այսինքն՝ իմացության պրոցեսը հնարավոր է միայն ուղեղի որոշակի «տոնուսի» դեպքում, որն ապահովում է զգաստության որոշ մակարդակ, հետևաբար գիտակցության պարզության որոշակի աստիճան: Այդ մակարդակի տատանումների դեպքում հոգեկան պրոցեսները չեն դադարում, սակայն գիտակցական հոգեկան գործունեությունն որոշակի փոփոխություններ է կրում:

Հետևաբար, հոգեկան գործունեության հնարավորությունները սերտորեն կապված են գիտակցության պարզության աստիճանի հետ: Այդ իսկ պատճառով, երբ դեղորայքի միջոցով փոփոխում ենք գիտակցության պարզությունը կամ երբ հետազոտում ենք տարբեր աստիճանի խանգարված գիտակցություն ունեցող հիվանդների, ապա տեսնում ենք վարմունքի, գիտակցության հոգեբանական բնութագրերի կախումը ֆիզիոլոգիական գործոններից:

Հայտնի է, որ հոգեկան հիվանդությունների կլինիկայում դեռ մինչև հիմա էլ միասնական կարծիք չի հաստատվել այն մասին, թե ինչ պետք է հասկանալ պարզ և պաթոլոգիական փոփոխություն կրած գիտակցություն ասելով: Անգամ



հոգեկան հիվանդներին պարզ գիտակցություն է վերագրվում: Այս վիճելի հարցը բարձրացվեց 1953 թվականին «Նևրոպաթոլոգիա և պսիխատրիա» ամսագրի էջերում:

Այս հարցի լուծման դժվարությունները կապված են այն բանի հետ, որ մինչև այժմ էլ գիտակցությունն օբյեկտիվ մեթոդներով ուսումնասիրելու շատ քիչ հնարավորություններ կան: Խախտված գիտակցությունը բնութագրելու համար բերվում է հատկանիշների մի այնպիսի ամբողջություն, որի ծավալը որոշ հեղինակներ կամ փոքրացնում են, կամ, ընդհակառակը, լայնացնում (Ի. Ֆ. Սլուչևսկի, 1951, Վ. Ա. Գիլյարովսկի, 1954, Ա. Վ. Սնեժնևսկի, 1958, Ա. Լ. Աբաշև-Կոնստանտինովսկի, 1958, Ա. Ա. Մեհրաբյան, 1959, Մ. Օ. Գերցբերգ, 1961): Վերոհիշյալ հասկացությունների միջև ավելի հստակ սահմանների դեպքում կհեշտանա գիտակցության բնութագրման մեջ օբյեկտիվ ցուցանիշներ մտցնելը: Այդ նպատակով էլ մի շարք հեղինակներ, ինչպես և մենք, հիվանդների վարմունքը և հիվանդության պատկերը դիտելու հետ զուգընթաց, էլեկտրաէնցեֆալոգրաֆիկ հետազոտություններ ենք կատարել քնի կամ հիպնոսի ժամանակ, թմրաբեր միջոցների ու զանազան դեղորայքի ներգործությամբ կամ այն նյարդային-հոգեկան հիվանդությունների դեպքում, որոնց ուղեկցում է գիտակցության փոփոխությունը:

Գիտակցության խախտման այդպիսի կոմպլեքսային ուսումնասիրությունը ցույց է տվել, որ զգաստության մակարդակի իջնելու և, հետևապես, գիտակցության փոփոխման հետ զուգընթաց նկատելիորեն փոփոխվում է ուղեղի էլեկտրական ակտիվությունը, դանդաղում են պոտենցիալների տատանումները և ընկնում է ուղեղի ռեակտիվությունը (հակազդումը): Սակայն, հաստատվել է նաև, որ նման էլեկտրաէնցեֆալոգրաֆիկ պատկեր կարելի է տեսնել պարզ գիտակցության դեպքում ևս և, ընդհակառակը, գիտակցության խախտման ժամանակ կարող է էլեկտրաէնցեֆալոգրաման ցույց չտալ եղած փոփոխությունները (Ֆ. Ռինալդի, Ե. Խիմվիչ, 1955, Գ. Գաստո, 1954, Ն. Ի. Գրաշչենկով, 1964 և ուրիշներ): Այդ փաստերը վկայում են, որ էլեկտրաէնցեֆալոգրաֆիայի հիշյալ ցուցանիշները դեռևս բավական չեն գիտակցության վիճակը գնահատելու կամ նրա մասին լիակատար պատկերացում կազմելու համար:

Բազմաթիվ ինստիտուտներում ու լաբորատորիաներում այժմ կատարվում են հետազոտություններ, որոնց նպատակն է գիտակցության վիճակի գնահատման ավելի զգայուն օբյեկտիվ չափանիշներ գտնել, և արդեն բավականին փաստական նյութ է կուտակվել, որոշակի հաջողություններ են ձեռք բերվել գիտակցության պրոբլեմի մշակման ասպարեզում: Մեր կլինիկան, որը տարիներ շարունակ զբաղվում է անհատի գիտակցությունը, նրա ֆիզիոլոգիական մեխանիզմներն ուսումնասիրելու, պարզ ու խախտված գիտակցության դրսևորումներն էլեկտրաէնցեֆալոգրաֆիկ մեթոդով օբյեկտիվորեն նշելու միջոցներ որոնելու հարցերով, նույնպես որոշակի հաջողություններ է ձեռք բերել այդ բնագավառում: Այժմ արդեն այս կամ այն չափով հնարավոր է օբյեկտիվ մեթոդներով և, մասնավորապես, էլեկտրաէնցեֆալոգրաֆիկ մեթոդների կիրառումով ախտորոշել գիտակցության խախտումները զանազան հիվանդությունների ժամանակ, գիտակցության յուրահատուկ փոփոխությունները հիպնոսի դեպքում և այլն:

Գիտակցության ֆիզիոլոգիական հիմքերի հարցն ունի թե՛ ընդհանուր փիլիսոփայական և թե բնագիտական նշանակություն: Մինչև XIX դարի կեսերը

պսիխոֆիզիկական պրոբլեմը, այսինքն՝ ուղեղի և գիտակցության հարաբերակցության պրոբլեմը, քննարկվում էր անատոմիական հետազոտությունների հիման վրա։ Այդ հետազոտությունների հետ էին առնչված վերոհիշյալ այն տեսությունները, որոնք վերաբերում էին հոգեկան պրոցեսների լոկալիզացիային ուղեղի զանազան «կենտրոններում»։

Մարդու նյարդային համակարգության ֆիզիոլոգիայի զարգացումը և նվաճումներն անվիճելիորեն ապացուցեցին, որ գիտակցությունը լոկ ուղեղի ֆունկցիա է, որ ֆիզիոլոգիական պրոցեսների ու հոգեկան ֆունկցիաների միջև ամենասերտ առնչություն գոյություն ունի, և որ վերջիններն անվերապահորեն կախված են առաջիններից ու պայմանավորված են դրանցով։

Վերջին տարիների գիտական նվաճումներն ավելի վստահորեն են վերացնում այն միստիկական քողը, որով ծածկված էին հոգեկան աշխարհի ամենաբարդ ու հանելուկային դրսևորումները։ Դրանք անցյալում բոլորովին անբացատրելի էին և որոշ առումով անբացատրելի են նաև մեր օրերում։ Սակայն, գիտության նվաճումները որոշակիորեն ապացուցում են անգամ ամենաբիդեալական թվացող երևույթների ֆիզիոլոգիական պայմանավորվածությունը։

Գիտության ամենավերջին հաջողությունները հաստատում և ավելի են զարգացնում մարդու գիտակցության, նրա հոգեկան աշխարհի ուսումնասիրության առաջադիմական մատերիալիստական դրույթները։

---

## ՊԱՏԱՀԱՐ ՍՈՒԵԶԻ ԾՈՎԱԾՈՑՈՒՄ

Նավակը ծովը տարավ։ Վաղուց արդեն ափը չէր երևում։ Ալիքները խփվում էին Մահմեդի երեսին, կուրացնում աչքերը։ Լռեց մոտորը։ «Հարկավոր է բռնել փրկարար ներքնակից»,— վայրկենապես անցավ Մահմեդ Վալիի մտքով։ Որքա՞ն կարող էր դիմանալ բաց ծովում, առանց խմելու ջրի, ո՞ւր էր տանելու նրան տարերքը, ի՞նչպես իմացնել դժբախտության մասին։ Մահմեդը գլուխը դնելով թաց ներքնակին, կզաց, թե ինչպես է մարմինը ալիքների հարվածի տակ ցնցվում։ Նա մի հոգս ուներ՝ մի կերպ դիմանալ մինչև առավոտ... Փոթորիկը հանդարտվում էր։ Հանկարծ ալիքների միջից մութ առարկա նկատեց։ Այն մերթ ջրի երեսն էր բարձրանում, մեյթ թաքնվում։ Երևի շնաձուկ է։ Այդ գիշատիչները Կարմիր ծովից հաճախ են այստեղ գալիս։ Մահմեդը սկսեց ձեռքերով հրել ներքնակը վտանգից խուսափելու միտումով։ Հանկարծ, ուղղակի նրա առջև, լուսնի լույսի տակ, շողաց դելֆինի կլոր գլուխը։

Այո՛, դրանք դելֆիններ էին, մի ամբողջ վտառ։ Դելֆինները մոտեցան, օղակեցին նրան, ինժեների համար շնաձկների հնարավոր հարձակումներից ամուր պաշտպանություն ստեղծվեց։ Մահմեդը կզաց, ինչպես նրանցից մեկը գլխով տակից հարվածեց ներքնակին. այն սկսեց առաջ շարժվել։ Հարվածները հետևում էին մեկը մյուսին։ «Սրանք խաղում են ինձ հետ»,— մտածեց Մահմեդը դելֆինների մասին։ Բայց այդ ամեննին էլ խաղ չէր... Գիշերն անցավ։ Մի ամբողջ օր դելֆինները չլքեցին մարդուն։ Նրանք դեպի հեռավոր ափերն էին հրում ներքնակը, որի վրա պառկած էր Մահմեդը։ Հեռադիտակից երևում էր, որ դելֆինների վտառը պտտվում է ինչ-որ երկարավուն առարկայի շուրջը։ Մի քանի րոպե անց ուժասպառ ինժեներին բարձրացրեց փրկարար նավը։

«Известия»

# ԿԻԲԵՌՆԵՏԻԿԱՆ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

Ա. ՍԱՀԱԿՅԱՆ

Գիտատեխնիկական արդի առաջընթացի հիմնական հատկանիշները բնութագրելիս, ամենից առաջ, հարկավոր է անդրադառնալ տեխնիկայի ու արտադրության բնագավառում կիբեռնետիկայի կիրառմանը, որը հանգեցնում է ֆիզիկական և մտավոր աշխատանքի ավտոմատացման բարձր աստիճանի։

Ժողովրդա-տնտեսական շատ ճյուղերում (մեքենաշինության, կապի, ռադիոէլեկտրոնիկայի, էլեկտրաէներգետիկայի, գյուղատնտեսության մեջ) այժմ գիտատեխնիկական և ինժեներական բարդ պրոբլեմների լուծման անհրաժեշտ պայմանը տեսական կիբեռնետիկայի մաթեմատիկական ապարատի և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգտագործումն է։

Կիբեռնետիկան, որպես բարդ սիստեմների կառավարման գիտություն, զբաղվում է բոլոր այն սիստեմների ուսումնասիրությամբ, որոնք ունակ են ընկալելու հաղորդվող տեղեկությունը, պահպանելու, վերամշակելու և օգտագործելու այն, ինչպես և կառավարելու ու կարգավորելու տվյալ սիստեմը։ Ընդ որում, կիբեռնետիկան լայնորեն օգտվում է մաթեմատիկական մեթոդներից և ձգտում ստանալ կոնկրետ արդյունքներ, որոնք թույլ են տալիս այդ սիստեմները տարրալուծելու և սինթեզելու։

Կիբեռնետիկայում երբեք չի դրվում «ի՞նչ է» հարցը, այլ միայն՝ «ինչպե՞ս է տեղի ունենում»։ Այն գիտություն է ո՛չ թե սիստեմի էության, այլ նրա գործելակերպի մասին։ Կիբեռնետիկան սիստեմի գործելակերպի օրինաչափությունները ձևակերպում է ընդհանուր ձևով, ցանկացած սիստեմի համար, կոնկրետ սիստեմից անկախ։

Ակադեմիկոս Ա. Ի. Բերգի բնորոշմամբ «Կիբեռնետիկան գիտություն է բարդ դինամիկական սիստեմների նպատակադրված օպտիմալ ղեկավարման մասին»։ Այն ուսումնասիրում է ղեկավարման հատկությունններն ու օրինաչափությունները աբստրակտ ձևով, անկախ այդ սիստեմի նյութական հիմքից. բնությունը, կամ ինքը՝ երևույթը չէ կիբեռնետիկայի հետաքրքրության առարկան։ Ուսումնասիրման այդպիսի ընդհանրությունն ու լիարժեքությունը թույլ են տալիս կիբեռնետիկական մեթոդները տարածելու տեխնիկական, ֆիզիոլոգիական, տնտեսագիտական ցանկացած երևույթի վրա։

Բոլոր կոնկրետ գիտությունները, մասնավորապես ագրոնոմիան ու կենսաբանությունը, արմատապես տարբերվում են կիբեռնետիկայից, քանի որ դրանք զբաղվում են բնության հայտնագործմամբ, նրա էությամբ, օբյեկտի զարգացման օրինաչափությամբ։ Այդ երևույթների էության ուսումնասիրու-

թյան ժամանակ ծնվում են բույսերի կյանքի ու շրջապատի՝ որպես միասնական սիստեմի, կարգավորման խելացի եղանակներ:

Գյուղատնտեսական գիտության խնդիրն է՝ վեր հանել, պլանավորել ու կարգավորել արտաքին աշխարհի և բույսերի հատկությունների միասնականությունը, ապահովել վերջինիս օպտիմալ զարգացումը՝ անհրաժեշտ քանակությամբ և բարձրորակ բերք ստանալու նպատակով: Իսկ կիբեռնետիկայի միասնական տերմինոլոգիան ու հասկացությունները հնարավորություն են տալիս գիտության մի բնագավառի նվաճումները փոխադրելու գիտության մյուս բնագավառը:

Կիբեռնետիկայի հնարավորությունները մեծանում են, երբ տվյալ սիստեմի բարդանալու հետ մեկտեղ տեղի է ունենում անընդհատ փոփոխվող, կուտակված բազմաթիվ փաստերի բարդ զուգադիպություն: Դրա համար էլ, օրինակ, դաշտային պայմաններում օդի ջերմաստիճանը և միկրոկլիման կարելի է կարգավորել միայն կիբեռնետիկայի միջոցով: Եթե նկատի ունենանք, որ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության վրա ազդում է ո՛չ միայն ջերմաստիճանը, այլև խոնավությունը և ռադիացիոն ռեժիմը, հողի կառուցվածքային, ջրա-ֆիզիկական, օպտիկա-ջերմային հատկությունները (որոնք դրսևորվում են շաղկապված ու, միաժամանակ անսպասելի կոմբինացիաներով), պարզ է դառնում, որ նման բարդ սիստեմների, բույսերի կենսաբանական բոլոր պրոցեսների ղեկավարման և նրանցում դրսևորվող գործոնների վերլուծության ու հաշվառման միակ հուսալի եղանակը կիբեռնետիկան է: Այն իր տրամադրության տակ ունի բարդ սիստեմների գիտական հետազոտությունների մեթոդ, ուր կարևոր դեր է խաղում սիստեմի ամբողջականությունը. այն չի կարելի բաժանել ավելի պարզ, նրա էլեմենտներից կազմված մասերի: Բարդ սիստեմների ուսումնասիրման կիբեռնետիկական մեթոդը մոդելացումն է՝ գործող որևէ սիստեմի գործելակերպի վերարտադրությունը, հատուկ կառուցված մոդելի ձևով:

Ամեն մի սիստեմի ղեկավարման հիմքում ընկած է կարգավորումը, այսինքն՝ սիստեմի մի քանի դիրքերի ապահովումը՝ նրա փաստացի վիճակի վրա անընդհատ հսկելով, իսկ, տվյալ դիրքից շեղվելու դեպքում՝ նրա վրա ազդելու միջոցով:

Բույսերն ու կենդանիներն իրենցից ներկայացնում են կենսաբանական սիստեմներ, որոնց մեջ արտաքին միջավայրի ազդեցության շնորհիվ տեղի են ունենում ինքնակարգավորման բարդ պրոցեսներ՝ յուրահատուկ «ինքնատեղադրում» արդյունավետ ռեժիմով: Իմանալով կենդանի օրգանիզմների առանձնահատկությունները և արտաքին աշխարհի հետ նրանց ունեցած փոխհարաբերության օպտիմալ ձևերը, գործադրելով համապատասխան ագրո և զոոտեխնիկական միջոցառումներ, կարելի է նախօրոք ծրագրել ու կարգավորել կենդանի օրգանիզմի աճն ու զարգացումը՝ ցանկացած ուղղությամբ, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը առավելագույնի հասցնելու համար:

Կենդանի օրգանիզմի զարգացումն ընթանում է ջերմային, օդային, լուսային, խոնավության և արտաքին միջավայրի՝ այլ պայմանների որոշակի սահմաններում, ուստի բույսերի բարձր բերքատվությունն ապահովելու համար անհրաժեշտ է հաշվի առնել այդ բոլոր գործոնները միասին վերցրած:

Ագրոտեխնիկական ճիշտ որոշում կայացնելու և բույսերի աճի ու զար-



գացման բարդ պրոցեսը խելացի ղեկավարելու համար անհրաժեշտ է ժամանակին ու ճիշտ տեղեկություն ստանալ բույսի վիճակի և արտաքին պայմանների փոփոխությունների մասին:

Այստեղ հարկ է նշել, որ ցանկացած սիստեմի համար ինֆորմացիայի հասկացությունը համարվում է կենտրոնականը. ինֆորմացիան ընկալվում, հաղորդվում, պահպանվում և վերափոխվում է որոշակի օրենքներով: Ինֆորմացիայի վերափոխության օրենքը կոչվում է վերափոխման ալգորիթմ: Վերափոխման՝ հատկապես ղեկավարման ալգորիթմի օգտագործումը կիբեռնետիկայի բովանդակությունն է:

Այսպիսով, ոչ մի պրոցես հնարավոր չէ ղեկավարել՝ առանց կապի գծի միջոցով ազդանշանների փոխանցման: Ամենապարզ ու բարդ ինքնաղեկավարման սիստեմների կարգավորումը տեղի է ունենում ինֆորմացիայի շարժման, պահպանման և վերամշակման միջոցով:

Ինֆորմացիայի տեսությունը համարվում է կիբեռնետիկայի կարևոր բաղկացուցիչ մասը: Այն ուսումնասիրում է ինֆորմացիայի վերամշակման կոդավորման, պահպանման և փոխանցման հիմնական սկզբունքներն ու օրինաչափությունները՝ ամեն մի ղեկավարման սիստեմում:

Ինֆորմացիա ասելով հասկանում ենք տեղեկություն ինչ-որ նախօրոք անհայտ իրադարձության մասին: Այդ իրադարձությանը հատուկ է անորոշությունը, որը լրիվ կամ մասամբ վերացվում է ստացված տեղեկության շնորհիվ: Ինֆորմացիայի հիանալի հատկություններից մեկն այն է, որ դա կարելի է քանակապես չափել և դրանով էլ համեմատել այս կամ այն հաղորդման արժեքը:

Կենսաբանական սիստեմներն ուսումնասիրելիս ինֆորմացիային են վերագրվում արտաքին միջավայրի ազդանշանները (որն ազդում է կենդանի օրգանիզմի վրա) կամ կենտրոնական ներվային սիստեմից ստացվող հրամանները և այլն:

Կիբեռնետիկան գիտականորեն հիմնավորում է հետադարձ կապի անհրաժեշտությունը՝ ցանկացած ղեկավարման սիստեմում, որը համարվում է ժամանակակից ավտոմատ կարգավորման հիմքը: Ավտոմատ ղեկավարումը պարփակ մի սիստեմ է, ուր մուտքի ազդեցությունն անմիջականորեն կախված է ելքի մեծության նշանակությունից. այդ անմիջական կապը կոչվում է հետադարձ կապ:

Ղեկավարման սիստեմում հետադարձ կապի էությունն այն է, որ կարգավորվող օբյեկտը, որի համար կազմված է ամբողջ սիստեմը, ընդունակ է հետադարձ կապով կարգավորող հարմարանքին տեղեկացնել իր վիճակի մասին: Եվ, ընդհակառակը, այդ կապով ստանալով տվյալ տեղեկությունը, սիստեմը կարող է ինքն իրեն ինքնակարգավորել այնպես, որ իր վիճակը ցանկալի լինի: Դրանով կարգավորման շղթան փակվում է, և մարդու միջամտությունը տվյալ վիճակում դառնում է ավելորդ: Այստեղ կարևոր նշանակություն ունի այն, որ ինքնակարգավորման հարմարանքը վերամշակի կարգավորվող օբյեկտի վիճակի մասին ստացվող ինֆորմացիան և համապատասխան կարգավորվող օբյեկտում առաջացած փոփոխություններին ուղարկի նոր ազդեցություն: Ահա, օրինակ ջերմոցներում բույսերի զարգացման օպտիմալ վիճակն ապահովող ավտոմատ սարքը: Բույսերը, հետադարձ կապի գծով, ցանկացած ժամանակ, կարգավորող հարմարանքին տեղեկություն են հայտնում ջերմային, խոնավության, օդային, լուսային և արտաքին միջավայրի այլ պայ-

մանների մասին։ Կարգավորող հարմարանքը ստանալով այդ տեղեկությունը՝ վերամշակում է և համապատասխան հրաման է ուղարկում գործադիր սարքին, վերը նշված պայմանները ցանկալի ռեժիմով պահելու համար։



Գյուղատնտեսության տարբեր բնագավառներում կիբեռնետիկայի օգտագործումն ունի իր յուրահատկությունը։ Այդ տեսակետից հետաքրքրական է կիբեռնետիկայի օգտագործումն ագրոֆիզիկայում։ Ագրոֆիզիկայի օբյեկտը բարդ դինամիկական սիստեմն է, որը համընկնում է կիբեռնետիկայի օբյեկտի ձևակերպման հետ։

Այժմ ագրոֆիզիկան հող է նախապատրաստում գյուղատնտեսության մեջ կիբեռնետիկայի օգտագործման համար։ Իհարկե, դեռևս այն չի ընդգրկում բերքատվության ողջ ղեկավարման խնդիրը։ Բերքատվության պլանավորումը, կանխատեսումն ու կարգավորումը (ամբողջությամբ վերցրած) ապագայի խնդիր է, որի լուծումը բավական բարդ է։ Դրա համար էլ այն պետք է ուսումնասիրել ըստ էտապների, բերքատվության առանձին էլեմենտների և քանակական ու որակական գործոնների վերլուծման միջոցով։

Հաշվի առնելով կոմպլեքս պրոբլեմի բարդությունը՝ բերքատվության կանխագուշակման ու գիտակցված պլանավորման, ինչպես նաև ագրոֆիզիկական կիբեռնետիկական սիստեմի բարդությունը, անցնում ենք ավելի պարզ կիբեռնետիկական սիստեմի կառուցման, որը պետք է զբաղվի պրոբլեմի մասնակի լուծմամբ, այսինքն՝ ազդի ոչ թե ամբողջ բերքատվության, այլ նրա առաջին էլեմենտների վրա, որոնք որոշում են աճի և զարգացման քանակական ու որակական ցուցանիշները, վերջին հաշվով՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Այսպես. ավելի պարզ կիբեռնետիկական սիստեմներ են համարվում՝ ագրոֆիզիոլոգիական, ագրոհողային, ագրոմետեորոլոգիական, ագրոտեխնիկական և ագրոտնտեսագիտական սիստեմները, որոնք սերտորեն կապված են իրար հետ։

Ագրոհողային կիբեռնետիկական սիստեմը, հեռադարձ կապով դաշտից ստանում է բոլոր անհրաժեշտ տեղեկությունները հողի կառուցվածքի, ջերմային, խոնավության, աերացիոն և այլ հատկությունների մասին։ Այդ տեղեկությունները հաղորդում է կենտրոնական դիսպետչերական կետին, որտեղ դրանք վերամշակվում են ու վերածվում որոշյալ կապերի, բանաձևերի ու գրաֆիկների։ Այդ օրինաչափությունները համեմատվում են հողի հատկությունների այն նորմաների հետ, որոնք ավելի նպատակահարմար են բույսերի արմատների զարգացման համար։ Այնուհետև, գործադիր սարքին անհրաժեշտ հրաման է տրվում՝ տաքացնել կամ սառեցնել, ջրել, հողը փխրեցնել և այլն։

Այսպես են գործում նաև մնացած սիստեմները։

Հայտնի է, որ բույսի աճման ընթացքը և վիճակը կապված են արտաքին միջավայրի՝ օդի ջերմաստիճանի և խոնավության, լուսային հոսքի սպեկտրալ կազմի ու հզորության, ջերմափոխանակության ռեժիմի, հանքային և ջրային սնուցման հետ։ Օգտագործելով բույսի վրա միջավայրի ազդեցության օրինաչափությունը, կարելի է ստեղծել կիբեռնետիկական սիստեմ, որտեղ բույսերից ստացված ազդանշանների հիման վրա հնարավոր կլինի կարգավորել դրանց աճման պայմանները։ Այսպիսով, բույսից ստացվող տեղեկությունը ծառայում



է որպես գիտական հիմք՝ բույսերի աճման ավելի լավ պայմաններ ստեղծելու համար։

Ավելի հեշտ է կազմել ջերմոցների կիբեռնետիկական մոդել, որտեղ ամեն մի բույսի համար ցանկացած ժամանակ կարելի է ստանալ անհրաժեշտ տեղեկություն։ Մշտական գործող հայտնիչները (ДАТЧИК) հետևում են բույսերի տերևներում կատարվող ֆոտոսինթեզի պրոցեսին. դրանց միջոցով բույսերը հայտնում են, թե տվյալ ժամանակ իրենց ինչ է անհրաժեշտ։ Լենինգրադի ագրոֆիզիկայի ինստիտուտում կատարված փորձերի ժամանակ վերոհիշյալ հայտնիչը միացված էր գործադիր սարքին, որի միջոցով հնարավոր եղավ ավտոմատ կերպով ապահովել ջերմության, օդի և ջրի օպտիմալ մատուցումը, ինչպես նաև անհրաժեշտ լուսավորությունը։ Փորձերը տվել են դրական արդյունք. բույսերն արագ են աճել, բարձրացել է բերքատվությունը։ Ստացվում է, որ բույսերն իրենք են «մտահոգվում» իրենց նորմալ աճման, պտուղների հասունացման և որակի համար։ Դրա համար անհրաժեշտ է ստեղծել համապատասխան չափիչ տեխնիկա, որը բույսի համար պետք է լինի անվնաս, տեղեկությունը հայտնի անընդմեջ և միաժամանակ թույլ տա տեղեկություն հայտնել բույսերի ֆիզիոլոգիական տարբեր պրոցեսների մասին։

Ներկայումս Լենինգրադի ագրոֆիզիկայի ինստիտուտում մշակվում են հայտնիչների և սարքավորումների սերիաներ, որոնք բավարարում են վերոհիշյալ պահանջները։ Արդեն ստեղծված են բույսերի ջերմաստիճանի, նրանց մեջ հեղուկի շարժման արագության որոշման հայտնիչներ, որոնք ուսումնասիրում են բույսերի աճման պրոցեսները, տերևների ռադիացիոն հատկությունները և այլն։

Կիբեռնետիկան կիրառվում է նաև գյուղատնտեսական արտադրության մեքենայացման ժամանակ։ Այստեղ համախմբվում են բավականին շատ ու բարդ սիստեմներ, խաչաձևվում բազմաթիվ և բազմազան նյութական, էներգետիկ և այլ տեղեկությունների հոսքեր։ Շատ հաճախ մարդը ֆիզիկապես ի վիճակի չէ անհրաժեշտ արագությամբ և ճշտությամբ կոորդինացնելու այդ հոսքերի ղեկավարումն ու կարգավորումը։ Օրինակ, միջշարային կուլտուրաների մշակության ժամանակ տրակտորիստը հետևում է կուլտիվատորի թաթերի ճիշտ շարժմանը և տրակտորը վարում է այնպես, որ բույսերը չվնասվեն։ Ներկայումս, երբ գյուղատնտեսական արտադրության մեջ լայնորեն օգտագործվում են մեծ արագություն ունեցող ագրեգատներ, բույսերի վնասվելը դառնում է անխուսափելի, քանի որ մարդկային օրգանիզմի ռեակցիան չի կարող մրցել ագրեգատի արագության հետ։

Ստացվում է, որ գյուղատնտեսական ագրեգատի արագությունը բարձրացնելիս, այսինքն՝ արտադրության կազմակերպման առաջավոր մեթոդների անցնելիս, ագրեգատի ավտոմատացումը դառնում է օբյեկտիվ անհրաժեշտություն։ Որպեսզի կուլտիվատորի թաթերը չվնասեն բույսերին, անհրաժեշտ է արտադրության մեջ օգտագործել կիբեռնետիկան։

Վարը համարվում է գյուղատնտեսական ամենաաշխատատար և էներգատար գործը։ Տրակտորիստը վարում է տրակտորը, հետևում տրակտորի աշխատանքային ռեժիմին, վարի խորությանը և այլն։ Հնարավո՞ր է արդյոք այդ ծանր և ձանձրալի աշխատանքը վստահել մեքենային։

Դրա համար անհրաժեշտ է, նախ՝ հավաքել վարի պրոցեսի տարբեր կողմերի, տրակտորի և տրակտորիստի աշխատանքի ցուցանիշների (աշխատանքի

տարբեր պայմանների համար) բազմապիսի տեղեկություններ, նախատեսել հնարավոր պատահականություններն ու շեղումները նորմալ ռիթմից և այլն: Այնուհետև, այդ տեղեկությունները էլեկտրոնա-հաշվիչ մեքենայի օգնությամբ վերլուծել, ստեղծել հողի մշակության պրոցեսի ծրագիրը և այն կոդավորել՝ ղեկավարող մեքենային հաղորդելու համար:

Այս ուղղությամբ բավականին հետաքրքրական աշխատանք է կատարված գյուղատնտեսության մեքենայացման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում, որտեղ ստեղծված է միջշարային կուլտուրաների կուլտիվացիայի ավտոմատ օպերատոր. կուլտիվատորի վրա դրվում է էլեկտրոնային հայտնիչ , որը ցանկացած մոմենտին անհրաժեշտ տեղեկություն է ստանում կուլտիվատորի թաթի դիրքի մասին և տրակտորի կառավարման ղեկին հաղորդում անհրաժեշտ հրաման: Հասկանալի է, որ նման պայմաններում բացառվում է բույսերի վնասվելը:

Վերոհիշյալ ինստիտուտում արդեն ստեղծվել է ավտոմատ ղեկավարման փորձնական տրակտորը, մշակվում է շարժական ագրեգատների դիսպետչերական ղեկավարման հարմարանք և այլն:



Կիբեռնետիկան լայնորեն կիրառվում է նաև գյուղատնտեսական արտադրության ստացիոնար պրոցեսների ավտոմատացման գործում: Դրա կիրառման մեծ հնարավորություններ կան թռչնաբուծության բնագավառում: Այստեղ, նախօրոք կազմված ծրագրի համաձայն, կարելի է ստեղծել միկրոկլիմա, ավտոմատ կերպով հավաքել, տեսակավորել ու դասավորել ձվերը: Ներկայումս, երբ խնդիր է դրվում առաջիկա երկու-երեք տարում կառուցել միջկոլտնտեսային ու պետական թռչնաբուծական ֆաբրիկաներ, հնարավոր կլինի օգտագործել նախօրոք կազմված ծրագրով աշխատող մեքենաներ ու սարքավորումներ, որոնց միջոցով կարելի է ավտոմատացնել արտադրության տեխնոլոգիայով նախատեսվող բոլոր պրոցեսները:

Արդեն ստեղծված են անասնապահության առանձին պրոցեսների ավտոմատացման պրակտիկ հարմարանքներ, կան ավտոմատ ջերմոցներ և այլն: Հեռու չէ այն ժամանակը, երբ կիբեռնետիկայի զարգացումը գյուղատնտեսության մեջ հնարավորություն կտա ստեղծելու գյուղատնտեսական արտադրության բոլոր հիմնական պրոցեսների մաթեմատիկական մոդելներ:

Ժամանակակից մաթեմատիկան իր տրամադրության տակ ունի հասկացությունների, ձևերի ու մեթոդների բավական լայն, անընդհատ լրացվող ու թարմ զինանոց, որը հնարավորություն է ընձեռում կառուցելու իրականության տարբեր պրոցեսների մաթեմատիկական մոդելներ: Այժմ մաթեմատիկան շատ հաճախ օգտագործվում է ո՛չ միայն շարժումը (որպես ցանկացած փոփոխություն) բնութագրելու, այլև մի շարք երևույթների զարգացման մաթեմատիկական մոդելները կառուցելու համար: Այդպիսի մոդելները, առաջին հերթին, ստեղծվում են այն գիտությունների համար, որոնք ուսումնասիրում են նյութական աշխարհի այն բնագավառները, ուր զարգացման պրոցեսն ավելի նկատելի և նշմարելի է (կենսաբանության, բժշկության և սոցիալ-էկոնոմիկական գիտությունների): Որպես օրինակ կարող է ծառայել Կ. Մարքսի կողմից տրված ընդլայնված վերարտադրության մոդելը:



Էկոնոմիկական մոդելացման նպատակն է՝ պարզել թե ինչպիսի կոնկրետ պարամետրերի զուգակցության պայմաններում կարելի է հասնել օպտիմալ ցուցանիշների, որոնք ստեղծում են տեսական, մեթոդական նախադրյալներ, մոդելացման արդյունքներն աշխատանքային պրակտիկային ենթարկելու միջոցով, տնտեսական կառուցվածքի արդյունավետության բարձրացման համար: Այդ պատճառով էլ կիբեռնետիկական մեթոդների ու միջոցների օգտագործումն էկոնոմիկայում դիտվում է որպես նրա արդյունավետությունը բարձրացնելու կարևոր պայման:

Ընդհանրապես, էկոնոմիկա-մաթեմատիկական մեթոդների գլխավոր նպատակը էկոնոմիկա-մաթեմատիկական խնդիրը կազմելու և լուծելու միջոցով արտադրական ռեսուրսների ամենաօպտիմալ տարբերակ գտնելն է: Բացի դրանից, էկոնոմիկա-մաթեմատիկական մեթոդները տնտեսագիտական երևույթներն ավելի խոր ուսումնասիրելու կարևոր միջոց են: Տնտեսագիտական երևույթների ավելի խոր ուսումնասիրության վրա մաթեմատիկական մեթոդների ազդեցության առաջին էտապը՝ էկոնոմիկա-մաթեմատիկական մոդելի կազմումն ու իրացումն է:

Էկոնոմիկա-մաթեմատիկական մոդելները տնտեսագիտական երևույթների ընդհանուր կապերի ու օրինաչափությունների խտացված արտահայտությունն են՝ մաթեմատիկական ֆորմուլաների ձևով: Այդ մոդելի միջոցով ակնառու դրսևորվում են տնտեսագիտական պրոցեսների բարդ կապերը: Որևէ խնդրի էկոնոմիկա-մաթեմատիկական մոդելը կազմելիս անհրաժեշտ է լավ տիրապետել մաթեմատիկային և ողջ խորությամբ իմանալ տնտեսագիտությունը՝ նրա զարգացման օրենքներն ու օրինաչափությունները: Տեղին է հիշել Կ. Մարքսի խոսքերը՝ գիտությունը միայն այն ժամանակ կհասնի կատարելագործման, երբ կկարողանա օգտվել մաթեմատիկայից:

Տնտեսագիտության ուսումնասիրման երկրորդ էտապը էկոնոմիկա-մաթեմատիկական խնդիր կազմելն է՝ հիմնական պարամետրերի որոշումը (ելակետային բազմաթիվ տվյալների հավաքումն ու մշակումը): Օրինակ, գյուղատնտեսության մեջ էկոնոմիկա-մաթեմատիկական խնդրի հիմնական պարամետրերն են՝ արտադրության տեխնոլոգիական եղանակների ու ճյուղերի թիվը, արտադրության ռեսուրսների տեսակները և տարրերը:

Էկոնոմիկա-մաթեմատիկական մեթոդները տնտեսագիտության ուսումնասիրման կարևոր միջոցի երրորդ էտապն է՝ հաշվարկների միջանկյալ և վերջնական արդյունքների անալիզը, որն ամենակարևորն է նման խնդիրներ լուծելիս:

Այսպիսով, էկոնոմիկական կիբեռնետիկան մի գիտություն է, որն ուսումնասիրում է տնտեսության արդյունավետ օգտագործման եղանակները: Նրա անհրաժեշտությունը բխում է տնտեսության ղեկավարման օբյեկտիվ, առանձնահատուկ օրենքներից, այն բանից, որ հարկ է լինում հաղթահարել տնտեսության բարդ կառուցվածքի ղեկավարման ժամանակ առաջացած հակադրությունները: Այստեղ առաջնահերթ նշանակություն ունի օբյեկտիվ օպտիմալացման նպատակադրված փոփոխությունը: Մաթեմատիկական մոդելը պետք է որոշվի խնդրի պայմաններով, որի լուծման համար էլ այն նախատեսվում է. հակառակ դեպքում, այն կլինի աբստրակտ և չի համապատասխանի կյանքին:

Գյուղատնտեսության էկոնոմիկայում ներկայումս մաթեմատիկական միջոցներն օգտագործվում են ներտնտեսային և ժողովրդատնտեսական բազմա-

պիսի խնդիրներ լուծելու համար։ Այդպիսի խնդիրներ արդեն լուծված են երկրի մի շարք գիտահետազոտական ինստիտուտներում, որտեղ կազմված մաթեմատիկական մոդելները կարելի է հիմք ընդունել երկրի այլ գոտիներում նման խնդիրներ լուծելու համար։

Ծանոթանանք երկրի մի քանի գիտահետազոտական ինստիտուտներում լուծված խնդիրների հետ։

Հայտնի է, որ գյուղատնտեսական արտադրության օպտիմալ զարգացման ու տեղաբաշխման չի կարելի հասնել, եթե ամեն մի ճյուղ դիտվում է առանձին-առանձին։ Գյուղատնտեսական արտադրության տեղաբաշխման և մասնագիտացման պրոբլեմի լուծման համար պետք է հաշվի առնել ինչպես արտադրական ռեսուրսները՝ հողատարածությունը, տեխնիկան, աշխատող ուժը, այնպես էլ բոլոր շրջանների բնական ու տնտեսական բազմազան պայմանները։ Այս բոլոր գործոնները հաշվի առնել և մի հաշվարկի մեջ մտցնել հնարավոր է միայն ժամանակակից մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների միջոցով։

Գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և տեղաբաշխման մոդելի (որը կազմել է գյուղատնտեսության էկոնոմիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը) նպատակն է որոշել, թե մաքսիմում արտադրանք ստանալու համար ինչպես տեղաբաշխել արտադրական ռեսուրսները՝ ըստ առանձին արտադրության։

Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգնությամբ պարզվեց, որ Ռուսաստանյան Ֆեդերացիայում կոլտնտեսությունների ու սովխոզների համախառն արտադրանքը 1970 թվականին, 1958—60 թթ. համեմատությամբ, կավելանա 3,0 միլիարդ ռուբլով, որը կազմում է ամբողջ համախառն արտադրանքի 21,5 տոկոսը։ Հաշվարկները ցույց են տվել, որ Ռուսաստանյան Ֆեդերացիայի գյուղատնտեսության անհամաման կազմակերպման պատճառով անարտադրողաբար են օգտագործվում 14 միլիոն հեկտար վարելահող, 697 միլիոն մարդ-օր աշխատուժ, 1,8 միլիոն ռուբլու գյուղատնտեսական տեխնիկա և այլն։

Վերոհիշյալ խնդիրը լուծելու համար պահանջվում էր կատարել 7,2 միլիարդ մաթեմատիկական գործողություն, որը մաթեմատիկական մեքենան կատարեց մի քանի ժամում, ծախսելով դրա վրա ընդամենը 10,8 հազար ռուբլի։ Համաձայն գոյություն ունեցող նորմաների, առանց էլեկտրոնային մեքենայի այդ աշխատանքը կատարելու համար կպահանջվեր 24828 աշխատող, որոնց տարեկան աշխատավարձը կկազմեր 24828 հազար ռուբլի։ Հարկավոր է նշել, որ արդեն միշտ էլ նման խնդիրները լուծվում են էլեկտրոնային հաշվիչ մեքենաների միջոցով, որովհետև գործնականում հնարավոր չէ այդքան աշխատողների աշխատանքը համաձայնեցնել։ Մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգտագործումն ունի տնտեսական բարձր արդյունավետություն և անփոխարինելի է նման խնդիրներ լուծելու համար։

Մեր երկրում գյուղատնտեսությունը հագեցված է առաջավոր տեխնիկայով։ Ներկայումս երկրի կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատում են ավելի քան 2 միլիոն տրակտոր, հարյուր հազարավոր հացահատիկային և այլ կոմբայններ ու գյուղատնտեսական միլիոնավոր սարքեր։ Երկրում տարեկան արտադրվում են 300 հազար տրակտոր, 164 հազար կոմբայն և գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Հասկանալի է, որ խիստ կարևոր նշանակություն ունեն դրանց ճիշտ տեղաբաշխումն ու օգտագործումը։



Գյուղատնտեսության հետագա զարգացումը զուգակցվում է աշխատանքների մեքենայացման մակարդակի և տեխնիկական հագեցվածության բարձրացմամբ։

Գյուղատնտեսությունը բնութագրող հատկանիշներից մեկը նրա սեզոնայնությունն է։ Գյուղատնտեսական աշխատանքի հիմնական տեսակները, օրինակ, ցանքսը, բերքահավաքը, անհրաժեշտ է կատարել խիստ որոշակի և կարճ ժամկետներում (5—10 օրում)։ Ընդ որում այդ աշխատանքները կատարելու համար պահանջվում են նեղ մասնագիտացված մեքենաներ, որոնք տարվա մեջ պետք են ընդամենը մի քանի օր։ Այստեղ էլ առաջանում է այդ մեքենաների, ինչպես և գյուղատնտեսական տեխնիկայի ռացիոնալ օգտագործման պահանջ։

Կոլտնտեսությունների ու սովխոզների համար օպտիմալ մեքենա-տրակտորային պարկի հաշվարկման ժամանակ հանդիպում ենք մի քանի հազար մաթեմատիկական հավասարումների, որոնք լուծել հնարավոր է միայն արագ գործող էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և հատուկ մաթեմատիկական մեթոդների օգնությամբ։

Գյուղատնտեսական արտադրության մեջ շատ հաճախ ենք հանդիպում այնպիսի պրոբլեմների, որոնք լուծելիս հարկ է լինում ընտրել արտադրության բազմապիսի պայմաններում ռեսուրսների օգտագործման ամենալավ տարբերակը։ Այդ պատճառով էլ գյուղատնտեսական արտադրությունը համարվում է ամենահեռանկարայինը, որտեղ կարելի է լայնորեն օգտագործել գծային ծրագրման մեթոդները։ Այս մեթոդների օգտագործումը նպաստում է որոշելու գյուղատնտեսական արտադրության պլանավորման ու կազմակերպման բազմապիսի հարցեր։ Գյուղատնտեսական արտադրության պլանավորման կարևորագույն խնդիրներից է կոնկրետ արտադրական պայմաններում նրա առանձին ճյուղերի ու կուլտուրաների ամենալավ տարբերակ գտնելը, որը հաջող է լուծվում գծային ծրագրում լայնորեն տարածված սիմպլեքս մեթոդի օգնությամբ։ Այս մեթոդն օգտագործվեց Մոգիլևի երկրամասի, Բելինչևի արտադրական վարչության Օկտյաբր խոզաբուծական կոլտնտեսության անասնապահության և ցանքատարածության կառուցվածքը որոշելիս։

Հաշվարկների ժամանակ պարզվեց, որ կոլտնտեսության ցանքատարածության կառուցվածքը լուրջ փոփոխության կարիք ունի։ Օրինակ, սիլոսի համար օգտագործվող եգիպտացորենի ցանքատարածությունը պետք է ավելացնել, հասցնելով 150-ից 158 հեկտարի։ Հացահատիկի ցանքատարածությունը, ընդհակառակը՝ 762-ից պետք է հասցնել 528 հեկտարի, իսկ կարտոֆիլինը՝ 185—116 հեկտարի։ Կոլտնտեսությունում տարեկան ցանվում է 116 հեկտար միամյա խոտաբույս, որի կարիքը չի զգացվում։

Ցանքատարածությունների կառուցվածքի՝ վերը նշված փոփոխությունը կոլտնտեսությանը հնարավորություն կտա մեկ հեկտար ցանքատարածությունից ստանալու 24,0 տոկոսով ավելի կերային միավոր (13,9-ից հասցնելով 17,2-ի)։ Այդ կնպաստի ավելացնելու անասունների գլխաքանակը, հետևաբար և անասնապահական մթերքները։

Չպետք է մոռանալ, որ մեր երկրում գյուղատնտեսության մեջ դեռևս չի գործում կիբեռնետիկական որևէ լիավարտ սիստեմ, չնայած տեսական միտքը այս ուղղությամբ բավական զարգացել է։

Գյուղատնտեսության մեջ կիբեռնետիկայի օգտագործման հարուստ փորձ

ունի արտասահմանը, հատկապես ԱՄՆ-ը: Ներկայումս ԱՄՆ-ում էլեկտրոնային հաշվիչ մեքենաներն օգտագործվում են անասնապահական շենքերում և թռչնանոցներում օդի ջերմաստիճանը, խոնավությունը, օդափոխությունը և լուսավորությունը կարգավորելու համար, որը նպաստում է անասունների ու թռչունների գլխաքանակի ավելացմանը, մթերատվության բարձրացմանը: Կիբեռնետիկական մեթոդներն օգտագործվում են նաև գյուղատնտեսական կուլտուրաների նոր տեսակներ և անասունների ու թռչունների նոր ցեղեր ստանալու համար և այլն:

ԱՄՆ-ում լայնորեն կիրառվում է տնտեսագիտական կիբեռնետիկան: Օրինակ, ԱՄՆ-ում հաշվիչ մեքենաներ կան ֆիրմաներում, պետական հիմնարկներում և այլուր: Ներկայումս ֆերմերներն աշխատում են տնտեսությունը վարել շահութաբեր և չքայքայվել: Սակայն, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, կապիտալիստական կոնկուրենցիայի և փոքր տնտեսությունների քայքայման պայմաններում ֆերմերները ոչ միշտ են կարողանում օգտվել էլեկտրոնային հաշվիչ մեքենաների «խորհուրդներից»: ԱՄՆ-ում էլեկտրոնային հաշվիչ մեքենաներն օգտագործվում են պարարտանյութերի ռացիոնալ տեղաբաշխման, գյուղատնտեսական մթերքների տեղափոխման, անասնակերը ռացիոնալ օգտագործելու և այլ խնդիրներ լուծելու համար: Գոյություն ունեն համեմատաբար փոքր հաշվիչ մեքենաներ, որոնք լուծում են մեկ կամ մի քանի խնդիր. օրինակ, կա էլեկտրոնային մի հաշվիչ սարք, որով որոշվում է կովերի կերակրման այն ամենաձեռնտու եղանակը, որը տվյալ տնտեսությանն ապահովում է առավելագույն շահույթ: Այսպիսի մեքենաներ տեղակայված են նաև առանձին ֆերմաներում:

Գյուղատնտեսության մեջ կիբեռնետիկայի օգտագործման արտասահմանյան փորձը ցույց է տալիս, որ այն համարվում է գյուղատնտեսական արտադրության ղեկավարման հիանալի միջոց. մեր երկրում ևս պետք է լայնորեն կիրառել ինչպես տեխնիկական, այնպես էլ տնտեսագիտական կիբեռնետիկան:

ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում խնդիր է դրվում ավելացնել հողագործության և անասնապահական մթերքների արտադրությունը՝ բնակչության սննդամթերքների, իսկ արդյունաբերության՝ գյուղատնտեսական հումքի անընդհատ աճող պահանջմունքները բավարարելու համար: Համաժողովրդական խոշոր նշանակություն ունեցող այդ խնդրի լուծման գործում իր ուրույն տեղն ունի կիբեռնետիկան, որի օգտագործումը մեր երկրում արդեն լայն ծավալ է ստանում:



# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

Ա. ՍԱԽԱՐՈՎ

## XVII ԴԱՐԻ ՌՈՒՍԱԿԱՆ ՁԵՌԱԳԻՐ ԹԵՐԹԵՐԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

ԴԵՌԵՎՍ 1951 թվականին Բ. Դ. Դացյուկը և Կ. Ա. Կովալևսկին «Новый мир» ամսագրի էջերում (№ 6) հանդես եկան «Ստեղծել ռուսական ժուռնալիստիկայի պատմությունը» կոչ անող հոդվածով: Հոդվածագիրները նշում էին, որ «ռուսական ժուռնալիստիկայի պատմությունը մեր գիտության ամենից քիչ մշակված բնագավառներից մեկն է», որ այդտեղ, մասնավորապես, «դեռ զգացվում է խորթ ու հնացած կոնցեպցիաների ազդեցությունը»:

Հաջորդ տարում լույս տեսավ Ռուսական ժուռնալիստիկայի պատմության ուսումնասիրության նյութերի ժողովածուն, որի ներածությունը գրել էին նույն հեղինակները: Ժողովածուի մեջ բերված են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների ասույթները մամուլի մասին և լրագրերից ու ամսագրերից քաղված այնպիսի բնորոշ նմուշներ, որոնք լուսաբանում են ռուսական պարբերական մամուլի զարգացումը 1702 թվականից մինչև XIX դարի առաջին կեսը: Յուրաքանչյուր քաղվածքից առաջ տրվում է նրա աղբյուրի պատմա-մատենագիտական հակիրճ բնութագիրը: Ժողովածուն հետաքրքրություն առաջացրեց



«Россия» հնագույն ձեռագիր լրագրի առաջին էջը (1621 թ.)

ո՛չ միայն մեզ մոտ, այլև արտասահմանում:

Սակայն, չէր կարելի չնկատել, որ այդ ժողովածուի նյութերում չկար ոչ մի այնպիսի քաղվածք, որը մի որոշ պատկերացում տար Պյոտր առաջինի «Ведомости»-ին նախորդած ժամանակաշրջանի մասին: Անկախ դրա դրդապատճառներից, պետք է այդ տըխ-

րալի փաստը գրքի բացահայտ թերությունը համարել: Դժվար է ենթադրել, թե կազմողները լիովին համամիտ են եղել նախահեղափոխական շրջանի մի քանի գիտնականների հետ: Նրանց կարծիքը առավել սուր ու մարտաշունչ արտահայտեց Գ. Վ. Բալիցկին, հայտարարելով, թե՝ «լրագրի համար օրինակը մենք պատրաստի ձևով վերցրել ենք ուղղակի Արևմուտքից: Մինչև իր հրապարակ գալը՝ 1703 թ. հունվարի 2-ը լրագիրը նախորդ չի ունեցել» [1]:

Ժողովածուի կազմողները չէին կարող չիմանալ, որ նախահեղափոխական շրջանի գիտնականների շրջանում վաղուց ի վեր գերակշռել է մի այլ, ուղղակի հակադիր տեսակետ: Ա. Յա. Բուլգակովն առաջիններից մեկն էր, որ նշեց ռուսական ձեռագիր լրագրի («Կուրանտների») և «Ведомости»-ի առաջին տպագիր լրագրի միջև եղած հաջորդական կապը: Ա. Ա. Պոկրովսկին բնավ չէր տարակուսում, որ «արտաքին գործերի մինիստրության արխիվում պահվող ռուսական ձեռագիր լրագրերը սկսվում են 1621 թվականից» և որ «այդ թվականը կարելի է ռուսական լրագրերի սկիզբը համարել»[2]:

Ա. Ն. Շլոսբերգը ուշադիր քննեց մի կողմից՝ Բալիցկու և, մյուս կողմից, Պոկրովսկու հայտնած կարծիքները և եկավ այն եզրակացության, որ առաջին կարծիքը «մերկապարանոց է և ոչ-գիտական, քանի որ բոլորովին հաշվի չի առնում պատմական փաստերը», որ «ձեռագիր «Կուրանտների» և առաջին տպագիր «Ведомости»-ի միջև պատմական հաջորդականությունը վեր է ամեն մի տարակույսից»[3]:

Հիմք կա կարծելու, որ 1952 թվականի ժողովածուի կազմողների մեջ եղել են նաև այնպիսի հեղինակներ, որոնք, անկասկած, ընդունում են հիշյալ հաջորդականությունը: Այսպես, Վ. Դ. Կուզմինան որոշակի հայտարարում էր. «XVII դարի «Կուրանտները» տարբերկրյա ինֆորմացիայի ձեռագիր պետական օրգան էին՝ նախորոշված ընթերցողների նեղ շրջանի համար. սակայն «Կուրանտներն» այդուհանդերձ ռուսական պարբերական մամուլի սաղմնավորման ու առաջացման առաջին օղակն են»[4]: Հաջորդականությունը չի ժխտում նաև մի այլ հոդվածագիր՝ Վ. Գ. Սորոկը, թեև նա այդ անում է ոչ այնքան վճռականորեն: Այսպես, նա գրում է. «Պյոտրի «Ведомости»-ն կարծես թե «Կուրանտների» շարունակությունն էր: Բայց «Կուրանտները» «գաղտնի» լրագիր էին՝ ցարական արքունիքի լրագիր, իսկ «Ведомости»-ն բացեիբաց վաճառվում էր ժողովրդին...» [5]:

Դրա հետ մեկտեղ չեն բացառվել նաև այլ կարծիքներ, հետևապես, և, միասնական տեսակետ չկար: Բավական է բերել հենց ներածության հեղինակների այն հայտարարությունը, որ նրանք արել են ժողովածուի լույսընծայման նախօրեին: «Դժվար է հասկանալ, թե ինչ ընդհանուր բան կա «ցարի ու բոյարների» կարդալու համար Դեսպանական պրիկազում (այսպես էր կոչվում Ռուսաստանի այն կենտրոնա-

¹ Зарождение периодической печати в России. Отд. отт. из ЖМНП за сент. 1908 г. (СПб., 1908), с. 9. Срв.: *Вл. Каллаш.* Очерки по истории русской журналистики. «Русская мысль», кн. I, 1903, с. 3. Еще ранее: *А. А. Краевский.* Обозрение русских газет и журналов ЖМНП за янв. 1834 г. (СПб., 1834), с. 103—104.

² К истории газеты в России. В кн.: Ведомости времени Петра Великого, вып. 2 (М., 1906), с. 11—12.

³ Начало периодической печати в России. Отд. отт. из ЖМНП за сент. 1911 г. (СПб, 1911), с. 8, 58.

⁴ Возникновение периодической печати в России и развитие русской журналистики в XVIII веке. (Стенограмма лекций, прочитанных в ВПШ при ЦК ВКП(б)). М., 1948, с. 5.

⁵ Возникновение периодической печати в России и развитие русской журналистики XVIII века. (Лекции, прочитанные в ВПШ при ЦК КПСС). М., 1957, с. 6.



կան կառավարական հաստատությունը, որը XVI—XVII դարերում վարում էր երկրի արտաքին հարաբերությունները — Ա. Լ. Սախարով) կազմվող և դիվանագիտական գաղտնիքի բնույթ ունեցող գալարաթղթերի և «ժողովրդին վաճառվող» տպագիր լրագրի միջև» [1]: Այդպիսի մոտեցումն էլ, թերևս, պատճառ է հանդիսացել, որ նրանք չեն զետեղել XVII դարի ռուսական «Կուրանտների» նյութերը, չնայած նույնիսկ այն բանին, որ դրանք սկսել են հրապարակվել դեռ անցյալ դարի 60-ական թվականներից և այն էլ ոչ միայն գիտական, այլ ուսումնական նպատակներով:

«Կուրանտների» նկատմամբ այդպիսի զուսպ վերաբերմունքի հիմնական պատճառն այն է, որ դրանք գրեթե ամենևին ուսումնասիրված չեն: Բնորոշ է, որ Պ. Ն. Բերկովի՝ XVII դարի ռուսական ժուռնալիստիկայի պատմության հարցերին նվիրված աշխատության մեջ, որը 1952 թվականին լույս էր ընծայել ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան, բացեիբաց հայտարարվում է, որ XVII դարի ձեռագիր լրագրերը «շատ քիչ են ուսումնասիրված», իսկ «հրատա-այն հանգամանքը, որ դրանք «հրատարակված են շատ փոքր ծավալով... թույլ չի տալիս ուսումնասիրել պատմական ընձեռումով, հնարավորություն չի ընձե-ռում պարզելու, թե իրենց գոյության ամբողջ ընթացքում դրանք պահպանե՞լ են արդյոք իրենց սկզբնական բնույթը, թե ինչ-որ էվոլյուցիա են ապրել» [2]: Այդ հարցերի լուծումը հեղինակը թողնում է ապագա հետազոտողներին:

Սակայն հետագայում հրապարակված «Կուրանտների» հարցին այս կամ այն չափով վերաբերող աշխատություններում ևս բացակայում է ձեռագիր լրագրի բուն իսկ նյութերի հանգամանալի ու կոնկրետ վերլուծությունը: Այդ աշխատություններում դժվար է գտնել այնպիսի հատուկ ուսումնասիրություն, որը մեզ օգներ պատկերացնելու ռուսական այդ ձեռագիր լրագրի՝ դրա ավելի քան 80 տարվա գոյության ընթացքում կուտակված և մեր երկրի արխիվներում գրված ընդարձակ ու բարդ նյութը: Տպագրված աշխատությունների մեծ մասն ունի կամ ուսումնական և բացատրական ուղղություն կամ հատուկ հետազոտության չի ենթարկում «Կուրանտները»:

Այսպես, ուրեմն, պարզ է, որ ռուսական լրագրի պատմության նախատպագիր շրջանի ուսումնասիրության պրոբլեմն առայժմ անկատար է մնացել: Այդ ժամանակաշրջանի գիտական ուսումնասիրությամբ զբաղվողները պետք է իմանան, որ գործ ունեն մի ընդարձակածավալ ու չհետազոտված մարզի հետ: Ինչպիսի կոնկրետ նպատակ էլ որ դնի իր առջև հետազոտողը՝ պատմա-մշակութային, ժուռնալիստական, գրականագիտական թե լեզվագիտական, անհրաժեշտ է սկսել գրավոր հուշարձանի մատենագիտական նկարագրությունից:

ՄՈՒՅՆ հոդվածն առաջին փորձն է տալու պահպանված ամենահին ռուսական ձեռագիր լրագրերից մեկի՝ 1621 թվականի «Вести»-ի մատենագիտական նկարագրությունը:

Հետազոտվող ձեռագիրը գտնվում է ՍՍՀՄ հնագույն ակտերի կենտրոնական պետական արխիվում ֆ. 155, ցուց. 1, 1621 թ. գ. № 1): Ձեռագիրն ունի շապիկ, որի արտաքին կողմի վրա XVIII դարի ձեռագրով գրված է. «7129/1621 թվականի տեղեկագրեր, որ ուղարկված են Լեհաստանից՝ Եվրոպայում եղած պատերազմական գործողությունների ու հաշտու-

¹ *Б. Д. Дацюк и К. А. Ковалевский.* Создать историю русской журналистики! «Новый мир», 1951 г., № 6, с. 232.

² История русской журналистики XVIII века. Под ред. профессоров *Б. В. Томашевского* и *И. И. Любименко. Изд.* АН СССР. М.—Л., 1952 г., с. 31—32.

թյան պայմանագրերի մասին, իսկ թե ով է ուղարկել, ճիշտակված չէ»: Ավելի ուշ, թվականը նշելուց անմիջապես հետո, այլ ձեռագրով ավելացված է «թարգմանություններ» բառը և համապատասխանորեն ուղղված է երկու բառերի վերջավորությունը՝ «ուղարկված տեղեկագրերից», իսկ շապիկի վերևի ձախ անկյունում արված է «լրագրերին» նշումը:

Ձեռագիրը բաղկացած է սոսնձով իրար կպցրած թերթերից. այդ բնորոշ ձև էր Ռուսաստանի մատենավարության մեջ XVI—XVII դարերում: Այսպես, 30-րդ թերթի վերևի մասում պահպանվել է դեռ այն ժամանակ կատարած «սոսնձել» նշումը:

XVIII դարի վերջերում ռուսական ձեռագիր լրագրերը պահվում էին գալարաթերթիկների ձևով: «Լրագրերի (տեղեկագրերի) ցուցակ» փաստաթղթի 1-ին թերթի հակառակ էջում կարելի է կարդալ հետևյալ գրառումը. «Անցած տարիների արտասահմանյան տեղեկագրերից բացի կան նաև դրանց թարգմանությունները գալարաթերթիկների ձևով, որոնք զետեղված են նույն պահարանի վերևում և որոնք պետք է դասավորել ըստ տարիների»:

Ձեռագրի մեջ կարելի է տարբերել երկու կարգի կոմպոնենտներ: Դրանք են՝ ա) արևմտաեվրոպական զանազան քաղաքներից ու երկրներից քաղաքական, ռազմական, տնտեսական և մշակութային կյանքի ընթացիկ իրադարձություններին վերաբերող հաղորդումներ՝ «լուրեր, որոնք իրենց բնույթով համապատասխանում են իրենց համար օրինակ ու աղբյուր հանդիսացող արտասահմանյան լրագրերի «սովորական» համարների նյութերին, բ) հատուկ քաղաքական նշանակություն ունեցող փաստական նյութ (հրովարտակներ, պայմանագրեր, ճառեր), որը համապատասխանում է «արտակարգ» համարներին: Քանի որ այդ երկու կարգն էլ ինֆորմացիոն ֆունկցիա էին կատարում, ապա դրանք երբեմն զետեղվում էին միևնույն կոմպլեքսի (այսինքն՝ լրագրի մեկ համարի) մեջ:

Ինֆորմացիայի մասին խոսելիս պետք է հիշել, որ նրա հաղորդման վայրը ոչ մի դեպքում չպետք է շփոթել բուն դեպքի վայրի հետ: Դրանք ոչ միշտ են համընկնում: Մինչդեռ, այդ հարցն այնքան քիչ է ուսումնասիրված, այնքան քիչ ուշադրություն է նվիրվել դրան, որ եղած աշխատություններում հանդիպում ենք կոպիտ սխալների: Այսպես, Ա. Ա. Պոկրովսկին իր ժամանակ գրում էր. «Ռուսական ձեռագիր լրագրերը թարգմանված լինելով օտարերկրյա լրագրերից, պահպանում են վերջիններիս ձևը, դա մի քաղաքում պատահած այս կամ այն իրադարձության պարզ շարադրումն է, այնուհետև՝ մի այլ քաղաքում, երրորդում և այլնում պատահածի թվարկումը: Օրինակ, 1621 թվականի մեզ հասած ձեռագիր լրագրերը պարունակում են հետևյալ քաղաքներում տեղի ունեցած իրադարձությունների թվարկումը. «Լուրեր Վիեննայից՝ մայիսի 21-ին, Եգեր քաղաքից՝ մայիսի 26-ին, Իվան Քրիստիանոսից՝ մայիսի 25-ին, Աուգսբուրգից՝ մայիսի 26-ին, Ստիր (Ստրասբուրգ) քաղաքից՝ 27-ին»: Հեղինակի այս հայտարարության մեջ կարելի է գտնել երկու կարգի սխալներ: Նախ՝ ճիշտ չեն կարդացվել ու վերծանվել բնակավայրերի անունները: Երկրորդ, և սա գլխավորն է, հեղինակը դեպքի վայրը շփոթել է այդ դեպքի հաղորդման վայրի հետ, Աուգսբուրգին վերագրելով այն իրադարձությունները, որոնք, փաստորեն, կապված են Ինսբրուկ և Պրագա քաղաքների հետ (թթ. 4—5), և Շպեերին վերագրելով մի շարք իրադարձություններ, որոնք փաստորեն վերաբերում են Ստրասբուրգին, իտալական երկրամասին, Համբուրգին (թթ. 5—6):



ԵՐԵՍՆԱՄՅԱ պատերազմի չեխպֆալցյան շրջանի և 1620—1621 թվականների լեհ-թուրքական պատերազմների շրջանի ռազմա-քաղաքական իրադարձությունների շարադրումն է «Вести»-ի մեր ուսումնասիրած համարների հիմնական բովանդակությունը: Հատկանշական է, որ առավել հետաքրքրական էր հենց այդ բնույթի ինֆորմացիան: Սակայն, անգամ այդ հեռավոր ժամանակներում, մեր ձեռագիր մամուլի վաղ շրջանում ևս նրա բովանդակությունը չէր պարփակվում այդ շրջանակներով: Ռազմա-քաղաքական բնույթի հաղորդումների հետ մեկտեղ երբեմն ինֆորմացիա էր տրվում ծովային առևտրի ընթացքի ու այլևայլ իրադարձությունների մասին:

60-րդ թերթի կեսը և հաջորդ հինգ թերթերը պարունակում են սովորական լրագրական ինֆորմացիա: Այն բացվում է Վորմսից մարտի 14-ին հաղորդված «լուրերով» այն մասին, թե այնտեղ վախենում են Սպինոլայի (իսպանական զորքերի հրամանատարի) զործողություններից, որը մտադիր է բանակատեղի սարքել Հայսինգեն քաղաքի մերձակայքում, և այդ իսկ պատճառով պատրաստվում են ամուր խրամատներ, որոնցում կարելի է դիմադրել հիսուն հազար հոգու, հավաքում են պաշար, Պֆալցից և այլ վայրերից հավաքված է արդեն 700 սայլ և մեծ քանակությամբ զինվորական մարդկանց են վարձում (թ. 61)... Աուգսբուրգից մարտի 18-ին տրված «լուրերը» հաղորդում են, որ այնտեղ առաջիկայում անց է կացվելու դրամի հանգանակություն՝ հինգ տարի պատերազմելու համար, ընդումին հանգանակությամբ զբաղվելու են եկեղեցականները:

Հաագայից մարտի 16-ին հաղորդվում է, որ թեպետև Ֆրանսիայից լուրեր են ստացվում այն մասին, որ թագավորը հաշտվել է հպատակների հետ հոլանդական դեսպանի միջնորդությամբ, այդ լուրերին չպետք է հավատալ, քանի որ սրանից երեք օր առաջ դեսպանի ուղարկած սուրհանդակը չի հաստատում դա, այլ ասում է, թե շարունակում են նախապատրաստվել պատերազմի, թե «նորին իշխանական մեծությունը» հրամայել է Բրաբանտից, Բուրգունդիայից, Լյուքսեմբուրգից դուրս բերել իր գանձարանը, վախենալով պատերազմական գործողություններից, թե գլխավոր շտաբները 5—6 հազար զինվոր են վարձում Ֆրանսիայում, Շոտլանդիայում, Անգլիայում, թե նոր նավեր՝ «գալեաներ» են կառուցում ամեն տեսակ «զորախմբեր» փոխադրելու համար, թե «իշխան Ինդրիկ-Ֆրեդերիկը շատ մեծ եռանդով է պատրաստվում պատերազմի», կազմավորելով զորք՝ 12 հազար, հետևակ և 2 հազար հեծյալ, թնդանոթներ ու պաշար, և կշարժվի, հնարավոր է, դեպի Պֆալց, մինչդեռ «նորին իշխանական մեծությունը» 32 հազար հետևակով և 3 հազար հեծյալներով կշարժվի «այլ ուղղությամբ» (թ. 62), թե անգլիական նոր զորաշոկատներ՝ թվով 36 հազար հոգի, պատերազմելու են գնալու Ֆլանդրիա կամ Պֆալց և այդ իսկ պատճառով շատ մարդիկ կանանց, երեխաներին և ունեցվածքն առած Ֆլանդրիայից փախչում են Զելանդիա, թե Միջերկրական ծովում գտնվող հոլանդական ռազմանավերը պատրաստ են ամեն րոպե «դուրս գալու ըստ հրամանի», թե Հոլանդիայում սպասում են ապրանքներով հարուստ ավելի քան 100 նավեր՝ տարբեր երկրներից, որոնցից մեկը Սիրիայից, որը բեռնված է 200 հակ մետաքսով, թե Ամստերդամում հետաքննություն է կատարվում դրամ կեղծող երկու վաճառականի գործով (թ. 63):

Այնուհետև՝ «լուրեր» անմիջապես Ամստերդամից, մարտի 20-ին: Դրանցում ասվում է, թե ամեն օր այդ քաղաքն են գալիս նավեր արևմուտքից՝

Իսպանիայից, Լիսաբոնից և այլ տեղերից, ինչպես և նավեր են սպասում Արևելքից, թե Ամստերդամում 38 նավապետ են վարձել ռազմանավերի համար, որոնք «մեծ խնամքով» պատրաստվել են ռազմական գործողություններ վարելու ծովում և «գրոհելու ջրային ճանապարհով», իսկ 120 պարոններ իրենց մոտ զինվորներ են պահում: Քյոլնից մարտի 24-ին գրված «լուրերում» խոսվում է այն բռնությունների մասին, որ կատարում են այդ երկրի միջով դեպի Պֆալց շարժվող հոլանդական առանձին զորաջոկատներ... Բրյուսելից մարտի 16-ին գրում են, թե այնտեղ հանդիսավոր կերպով ընդունել են անգլիական մեծ դեսպանին և մշտապես «սնունդ են մատակարարում առանց դրամական հատուցման»: Ֆրանկֆուրտից մարտի 12-ին գրված «լուրերում» հաղորդվում է այն բռնությունների ու սպանությունների մասին, որ գործել են Սպինոլայի զինվորները, որոնք կողոպտել են մի քանի գյուղական վայրեր ու մտադիր են շարժվել դեպի Բերգեն քաղաքը:

66-րդ թերթի սկզբից արդեն նոր ձեռագիր է: Այստեղից մինչև 76-րդ թերթը, 1621 թ. «Вести»-ի պահպանված օրինակի վերջը զետեղված է մի փաստաթուղթ, որը վերնագրված է. «Թարգմանություն ճառերի, որ լեհական թագավորի դեսպան Գեորգիու Օսոլինսկին ասել է անգլիական թագավորին 1621 թվականի մարտ ամսվա 11-ին»: Այդ ճառերում ասվում էր, թե լեհական ու լիտվական երկիրը կազմում է քրիստոնեության մի ամուր պատնեշ ընդդեմ թուրքական դաժան բարբարոսության, թե թուրքերին օգնում են թաթարները, թե սուլթանը, դրժելով դաշնակցային պայմանագիրը և երդումը, ներխուժել է լեհաց թագավորի հողն ու արդեն ջախջախել է ազնվականների աշխարհազորից բաղկացած սակավաթիվ զորքը և այնքան է հպարտացել, որ լիտվական զորքերի դեմ կանգնած իր մեծ հրամանատար Խոդկևիչ-փաշային անգամ արգելել է աստծուց օգնություն խնդրել հակառակորդին հաղթելու համար: Դեսպանն ասում էր, թե Լեհաստանի զավթումը թուրքերի հեռուն գնացող ծրագրի լոկ մի մասն է, թե նրանք վաղուց երազում են գրավել հարուստ Եվրոպան, թե սուլթանը իր բանակը Լեհաստանից կտանի գերմանական երկրամասերը, հույս ունենալով մաս-մաս ջախջախել քրիստոնեական զորքերը: Դեսպանն օգնություն էր խնդրում անգլիական թագավորից և վստահություն հայտնում, որ քրիստոնյա մյուս տիրակալները կհետևեն թագավորի օրինակին: Իր ճառի վերջում դեսպանը անգլիական թագավորին խոստացել է, որ այդ օգնությունն իզուր չի լինի, թե երբ թշնամիները հարձակվեն անգլիացիների վրա, ապա լեհաց թագավորը օգնության կգա նրանց:

ՎԵՐՋՈՒՄ պետք է նշել, որ ձեռագրի թերթերի համարակալությունն ակնհայտորեն հակասում է լրագրի համարների ներքին թվագրմանը: Հենց իրադարձությունների հաջորդականության ուսումնասիրությունն արդեն համոզում է մեզ, որ թերթերի համարակալումը սխալ է: Այսպես՝ Հաագայից մարտի 16-ին տրված ինֆորմացիայում ասվում է, որ գլխավոր շտատների դեսպանությունը ժամանել է Ֆրանսիա, իսկ ապրիլի 30-ի ինֆորմացիայում՝ այդ դեսպանությունը վերադարձել է Հոլանդիա: Մինչդեռ թերթերն այնպես են համարակալված, որ առաջին իրադարձության մասին մենք կարդում ենք 61-րդ թերթում, իսկ երկրորդի մասին՝ 30-րդ թերթում: Աուգսբուրգից ապրիլի 28-ին տրված ինֆորմացիայում հաղորդվում է այն մասին, թե Բավարիայի Դուքսը պատրաստվում է արշավելու Պֆալցի ուղղությամբ, իսկ մայիսի 26-ի ինֆորմացիայում՝ այդ



իսկ արշավանքի սկսվելու մասին: Մինչդեռ թերթերն այնպես են համարակալված, որ առաջին իրադարձության մասին մենք կարդում ենք 30-րդ, իսկ երկրորդի մասին՝ 4-րդ թերթում:

Հիմք կա ենթադրելու, որ լրագրի համարների հաջորդականությունը խառնըվել է այն ժամանակ, երբ ավելի հարմար պահպանելու և օգտագործելու նպատակով դրանք իրարից անջատել են, մինչդեռ սկզբնական շրջանում բոլորը միասին պահվել են գալարաթղթի ձևով: Երբ սոսնձված թերթերն իրարից պոկել են, դրանք համարակալել են գալարաթղթից պոկելու հաջորդականությամբ: Այդ պատճառով էլ հակադարձ համարակալություն է ստացվել: Գալարաթղթի վերջում սոսնձված համարը դարձել է առաջին, իսկ նրան նախորդող համարները դասավորվել են հակառակ կարգով:

Այս եզրակացությունը կարելի է ապացուցել ամբողջ գործի շապկի վրա եղած խորագրով: Այնտեղ ասված է, թե տվյալ տեղեկություններն «ուղարկված են Լեհաստանից»: Բայց մենք պարզեցինք, որ լրագրի միայն վերջին՝ № 7-ն է պարունակում լեհական դեսպանի ճառերի թարգմանությունը, իսկ ներկայիս № 1-ը թարգմանված է հոլանդական մի լրագրից:

Այս ամենից հետևում է, որ տակավին անհրաժեշտ է շարունակել ռուսական ժուռնալիստիկայի ակունքների հանրակողմանի հետազոտությունը, որը նկատելիորեն կընդարձակի մեր գիտելիքների ծավալը և հնարավորություն կընձեռի ավելի հստակ ու ճշգրիտ դարձնելու մինչև հիմա այդ մասին մեր ունեցած պատկերացումները:

Ռուսական ձեռագիր թերթերի վաղ շրջանի օրինակների ուսումնասիրությունը մեզ այն համոզմանը բերեց, որ այս գործում այնքան պահանջվող բարեխղճությամբ հանդերձ, հետազոտողը պետք է օժտված լինի ուսումնասիրվող մամուլի ժամանակաշրջանի հասարակական-քաղաքական յուրահատկությունների բոլոր ելևէջների բազմակողմանի իմացությամբ: Այս իսկ առումով քննելով «Вести»-ի բովանդակությունը, անհրաժեշտ ենք համարում ասել, որ այդ թերթը, հիրավի անդրադարձրել է դարաշրջանի ռուսական-հասարակական-պետական ոլորտի կարևորագույն անցքերի ու դեպքերի էական կողմերը:

Հետևաբար, այն որոշ իմաստով կարելի է համարել ժամանակաշրջանի կենդանի պատմության անմիջական արտացոլումը կամ վկայագրությունը, որից համենայն դեպս կարելի է որոշակի գաղափար կազմել ոչ միայն ռուսական կայսրության արտաքին ու ներքին քաղաքականության մի քանի կողմերի վերաբերյալ, այլև բավականին ռեալ պատկերացում ունենալ թերթերի գաղափարական ու լեզվական ատաղձի, նրա ոճի ու կուլտուրական նկրտումների նկատմամբ:

Կարճ ասած, մեր հիշատակած ձեռագիր թերթերը գալիս է նոր լույս սփռելու ռուսական ժուռնալիստիկայի բավականին հեռավոր անցյալի անմիջական վիճակի ու հասարակական դեմքի վրա: Ահա թե ինչու համոզված ենք, որ կատարված մանրազնին սույն ուսումնասիրությունը զգալիորեն կնպաստի ռուսական ժուռնալիստիկայի պատմության գոյավորվող ակունքների ճըշգրտմանը և նրա շրջանակների համեմատական ընդլայնմանը:

# ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

## ԱՄՐԱԿԱՄ ՄԱՐԴԸ

Ես չգիտեի, որ նա իսկական հերոս է: Դուք էլ չգիտեք: Հաճախ մենք չենք իմանում, թե ինչ գանձեր են թաքնված արտաքուստ ոչնչով աչքի չընկնող մի ուղևորի, մի անցորդի, անգամ մի աշխատակցի հոգու մեջ, որի հետ տարիներ շարունակ ժամը ութին եկել ենք աշխատանքի, ժամը չորսին վերադարձել տուն:

Բայց եթե լույս կա նրա մեջ, միևնույն է, մի օր կճառագի, եթե ներքին կրակ կա, մի օր կբոցավառվի:

Գարեգին Մելքոնյան... թերևս ես մեկն էի նրանցից, ում ամենից շուտ է ջերմացրել նրա հոգու կրակը: Նրա ուսերին ծանրացած է իմ սերնդի բեռը...

Ես մտքով ուղիղ քառասունհինգ տարի վերադառնում եմ ետ:

Ղափան լեռան ստորոտին բուսած Շիկահող գյուղ: Յոթնամյա դպրոց: Խորհրդային իշխանություն ու ձրի ուսում: Կորչի անգրագիտությունը: Լենինն ասել է՝ ամեն մի խոհարարուհի պիտի կարողանա երկիր կառավարել: Բայց կարճ ժամանակ անց պարզվեց հասարակ, կենսածին մի ճշմարտություն՝ որ սովորելու համար էլ պետք են հաց, շոր ու ոտնաման, գիրք ու տետրակ...

Եվ Գարեգինը դարձավ դպրոցի հավաքարար:

Մի օր ուսուցչանոցը մաքրելիս սեղանի տակ տեսավ մի 10 ռուբլիանոց: Նայեց շալվարին, ծնկները կարկատած էին, հետևին էլ մեծ կարկատաններ կային: Իսկ գրախանութում Թումանյանի պատկերապարդ գրքերն են՝ «Շունն ու կատուն», «Մի կաթիլ մեղրը», «Անուշը»... Չէ՛, չէ՛: Ականջներում նորից հնչեց մոր խոսքը՝ «Տես, հա՜, հորդ փափախը տափով չտաս»: Ու գնաց դպրոցի վարիչի մոտ:

Երեկոյան մանկավարժական խորհրդի նիստում գովեցին: Հետո գրեցին պատի թերթում: Իսկ Գարեգինը պարմացավ, ինքը հո դրա համար չէր արել: Ի՞նչ կա գովելու...

***

Անցան տարիներ... Ես վեպ պիտի գրեի քիմիկոսների կյանքից և ուզում էի տեսնել ալյումինի գործարանի կավահողի փորձնական արտադրամասի պետին: Այդ իմ առաջին հանդիպումն էր Գարեգին Մելքոնյանի հետ: Առանձնասենյակի առաջ կանգ առա: Դռան հետևից լըսվում էր մեկի տաքացած ձայնը.

— Ինչ ուզում ես արա, միայն մի՛ խաբիր. պա՞րզ է:

— Ընկեր Մելքոնյան...

— Մի՛ խաբիր: Երեկ տուն էի գնում, դու կնոջդ հետ կինոյից էիր դուրս գալիս:

— Յոթ ժամ աշխատել, գնացել եմ, ի՞նչ կա որ...

— Իսկ փորձդ ավարտե՞լ էիր:

— Ո՛չ:

— Սիրտդ հանգի՞ստ էր, երբ փորձը կիսատ թողած տուն էիր գնում: Յոթ ժա՞մ... քիմիկոսի համար ի՞նչ ժամ, երբ ծնվում է նորը... Նրա խիղճը հանգիստ չէ այնքան ժամանակ, մինչև որ իր նպատակին չհասնի:

Դուռը կամաց բացվեց և առանձնասենյակից դուրս եկավ մի երիտասարդ՝ կարմրատակած դեմքով: Բարձրահասակ, հաղթանդամ, ջլապինդ, բայց այդ րոպեին նրան նախանձել չէր կարելի: Ես շտապեցի տեսնել, թե ո՞վ է նրան այդպես հիմնովին մշակել: Ներս մտա: Եվ առաջին բանը, որ նկատեցի նրա դեմքին, անսահման բարություննն էր, հետո ցավ կար նրա սև, արտահայտիչ աչքերում, որոնք բողոքում էին... Լուսամուտին հենված նա ասես սպասում էր մեկին, իր սիրտը թեթևացնելու:

— Ինչո՞ւ ինստիտուտ ընդունելիս մարդկանց չեն ասում, որ բժշկի ու ինժեների համար ժամ ու ժամանակ չկա: Կես-գիշերին էլ գան կանչեն, պիտի գնաս: Փորձդ չի ստացվում, տունը պիտի մոռանաս: Ինչո՞ւ չեն ասում: Թող ամեն մեկն իրեն հարմար մասնագիտություն ընտրի:

— Այո՛, բայց այդ բոլորի հետ կին ու երեխա կա, ընտանիք...

— Իհարկե՛, իհարկե՛,— չէր իջնում Մելքոնյանի բարկությունը,— կարծում եք ես մոռանո՞ւմ եմ: Բայց գիտե՞ք ինչ, ես եթե աղջիկ լինեի, մի օր էլ չէի ապրի այն երիտասարդի հետ, ով չի այրվում իր գյուտով, իր փորձով:

Իմ առջև կանգնած էր հերոս թվալուց շատ հեռու, սովորական, շատ սովորական մի մարդ, բայց հենց առաջին րոպեներից զգացի, որ նա կյանքում ոչինչ չի կարող անել առանց ներքին կրակի:

Թերթում եմ, ահա, նրա կյանքի էջերը: Երևանի քիմիական տեխնիկում: Գերազանցիկ: Նա կարող էր անմիջապես ընդունվել ինստիտուտ, բայց գնաց Կիրովականի քիմիական կոմբինատը: Թեև տեխնիկ էր, բայց հերթափոխի պետ նշանակեցին: Քիմիա... Նրա տարերքն էր այդ: Կոմերիտական կազմակերպության կոմիտեի քարտուղար: Ժողովներ, կրակոտ ճառեր: Կոմբինատը կրակոտ երիտասարդին ուղարկեց Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտ՝ սովորելու: Հեշտ չէր, տնից օգնություն չէր խնդրի. առանց այն էլ ծանր էր բազմանդամ ընտանիքի վիճակը: Որոշեց աշխատել ու սովորել: Հենց ինստիտուտում լաբորանտ նշանակեցին: Անքուն գիշերներ... Ուսման ողջ ընթացքում լենինյան կոմերիտմիության անվան թոշակ էր ստանում:

Սկսվեց պատերազմը: Նա աշխատում էր Կիրովի անվան կոմբինատում, հերթափոխի, ապա՝ արտադրամասի, հետո՝ կոմբինատի արտադրատեխնիկական բաժնի պետ: Տուն կար, երազներ... Պատերազմը եկավ ու խառնեց ամեն ինչ: Պատերազմը դարձավ լակմուսի թուղթ ու փորձեց մարդկանց: Լուսաքողարկված քաղաքի մութ փողոցներ, մայթերի վրա երերացող ստվերներ, ստվերներ կանանց, ծերերի, երեխաների... Հացի հերթեր: Կայարանին մոտեցող սանիտարական գնացքներ, տնքացող գնացքներ՝ բյուրավոր վիրավորներով: Եռանկյունի նամակներ: Եվ պատի վրա նկարված հինգ մետրանոց մի ձեռք, բռունցք՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար»:

Կուսակցական ժողով է: Գարեգին Մելքոնյանին ընտրում են ՀԿԿ Կենտկոմի կուսկազմակերպիչ՝ կոմբինատում: 1942 թվական: Թշնամին բախում էր Կովկասի դռները: Մարդիկ օրերով մնում էին գործարանում: Շարունակ լսում ես՝ չկա՛, չկա՛, չկա՛, իսկ պատերազմը ականջ չունի, ռետին է պետք ավտոդողերի համար, կարբիդ կոդելու, ռազմական կառույցների համար: Իսկ հաճախ չկա ամենակարևորը, էլեկտրոդներ չկան: Դոնբասը թշնամու ձեռքում է, ճանապարհները փակ են: Բայց կոքս է պետք: Եվ գործարանում ինժեներները գիշերներ են լուսացնում՝ Տկվիբուլիի ծխացող ածխից էլեկտրոդներ ստանալու համար: Այդ պատերազմն է թելադրում՝ անհնարինը դարձնել հնարավոր: Եվ կարբիդ կա ինչքան ուզես. հիմա էլ թիթեղյա ամաններ չկան, թիթեղ չկա: Իսկ ռազմաճակատից՝ շտապ պատվեր: Ի՞նչ կարելի է անել, ի՞նչ կարելի է անել, ի՞նչ... Այդ անձրևն է տկտկացնում տանիքը: Հուշարար անձրևը: Ելքը գտնված է:

— Քանդե՛լ տանիքը:

— Գժվե՞լ եք...

— Տանիքի թիթեղներից ամաններ պատրաստել, շտապ:

Հրամանը հրաման է: Ռազմաճակատի պատվերը կատարված է: Ոչ ոք չիմացավ, սակայն, որ այդ գիշեր չփակվեցին Մելքոնյանի աչքերը...

Հիմա ուզում եմ պատմել այն մասին, որ պատերազմն անգամ անկոր է սպանելու մարդու երազները, եթե կրակ կա նրա սրտում, եթե անհանգիստ միտքը պրպտում է, որոնում...

Վաղ առավոտյան Գարեգին Մելքոնյանը դուրս էր գալիս տնից և վարորդի մոտ նստած՝ երազում էր.

— Ա՛յ, կկառուցենք մեր լեռնաքիմիական կոմբինատը...

Իսկ ոտքերը սառչում էին, մեքենան հիսուն

